ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

11

ՆՈՅԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ • 1971

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս հշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջապես կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**11** ՆՈՅԵՄԲԵՐ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание







# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ ԶԻՆԵԼ ՏՆՏԵՍԱԳԻՏՈՒԹՅԱՄԲ

Հանրապետության աշխատավորները Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 54-րդ և Հայաստանում սովետական կարգերի հաղթության 51-րդ տարեդարձները նշում են աշխատանքային սխրանքների, հարյուր հազարավոր մարդկանց ցուցաբերած ստեղծարար նոր նախաձեռնությունների հուժկու ալիքով, հասարակական կյանքի բոլոր մարզերում՝ կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումների հաջող կենսագործմամբ։

Արդյունաբերության բոլոր ճյուղերի, գյուղատնտեսական արտադրության ու կուլտուրական շինարարության բազում տեղամասերի ինֆորմացիայի անկանգ հոսքը վկայում է այն մասին, որ հանրապետության աշխատանքային բոլոր կոլեկտիվները պատվով են կատարում իններորդ հնգամյակի առաջին տարվա առաջադրանքները և հանձնառած սոցիալիստական պարտավորությունները։ Վերջերս հրապարակված վիճակագրական վարչության, ինչպես և մամուլի օրգանների հաղորդումների գոտեպնդիչ արդյունքները լիակատար հույս են ներշնչում, որ կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները ջանք չեն խնայում հեղափոխության վեհիմաստ տոնը նշանավորելու կենդանի, հանրօգուտ գործերի բազմապատկմամբ, տնտեսական տարին ավարտել պլանների գերակատարմամբ։

Այս օրերին, երբ հանրապետության աշխատավորությունը, ՍՍՀՄ բազմազգ ժողովուրդների հետ միասին, համակվել է իր իսկ կատարած մեծագործությունների տոնական պաթոսով, անհրաժեշտ է կյանքն առաջ մղող բանող զանգվածների արարչագործ ձգտումները լիովին ի սպաս դնել ՍՄԿԿ XXIV համագումարի բազմաբովանդակ որոշումների՝ իններորդ հնգամյակի վեհ խնդիրների արդյունավետ լուծմանը։

Սակայն մեր առաջընթացի բարդ պրոբլեմների ճիշտ և արագ լուծման առհավատչյան՝ տնտեսական կառավարման և արտադրության բոլոր ոլորտներում գործող մարդկանց տնտեսագիտությամբ զինելն է։

Այժմ, քան երբեք, անհրաժեշտ է բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը։ Արդի էտապում դա գիտա-տեխնիկական հեղափոխության հրամայական թելադրանքն է, որը տնտեսական մարմինների, սովետական ժողովրդի առջև դնում է ժողովրդական տնտեսության ճյուղերի առա-

վել նպատակահարմար համամասնություններ ապահովելու կարևոր ու բարդ խնդիրներ։ Կուսակցությունը սովորեցնում է, որ «կառուցվածքային պրոբլեմների ճիշտ լուծումից են մեծապես կախված տնտեսական աճի տեմպերը, տնտեսության զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման համար անհրաժեշտ կուտակումների հնարավորությունները»։

Կուսակցության տնտեսական քաղաքականության հանգուցային խնդիրներից մեկը արտադրության կառավարման սիստեմի կատարելագործումն է։ Կուսակցության XXIV համագումարում Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Բրեժնևն, անդրադառնալով այս հարցին, ասաց, որ խոսքը, ըստ էության, այն մասին է, թե տնտեսական ու սոցիալական զարգացումն արագացնելու ասպարեզում ինչպես ավելի արդյունավետ կազմակերպել հասարակական գործունեությունը, առավել լիակատար օգտագործել առկա հնարավորությունները, արտադրական կոլեկտիվներն ու աշխատավոր մասսաներին սերտորեն միավորել կուսակցության քաղաքականության գլխավոր նպատակների շուրջը։ Այս հարցն այժմ հսկայական կարևորություն է ստանում, որովհետև մեր երկրի էկոնոմիկայի մասշտաբների աճն ու նրանում վերջին տարիներս կատարված որակական տեղաշարժերը բարձր պահանջներ են ներկայացնում կառավարմանը, թելադրում են չբավարարվել հին ձևերով ու մեթոդներով։

Կուսակցության տնտեսական քաղաքականության հետևողական կիրառումը, տնտեսական ծրագրի իրագործումը հրամայաբար պահանջում են կազմակերպել ոչ միայն ղեկավար կադրերի ու մասնագետների, այլև աշխատավորական լայն զանգվածների տնտեսագիտական ուսուցումը։ Այդ նպատակին է ուղղված «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշումը։ Նրանում պարզ ու մեկեն ընդգծվում է, որ կոմունիստական շինարարության արդի փուլում, գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, արտադրության էկոնոմիկայի ու աշխատանքի բնույթի մեջ կատարվող որակական փոփոխություններին համապատասխան, «անշեղորեն մեծանում են կադրերի, աշխատավոր մասսաների տնտեսագիտական կրթությանը ներկայացվող պահանջները»։ ՍՄԿԿ Կենտկոմը հիշեցնում է, որ «Տնտեսագիտական պատրաստությունը դառնում է տնտեսավարման գիտական մակարդակը բարձրացնելու, արտադրության կառավարման, ժողովրդական-տնտեսության զարգացման՝ ՍՄԿԿ XXIV համագումարի նախատեսած ծրագրի իրականացման գործում աշխատավորների նախաձեռնությունը և ակտիվությունը բարձրացնելու կարևոր պայման»։

Ի դեպ, կադրերի, աշխատավորների տնտեսագիտական ուսուցման պահանջը նոր հարց չէ։ Տակավին սովետական պետության ստեղծման առաջին օրերից Վ. Ի. Լենինն ընդգծում էր այդ խնդրի հրատապությունը։ Առաջնորդը սովորեցնում էր, որ առանց տնտեսական կայուն գիտելիքների հնարավոր չէ պատշաճ ձևով վարել սոցիալիստական էկոնոմիկան, ի հայտ բերել կապիտալիստական կացութաձևի նկատմամբ նրա ունեցած առավելությունները։ Ճիշտ կառավարելու համար պետք է, առաջին հերթին, լինել լավ տնտեսավար, տիրապետել սոցիալիստական արտադրության բոլոր լծակներին, կարողանալ արդյունավետ կերպով դրանք ծառայեցնել երկրի ընդհանուր վերելքի շահերին։



* * *

ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևը կուսակցական ու տնտեսական մարմինների պարտքը համարեց ըստ ամենայնի կենսագործել լենինյան պատգամները, հասնել այն բանին, որ բոլոր բանվորները, կոլտնտեսականները, մտավորականները դառնան կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման գիտակից մարտիկներ, լիովին դրսևորեն իրենց ունակություններն ու ձեռներեցությունը՝ հանուն ժողովրդական տնտեսության անկասելի առաջընթացի։ Անտարակույս, այս ամենին կարելի է հասնել ղեկավար կադրերի ու աշխատավորական զանգվածների տնտեսագիտական ուսուցումը հավուր պատշաճի կազմակերպելով և բարելավելով։

Հարկ է նկատել, որ աշխատավորների տնտեսագիտական կրթության ասպարեզում մեր երկրում, այդ թվում և Հայաստանում, բավականաչափ փորձ է կուտակված։ Այդ գործը կազմակերպվում է ո՛չ միայն բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում, այլև քաղաքական լուսավորության սիստեմում, գրավոր ու բանավոր պրոպագանդայի միջոցներով։ Նախընթաց ժամանակահատվածում մեր հանրապետության կուսկազմակերպություններին կից գործել են արդյունաբերության ու գյուղատնտեսության, շինարարության ու տրանսպորտի, առևտրի էկոնոմիկան ուսումնասիրող բազմաթիվ խմբակներ և տեսական սեմինարներ, կոմունիստական աշխատանքի և տնտեսական գիտելիքների դպրոցներ, ժողովրդական համալսարաններ, որոնցում ընդգրկված են եղել հազարավոր ղեկավար և միջին օղակի կադրեր, նյութական բարիքների արտադրությամբ անմիջականորեն զբաղված մարդիկ։ Արտադրության էկոնոմիկայի խմբակներն ու սեմինարները, կոմունիստական աշխատանքի և տնտեսական գիտելիքների դպրոցները, իրոք, համարվել են արտադրական կոլեկտիվների ստեղծագործական ակտիվության բարձրացման ու տնտեսավարման լավագույն օղակներ։

Քաղաքական լուսավորության ընթացիկ ուսումնական տարում ևս հանրապետության կուսակցական ու կոմերիտական կազմակերպություններին կից գործում են ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների էկոնոմիկան ուսումնասիրող բարձր տիպի խմբակներ ու տեսական սեմինարներ։ Տարրական օղակում ունկնդիրները կշարունակեն տնտեսական գիտելիքների յուրացումը։ Կուսակցական ու կոմերիտական քաղաքական լուսավորության ցանցի բոլոր օղակներում ուսումնասիրության թեմաներ կլինեն կուսակցության տնտեսական քաղաքականության հիմնական պրոբլեմները։ Հասարակական արտադրության արդյունավետության ու աշխատանքի արտադրողականության բարձրացման, խնայողության ռեժիմի կիրառման ու կառավարման կատարելագործման, աշխատանքի ու արտադրության գիտական կազմակերպման և տնտեսական մյուս առանցքային հարցերն առանձնակի տեղ կգրավեն ուսումնական ծրագրում։

Որոշակի են աշխատավորների տնտեսագիտական ուսուցման ասպարեզում կուսակցական կազմակերպությունների ձեռք բերած հաջողությունները։ Սակայն ՍՄԿԿ Կենտկոմը «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» որոշման մեջ միաժամանակ ընդգծում է, որ այդ գործի ներկայիս թափն ու բովանդակությունը դեռևս չեն համապատասխանում XXIV համագումարի առաջադրած պահանջներին։ Բանն այն է, որ մինչև այժմ որոշ

ղեկավար աշխատողներ, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների միջին օղակի կադրեր, ինչպես հարկն է, չեն թափանցում էկոնոմիկայի հարցերի մեջ, անբավարար են տիրապետում տնտեսական գործունեության գիտական վերլուծության հմտություններին, հաճախ չեն կարողանում հիմնավորել այդ որոշումները, աշխատանքի արդյունքները գնահատել արտադրության տնտեսական արդյունավետության տեսանկյունից։ ՍՄԿԿ Կենտկոմն աննորմալ ու աններելի է համարում այն երևույթը, երբ զգալի թվով բանվորներ, ծառայողներ ու կոլտնտեսականներ չեն ընդգրկված տնտեսագիտական ուսուցման մեջ, թույլ պատկերացում ունեն իրենց արտադրամասի ու ճյուղի, ձեռնարկության ու տնտեսության իրավիճակի մասին, երբ կուսակցության տնտեսական տեսության և քաղաքականության պրոպագանդան երբեմն խզվում է արտադրության զարգացման կոնկրետ խնդիրներից։

Կուսակցությունն աշխատավորների տնտեսագիտական կրթությունը համարում է ո՛չ միայն նրանց գիտական աշխարհայացքի ու քաղաքական գիտակցականության զարգացման բնագավառում կուսկազմակերպությունների գործունեության կարևոր ուղղություն, այլև արտադրության մարդկանց սոցիալիստական տնտեսավարման փորձը հաղորդելու ձև։ Այս առումով կուսակցությունը պահանջում է տնտեսագիտական կրթությունն ավելի սերտորեն զուգակցել արտադրության կոնկրետ խնդիրների լուծման հետ, հասնել այն բանին, որ ամենուր աշխատող կոմունիստները, բանվոր-ծառայողներն ու կոլտնտեսականները խորությամբ ուսումնասիրեն սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման տեսությունն ու պրակտիկան, կառավարման գիտական հիմունքները, առավել լավ գիտենան հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվացման առաջնակարգ նշանակությունն ու ուղիները, որոնք այնքան պարզորոշ ընդգծել ու մշակել է ՍՄԿԿ XXIV համագումարը։

ՍՄԿԿ կենտկոմը կուսակցական ու տնտեսական մարմինների առջև խնդիր է դնում՝ ղեկավար կադրերի, ժողովրդական տնտեսության մասնագետների ու աշխատավորների տնտեսագիտական կրթությունը կազմակերպել ո՛չ միայն բարձրագույն ուսումնական հաստատություններում, այլև որակավորման բարձրագույն դասընթացներում, պրոֆտեխնիկական ուսումնարաններում, կուսակցական ուսուցման բոլոր օղակներում, գյուղատնտեսական ու կոմունիստական աշխատանքի դպրոցներում, ժողովրդական համալսարաններում, մասսայական-քաղաքական պրոպագանդայի և կուլտուր-լուսավորական աշխատանքի միջոցների օգնությամբ։

Մամուլից, ռադիոյից, հեռուստատեսությունից պահանջվում է սիստեմատիկաբար ու խորությամբ պրոպագանդել աշխատանքի լավագույն օրինակները, արտադրության առաջավորների կուտակած ուսանելի փորձը, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները։ «Գիտելիք» ընկերության առջև խնդիր է դրվում դասախոսությունների պլանում ավելի շատ տեղ հատկացնել տնտեսագիտության հարցերին։

Ամեն տարի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում միլիոնավոր աշխատավորներ հանդես են գալիս նորարարական ու ռացիոնալիզատորական առաջարկություններով, մշակում աշխատանքի արտադրողականության բարձրացման, հումքի, նյութերի, էլեկտրաէներգիայի և աշխատաժամանակի տնտեսման արդյունավետ նոր մեթոդներ, կատարելագոր-



ծում արտադրության տեխնոլոգիան, կիրառում աշխատանքի կազմակերպման լավագույն եղանակներ։

Այժմ առանձնակի կարևորություն է ստանում առաջավոր փորձը, որի արմատավորումն առավել մատչելի է աշխատավորական միլիոնավոր զանգվածներին։ Սակայն այդ ամենը՝ գիտության ու տեխնիկայի, արտադրական պրակտիկայի նորույթների ներդրումն ու արմատավորումը, մեծ հմտություն ու քաջատեղյակություն են պահանջում յուրաքանչյուրից։ Գաղտնիք չէ, որ միևնույն արտադրամասում ու տեղամասում, միևնույն ճյուղում, միևնույն գործով զբաղվածների մոտ լինում են տարբեր արդյունքներ, աշխատանքի արտադրողականության, հումքի ու նյութերի օգտագործման տարբեր մակարդակներ։ Բնական է, վերոհիշյալ խնդիրների լուծման բանալին կարող է տալ տնտեսագիտությունը, դրա խոր իմացությունը։ Հետևաբար, ղեկավար կադրերի, բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների պարտքն է զինվել տնտեսագիտությամբ, որի տիրապետումով միայն հնարավոր է հետայսու առաջ մղել սոցիալիստական հայրենիքը։

Աշխատավորների տնտեսագիտական կրթության կազմակերպման նպատակը հասարակական արտադրության ճիշտ վարումն է, նրա արդյունավետության անընդհատ բարձրացումը։ Դրա հիմքում, ինչպես պահանջում է ՍՄԿԿ Կենտկոմը, պետք է դնել կուսակցության XXIV համագումարի մշակած տնտեսական քաղաքականության, հասարակական տնտեսական զարգացման օրինաչափությունների, տնտեսավարման, արտադրության էկոնոմիկայի և կազմակերպման լենինյան սկզբունքների ու մեթոդների խոր ուսումնասիրումը։

Կուսակցության տնտեսական քաղաքականության ասպարեզում համագումարը իններորդ հնգամյակի դիրեկտիվներով մշակել է մի ամբողջ շարք միջոցառումներ, որոնք ուղղված են նոր հնգամյակի տնտեսական գլխավոր խնդրի լուծմանը, այսինքն՝ սովետական ժողովրդի բարեկեցության էական բարձրացմանը։ Արդի պայմաններում այս խնդիրն առավել կարևորություն է ստանում, դառնում տնտեսական զարգացման հրամայական պահանջ, արտադրության աճի, տնտեսական վերելքի նախադրյալ։

Ահա թե ինչու ՍՄԿԿ Կենտկոմը հիշյալ որոշմամբ պարտավորեցնում է կուսակցական ղեկավար մարմիններին, սկզբնական կուսկազմակերպություններին՝ աշխատավորների տնտեսագիտական կրթությունը սերտորեն շաղկապել ձեռնարկություններում, սովխոզներում ու կոլտնտեսություններում տնտեսական ողջ գործունեության լավագույն կազմակերպման հետ, դրանով իսկ նպաստել տնտեսավարման մակարդակի բարձրացմանը, իններորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարմանը։

Նոր հնգամյակի առաջին տարին մոտենում է ավարտին։ Այն լեցուն է սովետական մարդկանց հայրենասիրական հիանալի նախաձեռնություններով ու աշխատանքային մեծագործություններով։ Մոսկվայի ու Լենինգրադի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների հայրենասիրական շարժումը, որն ուղղված է հնգամյակի հոյակապ խնդիրների լուծմանը և հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը, լայն արձագանք գտավ երկրի, այդ թվում և Հայաստանի գործարանների ու ֆաբրիկաների բանվոր-ծառայողների շրջանում։ Ամենուրեք հայտնաբերվեցին ու գործողության մեջ դրվեցին արտադրանքի թողարկումն ավելացնելու և դրա որակը բարձրացնելու նոր ռեզերվներ ու հնարավորություններ։

*Սովետական մարդկանց, բանվորների ու կոլտնտեսականների խանդավառության նոր վերելք առաջացրեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 54-րդ տարեդարձի առթիվ ծավալված սոցիալիստական մրցությունը։ Արտադրական կոլեկտիվներն ամենուրեք, մեր հայրենիքի բոլոր անկյուններում, ընդգրկվեցին այդ մրցության մեջ, նշեցին նոր, պետական պլանները գերազանցող բնագծեր և արտահայտեցին իրենց անսասան վճռականությունը՝ նոր հնգամյակի առաջին տարվա կանխագծումները ժամկետից շուտ իրականացնելու համար։*

*Մեր հանրապետության աշխատավորները, անմասն չմնալով մեծ Հոկտեմբերի տոնի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությունից, ժողովրդական տնտեսության առջև ծառացած մեծ խնդիրների հաջող լուծմամբ են նշանավորում նաև Հայաստանի վերածննդի 51-րդ տարեդարձը։ Արդյունաբերական ձեռնարկություններից, շինարարական օբյեկտներից, կոլտնտեսություններից ու սովխոզներից ամեն օր լուրեր են ստացվում տոնական մրցության մեջ աշխատավորական կոլեկտիվների ձեռք բերած աննախընթաց հաջողությունների, հնգամյակի առաջին տարվա պլաններն ու պարտավորությունները պատվով կատարելու մասին։ Արտադրական չտեսնըված այս վերելքը, մեր մարդկանց հայրենասիրական շարժումը բնականոն է, առանձնահատուկ յուրաքանչյուր կոլեկտիվի։ Չէ՞ որ նրանք պարտք ունեն տալու հայրենիքին։ Հանրապետության գործարանների ու ֆաբրիկաների աշխատողները խոստացել են, նախորդ տարվա համեմատությամբ, արդյունաբերական արտադրության ծավալը մեծացնել 13 տոկոսով, նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, ինչպես նաև աշխատանքի գիտական կազմակերպման միջոցով աշխատանքի արտադրողականության բարձրացման ընթացիկ տարվա առաջադրանքը գերակատարել 25 տոկոսով։ Նրանք իրենց վճռականությունն են արտահայտում շարունակելու արտադրանքի որակը, հուսալիությունն ու երկարակեցությունը բարձրացնելու աշխատանքները, լայնորեն ծավալելու արտադրության մեջ գյուտերի ու ռացիոնալիզատորական առաջարկությունների, գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորման շարժումը։*

*Հիրավի, որքան մեծ ու բարդ, նույնքան հրապուրիչ ու ոգեշնչող են նոր հնգամյակի կանխագծումները։ Դրանք կոմունիստական կուսակցության տընտեսական քաղաքականության և սովետական մարդկանց նկատմամբ նրա ցուցաբերած ջերմ հոգատարության անմիջական արտահայտությունն են։*

*Տնտեսական խնդիրների լուծումը և մեծ տոների առթիվ ստանձնած նոր, բարձր պարտավորությունների կատարումը յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվից պահանջում են գործիմացություն ու ձեռներեցություն, ջանքերի և եռանդի ըստ ամենայնի լարում, արտադրության խոր իմացություն։ Այստեղ է, որ մեր մարդկանց պետք է օգնի տնտեսագիտությունը, նրանց կողմից տնտեսական գիտելիքների խոր յուրացումը։*

*Ղեկավար կադրերի, բանվորների, ծառայողների ու կոլտնտեսականների, բնակչության բոլոր խավերի տնտեսագիտական ուսուցումը արդիական նշանակություն ունեցող պատասխանատու ու պատվավոր խնդիր է։ Տնտեսագիտությամբ նրանց զինելը կարևոր գործոն է մեր երկրի ժողովրդական տնտեսությունը գիտականորեն վարելու, իններորդ հնգամյակում կուսակցության տնտեսական քաղաքականությունը պատվով իրականացնելու համար։*



Կուսակցական ուսուցման
սիստեմի ունկնդիրների համար

ՅՈՒ. ՇԻՐՅԱԵՎ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԻՆՏԵԳՐԱՑԻԱՅԻ ՆՈՐ ՓՈՒԼԸ

*Սոցիալիստական երկրների բազմակողմանի փոխհարաբերությունների տարեգրության մեջ առանձնահատուկ տեղ կգրավեն տնտեսական փոխօգնության խորհրդի XXV սեսիայի (1971 թ. հուլիս) որոշումները։ Սեսիայում հավանության արժանացած Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ-երկրների համագործակցության և սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի հետագա խորացման ու կատարելագործման կոմպլեքսային ծրագիրը, իրականում, առաջիկա մի քանի հնգամյակների համատեղ տնտեսական գործունեության գլխավոր պլանն է։ Խորացնելով և հարստացնելով համագործակցության սկզբունքային հիմքերը, կոմպլեքսային ծրագիրը, միաժամանակ, սահմանում է փոխկապակցված ամբողջական միջոցառումներ, եղբայրական երկրների ընդհանուր ջանքերով դրանց իրականացման համար որոշում փուլերը, վերջին ժամկետները, տնտեսական, կազմակերպական և իրավական մեխանիզմները։*

*Սեսիայի մասնակիցներն արտահայտեցին իրենց խոր համոզմունքն այն բանում, որ՝ «Կոմպլեքսային ծրագրի իրականացումը կնպաստի տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ-երկրների ազգային էկոնոմիկայի ամրապնդմանն ու նրանց սերտ համագործակցությանը, ամբողջ սոցիալիստական համերաշխության տնտեսական հզորության մեծացմանը։ Այդ առավել ևս կամրապնդի սոցիալիզմի եղբայրական երկրների քաղաքական միասնությունն ու համախմբվածությունը, որն առանձնահատուկ նշանակություն ունի իմպերիալիզմի, համաշխարհային սոցիալիզմի դիրքերի քայքայման նրա քաղաքականության դեմ մղվող պայքարում, հասարակական կյանքի բոլոր բնագավառներում կապիտալիզմի հանդեպ նոր կարգի առավելության, աշխարհում սոցիալիզմի հեղինակության և ազդեցության մեծացման, հակաիմպերիալիստական ողջ ճակատի ամրապնդման համար մղվող պայքարում»։*

*Ինչպես սահմանված է կոմպլեքսային ծրագրում, Տնտեսական փոխօգ-*

նության խորհրդի երկրները սոցիալ-տնտեսական կարևորագույն խնդիրներն իրենց երկրներում առավել հաջող լուծելու, արտադրաուժերի հետագա վերելքի, գիտա-տեխնիկական ամենաբարձր մակարդակ ձեռք բերելու, առանձին պետությունների տնտեսական զարգացման մակարդակների աստիճանաբար մերձեցման ու հավասարեցման, ժողովրդի բարեկեցության բարձրացման, համաշխարհային էկոնոմիկայում Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամների դիրքերի ամրապնդման, նրանց պաշտպանունակության զորեղացման նպատակով կխորացնեն և կզարգացնեն սոցիալիստական տնտեսական ինտեգրացիան։

Տնտեսական փոխօգնության խորհրդի սեսիան սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի ինտենսիվ զարգացման փուլի, համագործակցության բոլոր կարևոր բնագավառներում կոլեկտիվ կերպով առաջադրված նպատակների իրագործման համար որոշակիորեն արտահայտված սիստեմային մոտեցման սկիզբը դրեց։ Նրա ընդունած փաստաթղթերը կարևոր ուղենիշ են՝ սոցիալիստական ազգերի տնտեսական սերտ մերձեցման, ինտերնացիոնալ հիմունքներով սոցիալիստական արտադրության պլանաչափ կազմակերպման վերաբերյալ Վ. Ի. Լենինի գաղափարները պրակտիկորեն կենսագործելու ճանապարհին։

Տնտեսական փոխօգնության խորհրդի ողջ գործունեությունը, նրա նոր կոմպլեքսային ծրագիրը հիմնվում է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, պետական սուվերենության հարգանքի, անկախության ու ազգային շահերի, երկրների ներքին գործերին չմիջամտելու, լիակատար իրավահավասարության և կամավորության, փոխադարձ շահավետության և ընկերական փոխօգնության սկզբունքներով։

## I

Ընդունված փաստաթղթերի նշանակությունը չի կարող լիովին իմաստավորվել, եթե դրանք գնահատենք մեկուսի, կտրված այն բազմապլանային աշխատանքից, որն իրականացնում էին Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրները և օրգանները 1969 թ. ապրիլից։ XXIII (հատուկ) սեսիայի խորհըրդում մշակված սոցիալիստական ինտեգրացիայի կուրսը որակական խոր տեղաշարժեր սկզբնավորեց սոցիալիստական պետությունների տնտեսական և քաղաքական փոխհարաբերությունների ողջ սիստեմում։ Կոմպլեքսային ծրագրի նախագծի առաջին ուրվագծերի նախապատրաստման պրոցեսում նոր ուժով ցուցադրվեց եղբայրական երկրների ընդհանուր վճռականությունը՝ ընթանալ միասնության և համախմբվածության հետագա ամրապնդման, նրանց ազգային տնտեսությունների առավել բարձրաստիճան փոխներգործությամբ ապահովող համագործակցության ձևերի ու մեթոդների որոնման ուղիով։

Ավելի քան երկու տարվա ընթացքում պլանային և տնտեսական օրգանները, մասնագետներն ու գիտնականները բազմակողմանիորեն ուսումնասիրում էին արտադրական, գիտա-տեխնիկական և առևտրական համագործակցության տարբեր տեսանկյունները, որոշում կոլեկտիվ ջանքերի ներդրման առաջնահերթ օբյեկտները։ Մշակվում էին ինտեգրացիոն պրոցեսների պլանային կառավարման առավել գործուն մեթոդներ, Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների տնտեսական համագործակցության կազմակերպական առավել հստակ կառուցվածքի ձևավորման ուղիներ։ Այդ աշխատանքի ընթացքում ավելի ու ավելի պարզորոշ էին ընդգծվում սոցիալիստական ինտեգրացիայի ծրագրի ուրվագծերը։

Վճռական դեր խաղացին վերջին տարիներին կայացած Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների համագումարներն ու պլենումները, որոնք սոցիալիստական ինտեգրացիայի կուրսը արձանագրեցին ո՛չ միայն որպես ծրագրային դրույթ, այլև 1971—1975 թթ. նոր հնգամյակի կոնկրետ դիրեկտիվ։ Մեր պետության ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIV հա-



մագումարի դիրեկտիվներում խնդիր է դրված. «Բազմակողմանիորեն կատարելագործել ու ընդլայնել Սովետական Միության տնտեսական ու գիտատեխնիկական կապերը սոցիալիստական երկրների հետ, նպատակ ունենալով է՛լ ավելի ամրապնդել համագործակցությունը և հետևողականորեն զարգացնել Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ-երկրների էկոնոմիկայի տնտեսական ինտեգրացումը»։

Կոմպլեքսային ծրագրով նախատեսված կոլեկտիվ միջոցառումների կենսագործման հիմնական ուղղությունը— արտադրության, գիտության ու տեխնիկայի ոլորտն է։ Խոսքը, ամենից առաջ, այն մասին է, որ սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցմանը ծառայեցվի աշխատանքի սոցիալիստական կոոպերացիայի ընդլայնման նպատակով ներդրված խոշոր ռեզերվները, դրա հիման վրա արագացվի տնտեսական և գիտա-տեխնիկական առաջընթացը, բնակչության կենսամակարդակի աճը։

Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրները տնտեսական վիթխարի պոտենցիալ ունեն, որը գերազանցում է ժամանակակից աշխարհի երկրների յուրաքանչյուր խմբի տեմպերին։ Վերջին երկու տասնամյակների ընթացքում Տնտեսական փոխօգնության խորհրդի պետությունների արդյունաբերական արտադրանքն ավելացել է 6,8 անգամ, այն դեպքում, երբ զարգացած կապիտալիստական պետություններում՝ ընդամենը 2,8 անգամ։ Անցած հնգամյակում Տնտեսական փոխօգնության երկրների ազգային ամբողջական եկամուտը մեծացավ 42 տոկոսով, իսկ 1970 թ. արդյունաբերական արտադրանքի ծավալը 49 տոկոսով գերազանցեց 1965 թ. համապատասխան ցուցանիշը։

Սակայն տնտեսական զարգացման մեծ դինամիզմի պարզ բնութագիրը դեռ ամենևին չի սպառում համաշխարհային էկոնոմիկայում նրանց իսկական տեղի դրսևորման խնդիրը։ Հիմնական տնտեսական ցուցանիշների աճի տեմպերի գերազանցությունն արտահայտվում է համաշխարհային արտադրության մեջ Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների տեսակարար կշռի անշեղ մեծացմամբ. արդյունաբերական մթերքների թողարկումը, օրինակ, 1964 թվականի 10,4 տոկոսից 1970 թվականին հասել է 33 տոկոսի, այսինքն՝ այն աճել է ավելի քան 3 անգամ։ Այդպես համանման են նաև ՏՓԽ անդամ-երկրների ազգային եկամտի համաշխարհային ցուցանիշները։

Աճի բարձր տեմպերի և նյութական արտադրության խոշորագույն բացարձակ ծավալների զուգակցմամբ է որոշվում Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների ներգործման զգալի չափը համաշխարհային տնտեսական զարգացման ողջ դինամիկայի վրա։ Կազմելով երկրագնդի բնակչության 10 տոկոսը, նրանք ապահովում են, մոտավոր հաշվումներով, համաշխարհային ազգային տարեկան եկամտի աճի ծավալի ավելի քան 1/3-ը և արդյունաբերական արտադրանքի աճի՝ գրեթե 1/2-ը։

Համաշխարհային էկոնոմիկայում Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների դիրքերի ամրապնդումը, նրանց տնտեսական զարգացման բոլոր փուլերում, սերտորեն կապված է փոխհամագործակցության խորացման հետ այնպիսի կենսականորեն կարևոր պրոբլեմների բնագավառում, ինչպես վառելա-հումքային բազայի զարգացումն է, փոխադարձ օգնությունն արդյունաբերական առաջատար բնագավառների տեխնիկական վերազինման նպատակով, բազմաթիվ ճյուղերի և արտադրությունների, ինչպես նաև ժամանակակից մեքենաշինության ստեղծումն է երբեմնի ագրարային երկրներում։

Հնգամյակից հնգամյակ կապերը եղբայրական պետությունների միջև ո՛չ միայն սերտանում էին, այլև դառնում էին առավել բազմակողմանի, ընդարձակվում տնտեսական գործունեության նոր մարզերում։ Դա վերաբերում է, օրինակ, բնակչության կենսամակարդակը որոշող այն բնագավառներին, որոնք վերջին տարիներին դառնում էին փոխադարձ համագործակցության կարևորագույն օբյեկտներից մեկը, ինչպես նաև՝ արդյունաբերական և գիտա-

տեխնիկական կոոպերացման բնագավառի հարաբերություններին: Համագործակցության դիվերսիֆիկացման շոշափելի տենդենցը նշանակում է, որ այն վերածվում է, ըստ էության, յուրատեսակ ընդհանրական գործիքի, որը գործնականորեն նպաստում է սոցիալիստական երկրներում տնտեսական շինարարության ցանկացած հարցերի լուծմանը:

Միաժամանակ, տնտեսական շինարարության խնդիրների բարդացումը չէր կարող չանդրադառնալ այն նոր պահանջների վրա, որ հարուցում են Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրները իրենց փոխադարձ կապերին, դրանց ծավալներին, կառուցվածքին, արդյունավետությանը: Ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը, XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ, «աշխատանքի սոցիալիստական բաժանման հնարավորությունները դեռևս լրիվին չեն օգտագործվում: Պրակտիկան մեզ հանգեցրել է այն ընդհանուր հետևության, որ անհրաժեշտ է խորացնել արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, է՛լ ավելի սերտորեն համաձայնեցնել ժողովրդատնտեսական պլանները, մի խոսքով՝ առաջ ընթանալ սոցիալիստական պետությունների տնտեսական ինտեգրացման ուղիով»:

Սոցիալիստական ինտեգրացիայի կոմպլեքսային ծրագիրը հենց Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների տնտեսական և սոցիալական զարգացման ժամանակակից փուլի արմատական պահանջն է: Դրա կենսագործմանը զուգընթաց գործի կդրվեն տնտեսական աճի լրացուցիչ խոշոր աղբյուրները: Առջևում սոցիալիստական երկրների տնտեսական և գիտա-տեխնիկական պոտենցիալների խթանման նոր, մեծ առաջընթացն է:

## II

Տնտեսական համագործակցության նախընթաց տասնամյակի ընթացքում կուտակված ողջ դրական փորձը սինթեզող սոցիալիստական ինտեգրացիան չի հանգում տնտեսական փոխադարձ կապերի անցյալում մշակած ձևերի պարզ քանակական աճին: Դա նոր ու բարդ, տնտեսական բազում պրոբլեմներին առավել լայն մոտեցում, Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների ընդհանուր ջանքերով դրանց լուծման ամենառացիոնալ ձևերի ու մեթոդների մշակում ենթադրող պրոցես է:

Ինտեգրացիոն պրոցեսի բարդությունն այն է, որ վերջինս իր վրա է կրում արտադրական, սոցիալ-տնտեսական և քաղաքական բազմապիսի գործոնների ներգործությունը: Ուստի, Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների համգործակցության մեջ ինտեգրացիայի սերմանած նորը պարզաբանելու համար, անհրաժեշտ է այդ գործոնները քննել իրենց օրգանական փոխադարձ կապում: Միայն այդպես է հնարավոր հստակ պատկերացնել միջազգային սոցիալիստական ինտեգրացիայի դասակարգային էությունը, խուսափել ժամանակակից համաշխարհային տնտեսության մասշտաբներով իրականացվող՝ տարատեսակ ինտեգրացիոն պրոցեսների նույնացումից:

Սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի անհրաժեշտությունը նախորոշվում է տնտեսական կյանքի միջազգայնացման պրոցեսով: Դա նշանակում է պետությունների միջև առևտրական, արտադրական և գիտա-տեխնիկական փոխադարձ կապերի խորացում, դրա հիման վրա արտադրաուժերի զարգացում՝ յուրաքանչյուր առանձին վերցրած երկրում:

Այդ պրոցեսն անչափ արագացել է գիտական հետազոտությունների ու մշակումների համար, մասնավորապես, այնպիսի մեծ ռեսուրսների կոնցենտրացիա պահանջող գիտա-տեխնիկական հեղափոխությամբ, որը, ըստ էության, բացառում է նույնիսկ առավել խոշոր երկրների լիակատար նյութատեխնիկական ինքնաապահովման հնարավորությունը, պայմանավորում անցումը լայն միջազգային կոոպերացիայի: Հետազոտությունների և նախագծային-կոնստրուկտորական մշակումների ծախսերի աճը մեծացնում է արտադրության մասշտաբների ընդլայնման, մասսայական արտադրանքի բարձրացման պահանջները:



Երբ մենք անցնում ենք ինտեգրացիոն պրոցեսների վերլուծությանը, պարզ է դառնում, որ ինտեգրացիան սոցիալիզմի և կապիտալիզմի պայմաններում տարբերվում է նույնքան սկզբունքորեն, որքան՝ սոցիալիստական և կապիտալիստական արտադրաեղանակները: Միջազգային սոցիալիստական ինտեգրացիան իր նպատակներով, ձևերով ու մեթոդներով (տնտեսական մեխանիզմի), սոցիալական և քաղաքական արդյունքներով արմատապես տարբերվում է կապիտալիստականից:

Սոցիալիստական երկրների տնտեսական ինտեգրացիան ընդհանուր առմամբ կարող է բնորոշվել որպես մերձեցման, փոխադարձ հարմարեցման և միջազգային տնտեսական կոմպլեքսում ազգային տնտեսական կառուցվածքների օպտիմալացման, օբյեկտիվ, պլանաչափորեն կարգավորող պրոցես, արտադրության, գիտության ու տեխնիկայի առաջատար ճյուղերում խոր ու կայուն կոոպերացիոն կապերի ձևավորում, համապատասխան տնտեսական, տեխնոլոգիական և կազմակերպական պայմանների ստեղծմամբ այդ երկրների միջազգային շուկայի ընդլայնում ու ամրապնդում:

Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների կուսակցական և կառավարական փաստաթղթերում, խորհրդի վերջին սեսիայի որոշումներում, ինչպես նաև տնտեսական գրականության մեջ սոցիալիստական ինտեգրացիայի պրոբլեմների տեսական ընդհանրացումը հնարավորություն է ընձեռում պարզորոշ սահմանելու սոցիալիստական ինտեգրացիայի բնորոշ գծերը:

Սոցիալիստական ինտեգրացիան կազմակերպված, գիտակցված պրոցես է. այն երևան է գալիս, առաջին հերթին, որպես մի խումբ երկրների միասնական տնտեսական քաղաքականության արգասիք, որը նպատակադրվել է հետևողականորեն օգտագործել կոլեկտիվ համագործակցության պոտենցիալները՝ հանուն ժողովրդատնտեսական և քաղաքական բարդ խնդիրների լուծման (Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների համագործակցության վերաբերմամբ՝ ինչպես ներքին, այնպես և արտաքին): Այն կենսագործվում է ինտեգրացիոն միջոցառումների սիստեմի իրականացման վերջնական և միջակա նպատակները, փուլերն ու կոնկրետ մեխանիզմը կանխորոշող միջազգային միասնական ծրագրի հիման վրա:

Տնտեսական կյանքի ինտերնացիոնալիզացման խորացման տենդենցի հետ կապված հնարավորությունների առավելաչափ օգտագործումը կանխորոշում է ազգային ժողովրդատնտեսական կոմպլեքսների փոխներգործության որակապես այլ մակարդակ, միաժամանակ, միջազգային համագործակցության օբյեկտների փոփոխություն: Այս կապակցությամբ ինտեգրացիայի, որպես լիակատար զարգացող սիստեմի, էական հատկանիշներն են.

— ինտերնացիոնալիստական միավորման անշեղորեն աճող արտադրական ռեսուրսների ստիճանը՝ հանուն արագընթաց տեխնիկական զարգացման, վառելա-հումքային պրոբլեմի առավել արդյունավետ լուծման, մշակող արդյունաբերության մեջ, ինչպես և միջազգային կապերին սպասարկող ինֆրակառուցվածքում օպտիմալ ինտերնացիոնալիստական արտադրական կոմպլեքսների ձևավորման.

— ինտեգրացվող երկրների արտադրապոտենցիալների աստիճանական միավորումը՝ շնորհիվ դրանց ներքին արտադրական կառուցվածքների փոխադարձ հարմարման և միասնական ինտերնացիոնալ կառուցվածքի տարրերի ստեղծման.

— միասնական կառուցվածքային քաղաքականության դերի, և, որպես արդյունք, բազմակողմանի հիմքի վրա երկարաժամկետ տնտեսական պրոցեսների համատեղ պլանային կարգավորման դերի բարձրացումը.

— արտադրության, գիտության, տեխնիկայի, շրջապտույտի ոլորտներում օրգանական փոխադարձ կապ ենթադրող ժողովրդատնտեսական բարդ խնդիրների լուծման համար սիստեմային մոտեցումը. ապրանքների և ծառայությունների միջազգային փոխանակման ծավալները, կառուցվածքը և աճի տեմպերը կանխորոշող արտադրա-տեխնիկական կապերի դերի բարձրացումը:

Ինտեգրացիոն ծրագրի իրականացումը պահանջում է դրա նպատակներին ու խնդիրներին լրիվին համապատասխան միջազգային համագործակցության տնտեսական մեխանիզմի ստեղծում։ Այդպիսի մեխանիզմի բնորոշ գծերը կարող են համարվել ինտեգրացիայի մեջ մտնող պետությունների պլանային համատեղ գործունեության ձևերի կատարելագործումը տնտեսական բոլոր օղակների մակարդակով, ապրանքա-դրամային միջոցների ակտիվացումը, ճյուղային մինիստրությունների, ձեռնարկության միավորումների և առանձին ձեռնարկությունների միջև անմիջական կապերի դերի մեծացումը՝ հանուն կոնկրետ հարցերի առավել օպերատիվ լուծման։ Ինտեգրացիոն մեխանիզմը, բնականաբար, ենթադրում է համագործակցության զարգացումը խթանող պլանային, վարկային-ֆինանսական և տնտհաշվարկային արտոնությունների սիստեմների ձևավորում։

Ինտեգրացիոն մեխանիզմի հասկացության մեջ են մտնում նաև միջազգային կազմակերպությունների, նորմատիվ դրույթների, իրավական նորմերի սիստեմը և այլն, որը ինտեգրացիոն պրոցեսների գործարար կառավարման էական պայմանն է ինչպես ժողովրդական տնտեսության, այնպես և դրա առանձին ոլորտների ու բնագավառների մակարդակով։ Միջազգային սոցիալիստական ինտեգրացիայի բնորոշ գիծը արտաքին տնտեսական գործունեության կառավարման սիստեմների միասնական կատարելագործումն է ՏՓԽ երկրներում՝ նրանց առավել սերտ փոխգործողության համար։

Ինտեգրացիայի թվարկված հատկանիշներից շատերը այս կամ այն չափով հատուկ են եղել սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցությանը նաև անցյալում։ Սակայն այսօր դրանք որոշող են դառնում սեսիայի խորհրդի վերջին որոշումներից հետո առավել բարձր մակարդակի հասնող՝ Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների տնտեսական փոխհարաբերությունների ողջ սիստեմի համար։

## III

Սոցիալիստական ինտեգրացիայի առաջնահերթ խնդիրների լուծման կարևորագույն նախապայմանները մոտալուտ հնգամյակի ժողովրդատնտեսական պլանների կոորդինացման արդյունքներն են։ Այդ արդյունքները ենթադրում են միասնական պլանային առաջադրանքների, կոլեկտիվ միջոցառումների և փոխպարտավորությունների ամուր հիմքի վրա՝ խորհրդի XXV սեսիայի ընդունած կոմպլեքսային ծրագրի նախնական խնդիրների իրականացում։

Նոր հնգամյակում ինտեգրացիոն պրոցեսների խորացման կոնկրետ ուղիները ներառում են՝ նյութական արտադրության, գիտության, տեխնիկայի, երրորդ երկրների շուկաներում արտաքին առևտրական փոխանակման գործառնությունների բնագավառներն ընդգրկող համագործակցության կոմպլեքսային ձևերի պլանաչափ զարգացումը, միջազգային արտադրական կոոպերացիայի և արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ մասնագիտացման արդյունավետ ձևերի զարգացումը, շահագրգռված սոցիալիստական երկրների ռեսուրսների փոխշահավետ միավորումը՝ արդյունաբերության վառելա-էներգետիկ և հումքային ճյուղերի զարգացման նպատակով տրանսպորտի և կապի միջոցների զարգացումն ու ռացիոնալիզացումը՝ ընդլայնվող ապրանքափոխանակության ապահովման համար։

1971—1975 թթ. հնգամյակում նախատեսվում է, ամենից առաջ, նյութական արժեքների փոխմատակարարումների հետագա աճ, որոնց մասշտաբները աննախադեպ են համաշխարհային պրակտիկայում։ Այդ տարիների ընթացքում Սովետական Միության ապրանքաշրջանառությունը ԳԴՀ հետ հասնում է (մլրդ ռուբ.) մոտ 22, Չեխոսլովակիայի՝ 13,5, Լեհաստանի՝ 13, Բուլղարիայի՝ 12, Հունգարիայի՝ 9, Ռումինիայի՝ 5։ Ամբողջությամբ վերցրած ապրանքաշրջանառությունը ՍՍՀՄ և Տնտեսական փոխօգնության խորհրդի մյուս անդամ-երկրների միջև 1971—1975 թթ., նախընթաց հնգամյակի համեմատությամբ, կաճի մոտ 1,5 անգամ և կկազմի ավելի քան 76 մլրդ ռուբլի։ Գերազանցող տեմպերով կմեծանա արտադրանքի փոխմատակարարումն այն ճյուղերում, որոնցով է, պայմանավորված տեխնիկական պրոգրեսի— ճշգրիտ մեքենաշինության, քիմիայի, էլեկտրոնիկայի, արագացումը։



Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների ապրանքների և ծառայությունների փոխմատակարարման աճի ընդհանուր բնութագիրը տրված է հետևյալ աղյուսակում.

Ապրանքաշրջանառության աճը Տնտեսական փոխօգնության խորհրդի եվրոպական երկրների միջև 1971—1975 թթ.

(1966—1970 թթ. փոխմատակարարումների ծավալի տոկոսները)

| | ԲԺՀ | ՀԺՀ | ԳԴՀ | ԼԺՀ | ՌՍՀ | ՍՍՀՄ | ՉՍՍՀ |
|---|---|---|---|---|---|---|---|
| ԲԺՀ | × | 170 | 183 | 200 | 190 | 157 | 200 |
| ՀԺՀ | 170 | × | 166 | 140 | 170 | 150 | 160 |
| ԳԴՀ | 183 | 166 | × | 170 | 170 | 156 | 150 |
| ԼԺՀ | 200 | 140 | 170 | × | 180 | 167 | 180 |
| ՌՍՀ | 190 | 170 | 170 | 180 | × | 135 | 150 |
| ՍՍՀՄ | 157 | 150 | 156 | 167 | 135 | × | 143 |
| ՉՍՍՀ | 200 | 160 | 150 | 180 | 150 | 143 | × |

Սակայն նոր հնգամյակում համագործակցության ծրագրի նշանակությունն ամենևին չի սպառվում փոխադարձ ապրանքաշրջանառության աճի ցուցանիշներով։ Ծավալներն ու փոխմատակարարման կառուցվածքը վերջնական արդյունքի են վերածվում արտադրության, գիտության, տեխնիկայի, կապիտալ շինարարության անմիջական ոլորտներում համագործակցության ձևերի առավել խոր զարգացմամբ։

Օրինակ, հումքի, վառելիքի և էլեկտրաէներգիայի մատակարարման բազմապատկումն առավել լայնորեն է հիմնավորում շահագրգռված երկրների այս կամ այն ձևով մասնակցությունը համապատասխան արտադրական կարողությունների ավելացմանը։ Այսպես, 1971—1975 թթ. պլանների կոորդինացման ընթացքում Սովետական Միությունը համաձայնագիր կնքեց ՉՍՍՀ և ԳԴՀ հետ ՍՍՀՄ նավթի և գազի արդյունաբերության կարողությունների ավելացմանը մասնակցելու վերաբերյալ, Լեհաստանի և Հունգարիայի հետ՝ «Բարեկամություն» նավթամուղի զարգացման, Բուլղարիայի հետ՝ գազի, անտառ, ցելյուլոզի և մետալուրգիայի արդյունաբերության լրացուցիչ կարողություններ ստեղծելու, Ռումինիայի հետ՝ երկաթուղային արդյունաբերության կարողությունների բազմապատկման, Հունգարիայի հետ՝ ստվարաթղթի, ասբեստի, ֆոսֆորապարունակ հումքի արտադրության ընդլայնման վերաբերյալ։

Ծավալուն սոցիալիստական ինտեգրացիայի պայմաններում հնարավորություն է ընձեռվում նոր մոտեցում իրագործել վառելա-հումքային՝ իր էությամբ ինտերնացիոնալ պրոբլեմին։ Այն ենթադրում է մի շարք երկրների ռեսուրսների միավորումն ապահովող, նրանց համար ընդհանուր ժողովրդատնտեսական խնդիրների լուծման տնտեսական միջոցների օգտագործում։

Նոր մոտեցումը վառելա-հումքային պրոբլեմին այս հնգամյակում իրագործվում է ո՛չ միայն երկկողմանի համագործակցության խորացման ուղիով, այլև բազմակողմանի հիմքով։ Օրինակ կարող է ծառայել սև մետալուրգիան։ Գոյություն ունեցող նախագծերում խիստ կարևոր նշանակություն ունի Կուրսկի մագնիսային անոմալիայի բազայի վրա տարեկան 10—12 մլն տոննա պողպատի կարողությամբ համատեղ ջանքերով կառուցվող խոշոր մետալուրգիական կոմբինատը։ Ծրագրված է Բուլղարիայի, Հունգարիայի, ԳԴՀ և Լեհաստանի ջանքերով կառուցել բարձրորակ տրանսֆորմատորային թերթի արտադրության ձեռնարկություն։ «Ինտերմետալի» մասնակից-երկրները մտադիր են ստեղծել նաև պլաստմասսայապատ պողպատաթերթի, քրոմազօծ պողպատի համատեղ արտադրություն և այլն։

Պակաս կարևոր չեն նաև մշակվող արդյունաբերության արտադրանքի փոխադարձ փոխանակության տեղաշարժերը։ Այդ փոխանակության կառուցվածքն ու դինամիկան արտացոլում են կոոպերացիոն կապերի խորացող ազդեցությունը, որոնք հեռանկարում, ըստ էության, դառնալու են Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների տեխնոլոգիական միավորման նյութական հիմքի արտադրական ապարատները։ Թեև արդյունաբերական լայն կոոպերացումն իր առաջին քայլերն է անում, նրա դրական ներգործությունը սոցիալիստական ինտեգրացիայի ընթացքի վրա արդեն դրսևորվում է։

Արտադրական-տեխնիկական կոոպերացման արդյունավետության գործնական օրինակներից մեկը ՍՍՀՄ և ԳԴՀ համաձայնագրերն են էլեկտրոնային-հաշվողական տեխնիկայի փոխմատակարարման վերաբերյալ։ Կոմպլեքսային արուրքի բնագավառում մինչև այժմ կնքված համաձայնագրերից ամենախոշորն է այդ։ Ընելով միասնական, Տնտեսական փոխօգնության խորհրդում ընդունված էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի սիստեմից, այն կոնկրետ որոշում է աշխատանքի բաժանման աստիճանները՝ սկսած նախագծային-հետազոտման աշխատանքներից ու արտադրական պրոցեսից մինչև փոխմատակարարման մասնագիտացումը։ Էլեկտրոնային-հաշվողական տեխնիկայի միասնական սիստեմի ստեղծմամբ, քիմիական և արդյունաբերության այլ ճյուղերի զարգացման նպատակով ՍՍՀՄ և Չեխոսլովակիայի միջև հետագա զարգացում է ապրում փոխշահավետ կոոպերացիան։

Այդպիսի համաձայնագրերի թիվը տարեցտարի ավելանում է, դառնալով համագործակցության խորացման որոշիչ գործոնն արտադրության բազում ոլորտներում։ Ավտոմոբիլային արդյունաբերության մեջ, օրինակ, պատրաստի արտադրանքի «ավելցուկի» փոխանակությունը հետզհետե իր տեղը զիջում է արտադրական ծրագրի բաշխման վրա հիմնված փոխանակությանը։ Այսպես, հիշյալ բնագավառի արտադրանքի փոխմատակարարումների 80 տոկոսը ՍՍՀՄ և Հունգարիայի միջև այս հնգամյակում ընկնում է կոոպերացիոն մատակարարմանը։ Լեհաստանը սովետական «Ժիգուլի» ավտոմեքենայի համար արտադրում է 13 դետալ, փոխարենը՝ «ՖԻԱՏ» ֆիրմայի լիցենզիայի բազայի վրա թողարկվող իր ավտոմեքենայի համար ստանում է 25 դետալ։

Կոոպերացումը, որոշ դեպքերում, բավական շոշափելիորեն անդրադառնում է արտադրության մասշտաբների և սերիականության վրա։ Կոոպերացիոն համաձայնությունը, առաջին հերթին, Սովետական Միության հետ, Լեհաստանին հնարավորություն ընձեռեց դառնալու, ԱՄՆ-ից հետո, մետաղակտրիչ հաստոցների համար էլեկտրամագնիսական կցորդիչի խոշորագույն արտադրողը։ Համանման հիմունքով Լեհաստանում զարգանում է շինարարաճանապարհային մեքենաների համար հաղորդարկղերի թողարկումը։

Այս հնգամյակում Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների տընտեսական փոխկապերի խորացմանը նպատակաուղղված գործնական միջոցառումների վերլուծությունը կատարյալ չէր լինի առանց գիտա-տեխնիկական համագործակցության զարգացման նվաճումների գնահատականի։ Այդ կենսականորեն անհրաժեշտ ոլորտի ինտեգրացիայի կուրսն իրագործվում է առանձին երկրների գիտա-տեխնիկական պոտենցիալների անցյալ տարիներից առավել սերտ զուգակցմամբ՝ համատեղ հետազոտությունների և մշակումների պատշաճ անցկացման, միջազգային գիտա-հետազոտական կենտրոնների ճյուղավորված սիստեմի, գիտա-տեխնիկական առնչությունների օրգանական կապի ձևավորման ուղիով, արտադրական և առևտրական համագործակցության զանազան ձևերով հանդերձ։

«Ինտերատոմգործիք» միջազգային կազմակերպության խնդիրներից են նաև հետազոտական աշխատանքների հետ մեկտեղ, համապատասխան սարքավորումների արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը կարգավորելը, արտաքին առևտրի ուղիներով այդ սարքավորումների փոխմատակարարման բազմապատկմանն աջակցելը և այլն։ Տնտեսական փոխօգնության խորհրդի գիտական և տեխնիկական հետազոտությունների կոորդինացման հանձնաժողովի վերափոխումը՝ Տնտեսական փոխօգնության խորհրդի կոմի-



տեի, կնպաստի գիտա-տեխնիկական կապերի հետագա խորացմանն ու կատարելագործմանը, համագործակցության առավել արդյունավետ ձևերի գործադրմանը, գիտական կադրերի պատրաստման նպատակով համագործակցության ընդլայնմանը։

## IV

Տնտեսական փոխօգնության XXV սեսիայի որոշումները եղբայրական երկրների փոխհամագործակցության խորացման, նրանց տնտեսական ինտեգրացիայի արագացման նոր խթան են ստեղծում։ Այդ գործում գլխավոր դեր է կատարելու ինտեգրացիայի մեջ մտնող երկրների երկարաժամկետ ստրուկտուրային քաղաքականության մշակումն ու անցկացումն ապահովող համատեղ պլանային գործունեության մեթոդների կատարելագործումը, այսինքն՝ ժողովրդատնտեսական կառուցվածքների ձևավորմանն ուղղված քաղաքականության, օպտիմալ ո՛չ միայն յուրաքանչյուր առանձին վերցրած պետության ներքին զարգացման պայմանների և պահանջմունքների, այլև ամբողջ համագործակցության պահանջմունքների տեսանկյունից։ Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրներում ժողովրդատնտեսական փոխլրացնող կառուցվածքների ստեղծումը հնարավորություն կընձեռի ապագայում նշանակալի չափով արագացնելու միջազգային սոցիալիստական աշխատանքի բաժանման զարգացման տեմպերը, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցմանը տրամադրելու դրա հետ կապված տնտեսական աճի բոլոր ռեզերվները։

Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների միասնական ստրուկտուրային քաղաքականության անցկացման կարևոր միջոցներն են դառնում տընտեսական քաղաքականության հիմնական հարցերին վերաբերող կոնսուլտացիաները, տեխնիկա-տնտեսական երկարաժամկետ կանխատեսումների մշակումը, արտադրության ընտրված ոլորտների ու տեսակների պլանավորումը շահագրգռված երկրների կողմից, ժողովրդատնտեսական բարդ խնդիրների լուծմանը նպատակաուղղված համագործակցության կոմպլեքսային ծրագրի մշակումն ու իրագործումը։

Համատեղ պլանային գործունեության ձևերի ու մեթոդների կատարելագործման հետ մեկտեղ պետք է պրակտիկայում կարգավորել ու ստուգել տնտեսական շրջապտույտի ինտենսիվացմանը նպաստող ինտեգրացիոն մեխանիզմի և այլ միջոցներ։ Այդ թվում լուրջ տեղ են գրավում վալյուտային հաշվարկի առավել կատարյալ սիստեմը, փոխշահավետ արտաքին առևտրական գները, համագործակցության կազմակերպական իրավական հիմքերի ամրապնդումը (առաջին հերթին, փոխպարտավորությունների պայմանագրային ձևակերպումների պրակտիկայի լայն զարգացմամբ, միջազգային մասնագիտացման միավորումների սիստեմի ընդլայնմամբ)։

Քննելով պլանային սոցիալիստական ինտեգրացիայի ձևավորվող մեխանիզմին ներկայացվող կոմպլեքս պահանջները, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ այդ կոմպլեքսը չի սահմանափակվում միայն ներքին պահանջներով (սոցիալիստական վերարտադրության պահանջմունքների տեսանկյունից)։ Վ. Ի. Լենինն ասում էր. «...ամբողջ աշխարհի վերակառուցման համար, երկրների մեծ մասի վերակառուցման համար կպահանջվեն շատ և շատ տարիներ։ Իսկ այդ նշանակում է, որ անցումային այն շրջանում, որ ապրում ենք մենք, այդ մոզայիկ իրականությունից դուրս ցատկել չենք կարող։ Տարբեր տեսակի մասերից կազմված այս իրականությունը դուրս գցել չի կարելի, որքան էլ այն գեղեցիկ չլինի» (Երկեր, հ. 29, էջ 195)։ Ժամանակակից համաշխարհային տնտեսության «մոզայիկ իրականության» պայմաններում խիստ էական, ընդ որում անընդհատ մեծացող նշանակություն է ձեռք բերում ինտեգրացիոն մեխանիզմի ձևավորման այնպիսի կարևոր տեսանկյունը, ինչպես միջազգային համագործակցության կազմակերպման սոցիալիստական մեթոդների առավելությունների իրագործումն է կապիտալիզմի օգտագործած մեթոդների համեմատ։ Այդ պրոբլեմի լուծման առաջընթացը՝ միջազգային

ասպարեզում սոցիալիզմի և կապիտալիզմի միջև ուժերի հարաբերակցության ընդհանուր փոփոխության էական ցուցանիշն է այսօր։

Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների ինտեգրացիան իրականացվում է բնավ ոչ տնտեսական վակուումում։ Ինտեգրացվող պետությունների փոխկապերի զարգացումը ուղեկցվում է մյուս սոցիալիստական երկրների, ինչպես նաև զարգացող և զարգացած կապիտալիստական երկրների հետ համագործակցության ընդլայնմամբ։ Սոցիալիստական ինտեգրացիան ընդհանուր ոչինչ չունի «կոլեկտիվ ավտարկիայի» որևէ ձևի հետ։ Տնտեսական փոխօգնության խորհրդի յուրաքանչյուր երկրի միջազգային փոխանակության վրա հիմնված այս կամ այն ժողովրդատնտեսական կոնկրետ խնդրի նպատակով ծավալված գործունեության արդյունքները ներգործում են համագործակցության տնտեսական մեխանիզմի բոլոր հիմնական տարրերի վրա։ Տընտեսական փոխկապերի առավել արագ զարգացումը կարելի է ապահովել միայն միջազգային համագործակցության պլանային և ապրանքային գործոնների ողջ միագումարի համաձայնեցված օգտագործման, ինչպես և ներքին տնտեսական քաղաքականության բազայի վրա։

Սոցիալիստական ինտեգրացիայի ինչպես ներքին, այնպես և արտաքին խնդիրների հաջող լուծումը մեծապես (եթե ոչ ամբողջապես) պայմանավորված է տնտեսական փոխօգնության երկրների արտաքին կապերի կառավարման սիստեմների կատարելագործման առաջընթացից, խորացող ինտեգրացիայի պահանջներին դրանց անշեղ հարմարվելուց։ Դրա համար պատահական չէ, որ 1971—1975 թթ. Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի դիրեկտիվները բովանդակում են ո՛չ միայն արտաքին առևտրական շրջապտույտի բազմապատկման, գիտա-տեխնիկական և արտադրական կոոպերացման զորեղացման առաջադրանքները, այլև արտաքին կապերի կառավարման կատարելագործման, առաջին հերթին, փոխհամագործակցության խորացման պահանջների հաշվառման հետ կապված խիստ պատասխանատու խնդիրներ։

Լ. Ի. Բրեժնևը XXIV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշեց, որ մյուս երկրների հետ տնտեսական և գիտա-տեխնիկական կապերի դերի բարձրացումը կպահանջի «որոշակի միջոցներ ձեռնարկել կատարելագործելու արտաքին-տնտեսական ամբողջ գործունեության կառավարումը, վերացնելու նեղ գերատեսչական մոտեցումն այդ կարևոր գործում։ Այդ գործունեությունը պետք է ավելի ու ավելի մեծ չափով հիմնվի արտադրական և առևտրական ֆունկցիաների զուգորդման վրա, որպեսզի համաշխարհային շուկայի պահանջմունքներն ու հնարավորությունները հաշվի առնվեն օպերատիվ կերպով և օգտագործվեն հանուն մեր էկոնոմիկայի զարգացման»։

Այսպիսով, արտաքին կապերի կառավարման պրոբլեմը վերածվում է սոցիալիստական տնտեսավարման ձևերի ու մեթոդների որակական կատարելագործման ողջ պրոցեսի օրգանական բաղադրիչ մասի։ Այդ պրոբլեմները չեն սահմանափակվում, իհարկե, արտաքին տնտեսական հարաբերությունների կազմակերպման որևէ առանձին, թեկուզ խիստ կարևոր տարրերում ուղղում կատարելով։ Դրանք ընդգրկում են արտաքին կապերի դերի բարձրացման խնդիրները՝ որպես ինտեգրացիոն պրոցեսներում ժողովրդական տնտեսությանն ակտիվ ներգրավելու, արդյունաբերության և արտաքին առևտրի միջև կապերի ամրապնդման, այդ ոլորտից տնտեսական գործունեությունը անհետևողական տնտեսական հաշվարկի ռեժիմին փոխադրելու գործիք։ Անշուշտ, առաջնահերթ նշանակություն է ձեռք բերում արտաքին առևտրի համապետական պլանավորման առավել բարձր մակարդակը, որը սոցիալիզմի պայմաններում արտաքին տնտեսական ողջ գործունեության կազմակերպման կարևորագույն սկզբունքն է։

* * *

Սոցիալիստական ինտեգրացիայի կոմպլեքսային ծրագրի նշանակությունը՝ նրա առջև դրված խնդիրներին զուգընթաց, կմեծանա առավել լիակատար չափով։ Այն որոշում է Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների ընդհանուր ստրատեգիական գիծը, որը կոնկրետանում է համատեղ խոշոր նախագծումների իրագործման ընթացքում, ինտեգրացիոն պրոցեսի նյութական հիմքով։ Ծրագիրը Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների պլանային օրգանների, ճյուղային մինիստրությունների, գերատեսչությունների, տնտեսական կազմակերպությունների, ինչպես նաև առավել արդյունավետ համագործակցության գործնական կազմակերպման, ազգային տնտեսությունների փոխներգործության ընդլայնման խորհրդի օրգանների ինտենսիվ աշխատանքի սկիզբն է դնում։



Այդ ամենի հետ մեկտեղ կոմպլեքսային ծրագրի նշանակությունը դուրս է գալիս կոնկրետ միջոցառումների շրջանակներից, որքան էլ դրանք կարևոր և ակտուալ լինեն։ Այն որոշվում է, առաջին հերթին, սոցիալիստական երկրների միջազգային հարաբերությունների՝ որպես հարաբերությունների նոր տիպի սկզբունքների զարգացմամբ ու խորացմամբ։ Սոցիալիստական ինտերնացիոնալիզմով ներծծված ծրագիրը ինտերնացիոնալ և ազգային շահերի օրգանական ներդաշնակության օրինակ է։ Այն հնարավորություն է ընձեռում ջանադրաբար հաշվի առնելու ամեն մի սոցիալիստական երկրի պահանջմունքները, նրա պատրաստ լինելը այս կամ այն ինտեգրացիոն միջոցառմանը։

Վ. Ի. Լենինը գրել է. «Սոցիալիզմը, կազմակերպելով արտադրությունն առանց դասակարգային ճնշման, ապահովելով պետության բոլոր անդամների բարեկեցությունը... հեշտացնում և վիթխարիորեն արագացնում է ազգերի մերձեցումն ու միաձուլումը» (Երկեր, հ. 22, էջ 437)։ Համագործակցության և փոխօգնության, բոլոր մասնակիցների կամավորության և հավասարության սկզբունքներով մշակված սոցիալիստական ինտեգրացիայի ծրագիրը լիովին համապատասխանում է «միասնական համաշխարհային կոոպերացիայի» աստիճանաբար ձևավորման ընթացքում սոցիալիստական ազգերի համախմբման պայմանների և պատմական հեռանկարների լենինյան գնահատականին։

Տնտեսական փոխօգնության խորհրդի XXV սեսիայի որոշումները, անկասկած, լուրջ ներգործություն կունենան համաշխարհային տնտեսական զարգացման ողջ ընթացքի, սոցիալիզմի միջազգային դիրքերի ամրապնդման վրա։ Նրանք կաջակցեն սոցիալիստական համերաշխության միասնությանն ու համախմբվածությանը։ «Կոմպլեքսային ծրագրով նախատեսված միջոցառումների իրականացմանը,— ընդգծված է Տնտեսական փոխօգնության խորհրդի XXV սեսիայի կոմյունիկեում,— կարող է լիովին կամ մասամբ մասնակցել Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ չհանդիսացող ամեն մի երկիր։ Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ-երկրները հետագայում ևս տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցություն կծավալեն սոցիալիստական մյուս երկրների հետ»։ Տնտեսական փոխօգնության խորհրդի XXV սեսիայի որոշումներում ընդգծված է, որ սոցիալիստական ինտեգրացիան իր բնույթով ներփակ չէ, դա է կոմպլեքսային ծրագրի խիստ կարևոր սկզբունքը։ Հասկանալի է, սակայն, որ այդ սկզբունքը կիրականացվի միայն առանց բացառության բոլոր սոցիալիստական երկրների տնտեսական մերձեցման պրոցեսը խոչընդոտող ինչպես օբյեկտիվ, այնպես և սուբյեկտիվ գործոնների հաղթահարմամբ։

Այսպիսով, նոր կոմպլեքսային ծրագրի իրականացումը հեռանկարային առանձնահատուկ նշանակություն է ստանում։ «Այդ երկարաժամկետ ծրագրի կենսագործումը,— նշեցին եղբայրական երկրների բարեկամական հանդիպմանը մասնակցած ղեկավար գործիչները, 1971 թ. օգոստոսի 2-ին,— ակտիվ կերպով կնպաստի աշխատավորության կենսամակարդակի հետագա վերելքի խնդրի լուծմանը, սոցիալիզմի եղբայրական երկրների քաղաքական և տընտեսական միասնության ու համախմբվածության հետագա ամրապնդմանը և պատմական դեր կխաղա սոցիալիզմի ու կոմունիզմի նոր հաղթանակների ապահովման, խաղաղության և միջազգային անվտանգության ամրապնդման գործում»։

«Мировая экономика и международные отношения», № 9, 1971 г.

# ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԵՐԿՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԸ

Գ. Ս. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ, Մ. Գ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Քննարկելով մեր երկրում կոմունիստական շինարարության հոյակապ պլանները, ՍՄԿԿ XXIV համագումարը լուրջ ուշադրություն նվիրեց խաղաղության և միջազգային անվտանգության ամրապնդման համար մղվող պայքարի հարցին, սոցիալիստական պետության պաշտպանական հզորության ուժեղացմանը։ Փաստերը վկայում են, որ ժամանակակից իմպերիալիզմն ամեն կերպ ձգտում է կասեցնել պատմության ընթացքը, արգելակել առաջադիմական ուժերի զարգացումը։ Իմպերիալիզմը ձգտում է «տիրապետել ամենուրեք,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— միջամտել ուրիշ ժողովուրդների գործերին, անպատկառորեն խախտել նրանց օրինական իրավունքներն ու սուվերենությունը, ուժով, կաշառքի, տնտեսական ներթափանցման միջոցով փորձում է իր կամքը պարտադրել պետություններին և աշխարհի ամբողջ շըրջաններին»։

Այն պահից ի վեր, երբ պատմական ասպարեզ մտավ բուրժուազիան, պատերազմը դարձավ նրա մշտական ուղեկիցը։ Իմպերիալիզմը երկու համաշխարհային պատերազմների նախաձեռնողն ու ոգեշնչողն է։ ԱՄՆ-ի արդյունաբերության ավելի քան 40 տոկոսը կատարում է պենտագոնի ռազմական պատվերները։ Ռազմա-արդյունաբերական կոմպլեքսը նոր պատերազմի նախապատրաստման նպատակին է ենթարկել ազգային էկոնոմիկայի հիմնական ճյուղերը։ Օտարերկրյա մամուլի տվյալներով ԱՄՆ-ի ատոմային արդյունաբերությունը 100 տոկոսով ռազմական է, ավիացիոնը՝ 95, նավաշինականը՝ 60, ռադիոէլեկտրոնիկան՝ 50 տոկոսով։ Ռազմական արդյունաբերության ոլորտում զբաղված բանվորների ու ծառայողների թիվն անցնում է 7 միլիոն մարդուց։ Ահաբեկման, ճնշման և հորդորների միջոցով ԱՄՆ-ը ռազմական նպատակներին է ենթարկել ոչ միայն սեփական, այլև մյուս իմպերիալիստական պետությունների՝ Անգլիայի, ԳՖՀ-ի, Իտալիայի, Ճապոնիայի, Ֆրանսիայի և այլ երկրների էկոնոմիկան։ Ռազմականացումն ընդգրկել է նաև գիտության բնագավառը։ Առաջատար գիտական հաստատություններն աշխատում են զենքի նոր տեսակների մշակման ու կատարելագործման վրա։ Պաշտոնական տվյալների



համաձայն, ամերիկյան գիտական բոլոր աշխատողների ավելի քան 2/3-ը զբաղված է ռազմական բնույթի պրոբլեմների լուծմամբ։ Գիտական հետազոտությունների 70-ից մինչև 80 տոկոսը ֆինանսավորվում և աջակցություն է ստանում միայն այն դեպքում, եթե դրանք ունեն ուղղակի կամ անուղղակի ռազմական նշանակություն։ Դրությունը այդպես է նաև մյուս իմպերիալիստական երկրներում։ Անգլիայում, օրինակ, բոլոր գիտնականների, ինժեներների ու տեխնիկների 2/5-ը նույնպես զբաղված է զենքի և մարտական տեխնիկայի մշակմամբ։ Միայն մեկ ամսվա ընթացքում սպառազինության վրա ՆԱՏՕ-ի երկրների ծախսած գումարը բավական կլիներ Սահարայի անապատը ոռոգելու համար։

Առանձնապես մեծ են ԱՄՆ-ի ռազմական ծախսերը։ Ամերիկյան ռազմական մեքենայի հագեցման ու պահպանման վրա ծախսվում են վիթխարի միջոցներ։ Վերջին 15 տարվա ընթացքում ռազմական նպատակների համար ծախսվել է ավելի քան 1130 միլիարդ դոլար, որից 400 միլիարդը՝ 1966—1970 թվականներին։ Եվ չնայած դրան, նոր հրթիռների, ինքնաթիռների, նավերի, հակահրթիռային պաշտպանության միջոցների մշակման ու արտադրության համար կատարվող հատկացումները շարունակվում են աճել։ «Պաշտպանության համար կատարված ծախսերը,— ասել է Նիքսոնը,— իհարկե, պատկանում են հատուկ կատեգորիայի։ Դրանք երբեք չպետք է իջնեն նվազագույն մակարդակից»։ Նիքսոնի լեքսիկոնում այդ նվազագույն մակարդակը կազմում է տարեկան 80 միլիարդ դոլար կամ ԱՄՆ-ի ֆեդերալ բյուջեի մոտ 70 տոկոսը։

Այս բոլորի հետևանքով ԱՄՆ-ը կուտակել է մեծ քանակությամբ տարբեր տեսակի զենք և մարտական տեխնիկա։ Օտարերկրյա մամուլի տվյալներով ԱՄՆ-ը ներկայումս ունի «Մինիտմեն» և «Տիտան» տիպի 1054 միջմայրցամաքային բալիստիկ հրթիռ, «Պոլարիս» տիպի 656 միջին հեռահարության հրթիռ, 41 ատոմային սուզանավ, 500 ստրատեգիական ռմբակոծիչ և շատ այլ սպառազինություն ու մարտական տեխնիկա։ Բայց մարդկանց բնաջնջման միջոցներն այդ քանակն անգամ չի գոհացնում ամերիկյան իմպերիալիզմի ռազմատենչ շրջաններին։ Ինքը՝ պրեզիդենտ Նիքսոնը կտրականապես մերժել է ստրատեգիական սպառազինության արտադրության կրճատման գաղափարը։

Ռազմական գերատեսչության պլանի համաձայն, ԱՄՆ-ում տեղի է ունենում ցամաքային զորքերի, ռազմա-օդային, ռազմա-ծովային ուժերի և զորքի այլ տեսակների վերազինում։ Բնորոշ է, որ բանակը մեծ քանակությամբ ստանում է հարձակողական զենք։ Տարակույս չկա, որ այս բոլոր և մյուս ստրատեգիական հարձակողական միջոցները ծառայում են ժամանակակից մեծ պատերազմ վարելու համար։

Ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի հավատարիմ զինակիրներն են իմպերիալիստական պետությունների և առաջին հերթին ԱՄՆ-ի զինված ուժերը։ Ամերիկյան իմպերիալիզմը ծավալել է խաղաղ ժամանակի համար վիթխարի բանակ՝ 3,5 միլիոն մարդու կազմով։ Կատարելով մոնոպոլիստական կապիտալի կամքը, այդ բանակը հետպատերազմյան տարիներին բազմիցս մասնակցել է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման ճնշմանը, որպես իմպերիալիզմի հլու գործիք անողոք դաժանությամբ ոչնչացնում է մարդկանց և նրանց ստեղծած նյութական արժեքները։ Ավելի քան 1,5 միլիոն ամերիկյան զինվորներ ու սպաներ գտնվում են կապիտալիստական աշխարհի 36 երկրներում (2000 բազաներում), 50 մար-

տական նավերից բաղկացած ամերիկյան 6-րդ նավատորմը ակոսում է Միջերկրական ծովը և հանդիսանում է իմպերիալիզմի մահակը Մերձավոր Արևելքի ու Հյուսիսային Աֆրիկայի ժողովուրդների ազատագրական շարժման դեմ։ Իսկ 7-րդ նավատորմի նավերը Խաղաղ օվկիանոսում մոնոպոլիստական կապիտալի գործիքն են Հարավ-Արևելյան Ասիայի ազատասեր ժողովուրդներին ճնշելու համար։

Հետպատերազմյան տարիներին ԱՄՆ-ը ստեղծել է ռազմական բլոկների խիտ ցանց։ Վերջին քսանամյակում կազմակերպվեցին ՆԱՏՕ-ն, ՍԵԱՏՕ-ն, ՍԵՆՏՕ-ն (Կենտրոնական պայմանագրի կազմակերպություն Մերձավոր ու Միջին Արևելքում, 1955 թ. նոյեմբեր), ԱՆԶՅՈՒՍ-ը (ԱՄՆ-ի, Ավստրալիայի և Նոր Զելանդիայի պայմանագրերը, 1951 թ. սեպտեմբեր), ԱԶՊԱԿ-ը (Ասիական խաղաղ-օվկիանոսյան խորհուրդ Արևելյան Ասիայում), ԱՊԿ-ը (Ամերիկյան պետությունների կազմակերպություն) և այլն։

Այդ ռազմա-քաղաքական բլոկների ագրեսիվ նպատակների մասին վկայում է այն փաստը, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ՆԱՏՕ-ի անդամները զինված ուժերը բազմիցս օգտագործել են ժողովուրդների ազատագրական շարժումները ճնշելու, ինտերվենցիային մասնակցելու համար, փորձել են զենքի ուժով իրենց կամքը թելադրել մյուս երկրների ժողովուրդներին։

1950—1953 թվականներին ԱՄՆ-ի իմպերիալիստները անգլիացիների և ՆԱՏՕ-ի մյուս անդամների հետ միասին մասնակցեցին կորեական հերոս ժողովրդի դեմ ուղղված կեղտոտ պատերազմին։ 1956 թվականին ԱՄՆ-ի ակտիվ օժանդակությամբ տեղի ունեցավ Անգլիայի, Ֆրանսիայի և Իսրայելի ագրեսիան Եգիպտոսի դեմ։ 1958 թվականին ԱՄՆ-ը և Անգլիան հարձակվեցին Սիրիայի վրա, իսկ այնուհետև իրենց զորքերով ներխուժեցին Լիբանան և Հորդանան։ Ամբողջ աշխարհին հայտնի է ԱՄՆ-ի ինտերվենցիան Դոմինիկյան հանրապետության դեմ, Կուբայի և Լատինական Ամերիկայի մյուս պետությունների տերիտորիաները ներխուժելու նրանց փորձերը։

ՍՄԿԿ XXIV համագումարը որպես Ամերիկայի գլխավոր չարագործություն և խայտառակություն որակեց նրա շարունակվող ագրեսիան Վիետնամի, Կամբոջայի, Լաոսի ժողովուրդների դեմ, պատերազմի հրդեհը Հյուսիսային Վիետնամ և Հնդկաչինի մյուս երկրները փոխադրելու փորձը։ Եվ այդ ամենը՝ հակառակ Ժնևի 1954 և 1962 թվականների համաձայնագրերի։

Իշխանությունը պահպանողականների ձեռքն անցնելուց հետո ուժեղացել են անգլիական իմպերիալիզմի կայսերական նկրտումները, ակտիվացել է նրա «Սուեզից դեպի արևելք» ստրատեգիան, ամրապնդվել են նրա կապերը Հարավ-Աֆրիկյան Հանրապետության և Հարավային Ռոդեզիայի ռասիստների հետ։ Արևմտյան Գերմանիայում չեն հանդարտվում ռևանշիստական կրքերը, վտանգավոր ուժ է դարձել նեոնացիզմը (նեոֆաշիզմը)։ Ճապոնիայում արագանում են էկոնոմիկայի ռազմականացման տեմպերը, սանձարձակացել է ռեակցիոն զինվորականությունը՝ «գումբացուն»։ Չորրորդ «պաշտպանական ծրագրի» նախագիծը (1972—1976 թթ.) նախատեսում է ռազմական նպատակների համար հատկացնել 5800 միլիարդ իենա՝ ավելի, քան ծախսված է նախորդ 20 տարում։ Պորտուգալական գաղութարարները, ՆԱՏՕ-ի օգնությամբ բազմամյա պատերազմ են մղում Անգոլայի, Մոզամբիկի և Գվինեայի (Բիսաուի) ազատասեր ժողովուրդների դեմ։

Ամեն կերպ սքողելով իմպերիալիզմի ագրեսիվ բնույթը, բուրժուազիայի



գաղափարախոսները ջանում են համոզել ժողովրդին, թե, իբր, ագրեսիվ է կոմունիզմը, թե անհրաժեշտ է պայքարել Սովետական Միության և միջազգային կոմունիստական շարժման սպառնալիքի դեմ, թե անհնարին է կողք-կողքի ապրել կոմունիստական երկրների հետ։

Իմպերիալիզմի ջատագովները մոլորեցնում են աշխատավորներին, ատելություն դաստիարակում նրանց մեջ դեպի մյուս ժողովուրդները։ Ողբերգական համբավ է ձեռք բերել վիետնամական Սոնգմի գյուղը, որի խաղաղ, անզեն բնակիչները ոչնչացվեցին ամերիկյան պատժիչների կողմից։

«Ինտերնեյշնլ հերալդ տրիբյուն» թերթը գրում է. «...միմիայն Հարավային Վիետնամում անցյալ տարի միջին հաշվով զոհվել է շաբաթական 500 խաղաղ բնակիչ։ 1970 թվականի վերջին երեք ամսում Հարավային Վիետնամի 150 հազար բնակիչներ դարձել են փախստականներ... 1970 թվականի օգոստոսին Կամբոջայում մեկ միլիոն բնակիչ, այսինքն՝ յուրաքանչյուր վեցերորդ մարդը, ստիպված են եղել փախչել հարազատ վայրերից։ Լաոսում, որի բնակչությունը կազմում է երեք միլիոն մարդ, պաշտոնապես ցուցակագրված են 292 հազար փախստականներ։ Պատճառը նույնն է՝ ամերիկյան ռմբակոծումները»։

Այս բոլորը կրկին հաստատում է, որ քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, գոյություն ունի նաև նոր համաշխարհային պատերազմի վտանգը։

Ընդգծելով իմպերիալիզմի ագրեսիվ դավերի դեմ մղվող պայքարի ողջ կարևորությունը, ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ ներկայումս կան այնպիսի ռեալ ուժեր, որոնք կարող են սանձահարել միջազգային իմպերիալիզմին, այն է՝ սոցիալիզմի հզոր լագերը, գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ավելի ու ավելի լայն ծավալվող ազգային-ազատագրական, բանվոր դասակարգի միջազգային հեղափոխական շարժումները։

Բայց այդ բոլորը չի նշանակում, որ ԱՄՆ-ի ռազմա-արդյունաբերական կոմպլեքսը իմպերիալիստական երկրների զինվորականության դաշնակցությամբ չի կարող իր համար բարենպաստ հանգամանքների դեպքում ջերմամիջուկային պատերազմ սկսել ՍՍՀՄ և մյուս սոցիալիստական երկրների դեմ։ Ելնելով դրանից, ՍՄԿԿ-ն բոլոր միջոցները ձեռք է առնում երկրի պաշտպանությունն ամրապնդելու, մեր ժողովրդի սոցիալիստական նվաճումները պաշտպանելու համար։ «Այն բոլորը, ինչ ստեղծել է ժողովուրդը, պետք է հուսալիորեն պաշտպանվի,— ասել է Լ. Ի. Բրեժնևը XXIV համագումարում։— Ամրապնդել սովետական պետությունը, նշանակում է ամրապնդել նրա զինված ուժերը, ամեն կերպ բարձրացնել մեր հայրենիքի պաշտպանունակությունը»։

Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը մարքսիզմ-լենինիզմի արմատական հարցերից է։ Կուսակցությունն իր ռազմական քաղաքականության մեջ ելնում է լենինյան այն ցուցումից, որ «ամեն մի հեղափոխություն միայն այն ժամանակ մի բան արժե, երբ նա գիտե պաշտպանվել» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 143—144), որ «տիրապետող դասակարգը, պրոլետարիատը, եթե միայն նա կամենում է տիրապետել և տիրապետելու է, այդ բանը պետք է ապացուցի նաև իր ռազմական կազմակերպությամբ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 174)։

Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ Լենինի մշակած դրույթները, ռազմական շինարարության արմատական հարցերի վերաբերյալ նրա սկզբունքային ցուցումները այժմ էլ ՍՄԿԿ ռազմական քաղաքա-

կանության տեսական հիմքն են։ «Քանի դեռ մենք ապրում ենք անհանգիստ աշխարհում,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— այդ խնդիրը մնում է ամենագլխավորներից մեկը»։

Մեր երկրի պաշտպանունակության ամրապնդման կարևոր աղբյուրը տնտեսական հզոր պոտենցիալն է, որի հետագա զարգացման վրա ՍՄԿԿ-ն հատուկ ուշադրություն է դարձնում։ Մեր երկրի տնտեսական հաջողությունները ոչ միայն ապահովում են ժողովրդի կյանքի զգալի բարելավումը, այլև պայմաններ են ստեղծում զինված ուժերի տեխնիկական հագեցվածության ավելի արագ աճի համար։

Սովետական գիտության ու տեխնիկայի հսկայական հաջողությունները պայմաններ են ստեղծել հատուկ ձուլվածքների ամենանուրբ մեքենաների ու սարքերի, էլեկտրոնային-հաշվիչ և հրթիռային տեխնիկայի, ավտոմատիկայի ու հեռուստամեխանիկայի արտադրությունը կազմակերպելու համար, իսկ այդ բոլորը նպաստում է այնպիսի գիտա-տեխնիկական բազայի ստեղծմանը, որն ամրապնդում է երկրի պաշտպանությունը։

Անգնահատելի նշանակություն ունեն սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունը, որոնք Լենինի կուսակցության ղեկավար դերի և աշխատավոր մասսաների ակտիվության հետ միասին կազմում են սովետների երկրի անպարտելիության հիմքը։

Մեր երկրի զարգացման ներքին պայմանների փոփոխման հետ միասին փոխվել են նաև արտաքին պայմանները։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացումը, իմպերիալիզմի գաղութային սիստեմի քայքայումը, ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման, խաղաղության համար մասսաների մղած պայքարի ուժեղացումը է՛լ ավելի են ամրապնդել խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերը և թուլացրել կապիտալիզմի լագերը։ Այս բոլորը և մյուս գործոնները ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծել նոր պատերազմի սպառնալիքի դեմ մղվող պայքարում։

Այդ գործոնների հետ միասին կուսակցությունը շարունակում է ամեն կերպ ամրապնդել երկրի զինված ուժերը, նրանց մարտական հզորությունն ու պատրաստությունը, որպեսզի նրանք կարողանան աչալուրջ կերպով պաշտպանել մեր ժողովրդի խաղաղ աշխատանքը, սովետական պետության անվտանգությունը, սոցիալիստական երկրների բանակների համագործակցությամբ ապահովեն սոցիալիզմի ամբողջ լագերի պաշտպանությունը, հենարան ծառայեն իրենց երկրի հեղափոխական ճանապարհով ընթացող ժողովուրդների պայքարի համար, լինեն ամբողջ աշխարհի խաղաղության ու անվտանգության հուսալի պատվարը։ Որպեսզի մեր զինված ուժերը հաջողությամբ կատարեն այդ պատմական խնդիրները, սովետական պետությունն անում է հնարավոր ամեն բան նրանց մարտական հզորությունը բարձրացնելու համար։ Կուսակցության ու ժողովրդի հոգատարության շնորհիվ մեր զինված ուժերն արդի էտապում ունեն քանակապես ու որակապես նոր, անհամեմատ ավելի հզոր մարտական տեխնիկա և սպառազինություն։

Ներկայումս սովետական բանակի գլխավոր հարվածային ուժը ստրատեգիական նշանակություն ունեցող հրթիռային զորքերն են։ Սովետական ստրատեգիական հրթիռները ունեն թռիչքի գործնականորեն անսահմանափակ բարձրություն և հեռավորություն, նշանակետին հարվածելու ճշգրտություն։



Սովետական բանակն ունի այնպիսի հրթիռներ, որոնք ընդունակ են փոխադրելու 50, 100 և ավելի մեգատոննա հզորություն ունեցող ջերմամիջուկային լիցքեր։ Այդ լիցքերի ուժի մասին դատելու համար բավական է ասել, որ 50 մեգատոննա հզորություն ունեցող ռումբի պատճառած բացարձակ ավերածության շառավիղը հավասար է 40 կիլոմետրի, իսկ ավերածության տարածությունը՝ 5000$^2$ կիլոմետրի, այդ նույն ռումբի պատճառած իրական (զգալի) ավերածության շառավիղն ու տարածությունը հավասար են համապատասխանաբար 80 կիլոմետրի և 20000$^2$ կիլոմետրի։ Իսկ 100 մեգատոննանոց ռումբի պայթյունը, բացի ավերիչ մյուս բոլոր գործոններից, ստեղծում է ճառագայթման հարյուրավոր հազար քառակուսի կիլոմետր տարածություն ընդգրկող վտանգավոր գոտի։

Մեծ փոփոխություններ են կրել նաև ցամաքային զորքերը։ Նրանք իրենց սպառազինության մեջ ունեն ոչ միայն զենքի սովորական տեսակներ, այլև տակտիկական և օպերատիվ-տակտիկական հրթիռներ, որոնք ընդունակ են հարվածելու թշնամուն նրա ամենախոր մարտական զորաշարվածքում։

Մեր ցամաքային զորքերը դարձել են չափազանց դյուրաշարժ և մանրային։ Այժմ նրանց շարժունությունը բնութագրվում է նաև աերոշարժունությամբ, այսինքն՝ օդով փոխադրվելու նրանց ունակությամբ։ Աճել է կապի, ինժեներական, քիմիական, հատուկ և այլ տեսակի զորքերի տեխնիկական հագեցվածությունը։

Հակաօդային պաշտպանության զորքերը նոր տեխնիկայով հագեցնելը հնարավորություն է տալիս հուսալիորեն պաշտպանելու երկրի օդային տարածությունները, մեկ-երկու հրթիռով հարվածելու ամեն մի նպատակակետի, իսկ նոր տիպի կործանիչ ինքնաթիռները կարող են ոչնչացնել թշնամու ցանկացած օդային նպատակակետ։

Մեծ փոփոխություններ են տեղի ունեցել ռազմա-օդային ուժերում, որոնք զինված պայքարում գրավում են առաջատար տեղերից մեկը։ Հրթիռա-միջուկային զենքի առկայությունը, ավիացիայի սկզբունքորեն նոր նյութական մասը, ինքնաթիռների գերձայնային արագությունները (մինչև 3000 կմ/ժամ), աճած ռումբային բեռնվածությունը, թռիչքի հեռավորությունը և նրանց անօդաչու սարքավորումը ռազմա-օդային ուժերին հնարավորություն են տալիս թշնամու ռազմական տարբեր օբյեկտների դեմ արդյունավետ պայքար մղելու ցամաքում, ծովում և օդում, տարվա բոլոր ժամանակներում և օրվա ամեն եղանակի պայմաններում։

Ռազմա-ծովային նավատորմի հարվածային ուժը սուզանավերն են, որոնք զինված են հրթիռներով և միջուկային լիցք ունեցող ինքնանշանառու տորպեդներով։ Նրանց էներգազինվածությունը նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ աճել է գրեթե 100 անգամ, ստորջրյա ընթացքի խորությունն ավելացել է 3—4 անգամ։ Սովետական ռազմա-ծովային նավատորմն ունակ է լուծել մեր հայրենիքի ծովային սահմանների պաշտպանության ամեն մի խնդիր։

Զորքերի կրակային հզորության և տեխնիկական հագեցվածության ուժեղացումը, զինված ուժերի բոլոր տեսակների համաչափ զարգացումը սովետական ռազմական շինարարության արդի էտապի բնորոշ և կարևոր գիծն են։ Դա հնարավորություն է տվել ոչ միայն մեր զինված ուժերը բարձրացնելու ժա-

ժամանակակից պահանջների մակարդակին, այլև նրանց դարձնել հզոր և անպարտելի։

Զարգացնելով և կատարելագործելով սպառազինությունն ու մարտական տեխնիկան, կոմունիստական կուսակցությունն անդուլ կերպով հոգ է տանում սովետական ռազմական գիտության մշակման համար, որը մեծ դեր է խաղում սոցիալիստական հայրենիքի պաշտպանության խնդիրները լուծելու գործում և հաշվի է առնում իրադրության բոլոր փոփոխություններն ու ժամանակի հրամայական պահանջները։

Չնայած գիտության ու տեխնիկայի և ռազմա-տեխնիկական առաջադիմության հսկայական նվաճումներին, պատերազմի վճռական ուժը առաջվա նման մնում է մարդը՝ առաջավոր տեխնիկան հայրենիքի պաշտպանության համար օգտագործելու իր ունակություններով։

Պատմական փորձը ցույց է տալիս, որ ռազմական տեխնիկայի զարգացման հետ մեկտեղ մարդու դերը պատերազմում, նրա բարոյա-մարտական հատկությունները ոչ թե նվազում, այլ ե՛լ ավելի են աճում։ Պատերազմի ընթացքն ու ելքը կախված են սովետական ռազմիկների բարոյական ոգուց, նրանց դասակարգային համոզվածությունից, պատերազմի նպատակներն ու խնդիրներն ըմբռնելուց, հանուն հաղթանակի իրենց կյանքը զոհաբերելու պատրաստակամությունից։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինն ընդգծել է, որ «ամեն տեսակ պատերազմում հաղթանակը վերջին հաշվով պայմանավորվում է այն մասսաների ոգու վիճակով, որոնք ռազմի դաշտում թափում են իրենց արյունը» (Երկեր, հ. 31, էջ 154)։

Արդի միջազգային իրադրության, ռազմա-տեխնիկական առաջընթացի և ռազմական գործում կատարված հեղափոխության պայմաններում կուսակցությունը ելնում է այն բանից, որ մարդն ու տեխնիկան իրենց հարաբերակցությամբ փոխադարձաբար կապված դիալեկտիկական միասնություն են։ Ռազմական գործում, արդի պատերազմի բնույթի և այն վարելու եղանակների մեջ տեղի ունեցած արմատական փոփոխությունները, պատերազմում բարոյա-քաղաքական և հոգեբանական գործոնների աճած դերը, բանակի և նավատորմի մարտունակությունն ու մարտական պատրաստությունը, որոնք ձեռք են բերել նոր բովանդակություն և ժամանակային շրջանակներ, կազմակերպվածությունը, կարգապահությունն ու ինքնակարգապահությունը, որոնք պահանջում են սկզբունքորեն նոր, գիտակից մոտեցում պաշտոնական պարտքին,— սրանք բոլորը ե՛լ ավելի են բարձրացրել գաղափարապես բարձր, տեխնիկապես գրագետ և կուսակցության ու ժողովրդի գործին անսահմանորեն նվիրված՝ հայրենիքի պաշտպանի դերը։

Այժմ բանակի ու նավատորմի անձնակազմի 40 տոկոսն ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն։ Դա գրեթե չորս անգամ ավելի է, քան 1939 թվականին։ Նորակոչիկների 70 տոկոսը տիրապետում է այս կամ այն տեխնիկական մասնագիտությանը։ Սպաների ավելի քան 30 տոկոսն ունի ռազմական բարձրագույն կամ մասնագիտական կրթություն։ Հրթիռային զորքերի սպաների ավելի քան 70 տոկոսը ինժեներներ և տեխնիկներ են։

Բանակի և նավատորմի անձնակազմի 85 տոկոսը կոմունիստներ ու կոմերիտականներ են։ Կուսակցության մշտական հոգատարության և նրա դաստիարակչական միջոցառումների շնորհիվ մեր երիտասարդությունը ժառանգել է ավագ սերնդի այն հիանալի հեղափոխական ավանդույթները, որոնք



այժմ էլ այնպես անհրաժեշտ են սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու համար։

Ռազմական շինարարության հիմքերի հիմքը զինված ուժերի ղեկավարումն է կուսակցության կողմից, կուսակցական կազմակերպությունների դերի և ազդեցության ուժեղացումը՝ բանակում ու նավատորմում։

ՍՄԿԿ ղեկավար դերի աճը թելադրվում է այն բանով, որ անհրաժեշտ է դասակարգային, կուսակցական վերլուծության ենթարկել միջազգային իրադրությունը, երկրի պաշտպանունակությունն ապահովել ժամանակակից տեխնիկական ու նյութական բոլոր միջոցներով, ընդլայնել սովետական զինված ուժերի միջազգային ֆունկցիաները սոցիալիստական երկրներին պաշտպանելու գործում, կոմունիստական ոգով դաստիարակել սովետական ռազմիկներին։

Կուսակցության ձեռնարկած միջոցառումները հնարավորություն են տվել հասնելու սոցիալիստական պետության ռազմական կազմակերպության այնպիսի մակարդակի, որն ապահովում է մեր հայրենիքի, սոցիալիզմի համաշխարհային լագերի անվտանգությունը։ «Սովետական մարդիկ կարող են վստահ լինել,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— որ ցերեկվա ու գիշերվա ուզածդ պահին մեր փառապանծ զինված ուժերը պատրաստ են ետ մղելու թշնամու հարձակումը, որտեղից էլ այն բխելիս լինի։ Ամեն մի հնարավոր ագրեսոր լավ գիտի, որ մեր երկրի վրա հրթիռա-միջուկային հարձակման փորձ կատարելու դեպքում ինքը ոչնչացնող պատասխան հարված կստանա»։

Մեր բազմազգ հայրենիքի պաշտպանական հզորության ամրապնդման գործում իրենց արժանի ավանդն են ներդնում նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ղեկավարությամբ հանրապետությունում մեծ աշխատանք է կատարվում երիտասարդությանը ռազմա-հայրենասիրական ոգով դաստիարակելու, հայ ժողովրդի հերոսական մարտական ավանդույթները պրոպագանդելու ուղղությամբ, ժողովուրդ, որը սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում հայրենիքի պաշտպանների շարքերն է ուղարկել իր լավագույն զավակներին։ Հայ ռազմիկները միշտ էլ սոցիալիստական հայրենիքին անձնվիրաբար ծառայելու օրինակ են եղել թե՛ խաղաղ ժամանակ, թե՛ պատերազմի ծանր տարիներին, իսկ հայ սպաները աչքի են ընկել իրենց խոր ու բազմակողմանի գիտելիքներով, իրենց ենթականերին գործիմացությամբ սովորեցնելու և դաստիարակելու, նրանց բարոյապես ու ֆիզիկապես կոփելու կարողությամբ։ Այսօրվա սպան սոսկ նեղ ռազմական մասնագետ չէ, այլ մեր կուսակցության ու սովետական պետության խորապես կրթված, բազմակողմանիորեն պատրաստված և քաղաքականապես զարգացած մարտիկ է։ Հանրապետության կուսակցական, կոմերիտական և հասարակական կազմակերպությունների խնդիրն է՝ աշխատավորության ռազմա-հայրենասիրական դաստիարակության հետ մեկտեղ, ընտրել և ռազմական ուսումնական հաստատություններն ուղարկել մեր երիտասարդության լավագույն, առաջավոր մասին, որը կբազմապատկի հայ ռազմիկների պանծալի գործերը սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու ասպարեզում։





Ս. Ա. ՆԱԼՉԱՋՅԱՆ

Հոգեբանական գիտությունների թեկնածու

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՀՈԳԵԲԱՆՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Սոցիալիստական հասարակության զարգացման արդի փուլում անհամեմատ մեծանում է հասարակական գիտությունների դերը։ Գիտա-տեխնիկական առաջընթացի պայմաններում առավել ակտուալ են դառնում մարդու՝ որպես անհատի և հասարակության անդամի գործունեության հետ կապված պրոբլեմները։*

*ՍՄԿԿ XXIV համագումարը, բնական գիտությունների հետ մեկտեղ հատկապես նշեց հասարակական գիտությունների ողջ համակարգի հետագա արագ զարգացման անհրաժեշտությունը։*

*Բազմակողմանի և ներդաշնակ զարգացած անձնավորության ձևավորումը ենթադրում է մի շարք գործոնների առկայություն, որոնք կոչված են ներազդելու նրա անհատական առաջադիմության, բնավորության, սոցիալական դիրքորոշման և գիտակցական գործունեության վրա։ Մեր օրերում մարդու էության գիտական պարզաբանումը դարձել է կյանքի հրամայական պահանջներից մեկը։ Այդ դժվարին ու շնորհակալ գործում պատշաճ տեղ է գրավում սոցիալական հոգեբանությունը։*

*Մարքսիստական սոցիալական հոգեբանության զարգացման համար սկզբունքային նշանակություն ունեն Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները, որոնք մեթոդոլոգիական մեկնակետ են հասարակության ու անհատի հոգեկան աշխարհի ուսումնասիրության բնագավառում։ Մարքսն իր աշխատություններում բազմիցս նշել է մարդու հասարակական էությունը։ Մարդկային անձնավորությունը, ինքնագիտակցությունը, ըստ նրա, վերացական չէ, այն արդյունք է հասարակական կյանքի, մասնավորապես հասարակության մեջ մարդկանց շփման։ Իր էությամբ մարդը հասարակական բոլոր հարաբերությունների կիզակետն է. ընդ որում, Մարքսը ամենայն հավանականությամբ նկատի ուներ ո՛չ միայն տվյալ անհատի օնտոգենետիկական զարգացման ընթացքում մշակութային, միջանձնական և միջխմբային փոխհարաբերությունները, այլև բոլոր այն հարաբերությունները, որոնցում ձևավորվել է մարդկությունը ֆիլոգենետիկական զարգացման ընթացքում։*



*Մարքսը մարդուն դիտում է հասարակական հարաբերությունների օբյեկտիվ համակարգում, դրանով իսկ խուսափելով պսիխոլոգիզմից։ Այս տեսակետից Մարքսը առաջ է անցել Հեգելից, որը, չնայած պատմության զարգացման ըմբռնման գործում տիպիկ ռացիոնալիստ էր, սակայն, չկարողացավ խուսափել պատմական պրոցեսի պսիխոլոգիզացիայից։*

*Մարքսը և Էնգելսը, քաջ գիտենալով այդ ամենը, ավելի խոր էին ըմբռնում խնդրի էությունը, բացահայտելով, որ մարդկանց պահանջմունքները, հետաքրքրությունները, բնավորությունը, ունակությունները և մյուս հոգեկան առանձնահատկությունները, որոնք զգալի դեր են խաղում պատմական իրադարձություններում, միայն մասամբ են կենսաբանորեն դետերմինավորված և հիմնականում հասարակական հարաբերությունների արդյունք են։ «Կեցությունն է որոշում գիտակցությունը» հանրահայտ դրույթն ունի խոր սոցիալ-հոգեբանական իմաստ։ Ականավոր մարքսիստների գործերում սոցիալ-հոգեբանական տեսակետից չափազանց արժեքավոր են այն մտքերը, որոնք վերաբերում են զանգվածային հասարակական շարժումներին և նրանցում հանդես եկող հոգեբանական երևույթներին։*

*Գիտական սոցիալական հոգեբանության համար էական նշանակություն ունեն հեղափոխական շարժումների, ժողովրդական զանգվածների տրամադրությունների, դասակարգային ինքնագիտակցության, ղեկավարների և զանգվածների փոխհարաբերությունների և բազմաթիվ այլ հարցերի վերաբերյալ Վ. Ի. Լենինի բնութագրումները։ Վ. Ի. Լենինը մշտապես հետաքրքրրվել է հոգեբանության հարցերով։* Ովքեր են «ժողովրդի բարեկամները» և ինչպես են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ *աշխատության մեջ նա բարձր է գնահատել Ի. Սեչենովի հետազոտությունները, հակադրելով դրանք «մետաֆիզիկոս հոգեբանների» հայացքներին։ Լենինն առավելապես գործնական հոգեբան էր, գիտակ ժողովրդական զանգվածներում կատարվող հոգեբանական տեղաշարժերին։ Նա մերկացնում էր նրանց, որոնց կարծիքով, իբր, Ռուսաստանում հնարավոր չէ ստեղծել դեմոկրատական հանրապետություն, քանի որ միապետության գաղափարը չափազանց խոր է ներծծված ռուս ժողովրդի գիտակցության մեջ։*

*Լենինը ստույգ պատկերացում ուներ սոցիալական տարբեր դասակարգերի, խմբերի և շերտավորումների հոգեբանության յուրահատկությունների վերաբերյալ։ Նա գտնում էր, որ հասարակական կեցությունն առաջին հերթին մնում է տարերային, չգիտակցված կամ կիսով չափ գիտակցված, չսիստեմավորված հայացքներ, գնահատումներ և հարաբերություններ. հեղափոխական կուսակցության խնդիրն է՝ այդ ամենի գիտական մշակման ու համակարգման միջոցով օգնել բանվոր դասակարգին պայքարի միջոցների ընտրության ու գիտակցման մեջ։ Այսպիսով, սոցիալ-հոգեբանական երևույթներն գտնվում են կեցության և գաղափարախոսության միջև, ուր վերջինս ձևավորում են այս կամ այն դասակարգի առավել գիտակից ներկայացուցիչները։*

* * *

*Չնայած գիտական կոմունիզմի հիմնադիրները լուրջ ուշադրություն են նվիրել սոցիալական հոգեբանությանը, այն մեզանում երկար տարիներ պատշաճ չափով չի հետազոտվել։ Միայն վերջերս վերստին աճեց հետաքրքրությունը սոցիալական հոգեբանության նկատմամբ և ներկայումս այդ առումով*

բազմաթիվ արժեքավոր հետազոտություններ են կատարվում։ Հարկ է նկատել, որ այս բնագավառում արտասահմանյան պրակտիկան զգալի առաջադիմել է։ Տեղին է հիշել Լենինի դիտողությունը բուրժուական գիտնականների կուտակած փորձի քննադատական յուրացման վերաբերյալ։

Անցյալ դարի կեսերից սոցիալական հոգեբանության պրոբլեմները դըրվեցին գիտական շրջանառության մեջ։ Հասարակական երևույթները խորապես հասկանալու համար անհրաժեշտ եղավ օգտագործել անհատական փորձարարական հոգեբանության տվյալները կամ ինքնուրույն հետազոտել դեռևս գիտականորեն գրեթե չուսումնասիրված և սոցիալական կյանքում կարևոր նշանակություն ունեցող հոգեբանական երևույթները (գիտակցությունը, ինքնագիտակցությունը, հասարակական կարծիքը, ազգային ավանդույթները և այլն)։ Մյուս կողմից՝ հոգեբանները ձգտում էին անհատի վարքը գիտականորեն մեկնաբանելու համար օգտվել լեզվի, պատմության, սոցիալական շարժումների և փիլիսոփայության տվյալներից։ Միայն պսիխոֆիզիոլոգիական փաստերն ի վիճակի չէին բացատրելու մարդու վարքի նույնիսկ ամենապարզ ձևերը։ Մինչդեռ զանգվածային հասարակական (առանձնապես սոցիալական) շարժումները Եվրոպայի զարգացած երկրներում տիրապետող դասակարգերից պահանջում էին դրանց ներքին մեխանիզմների իմացություն, որը, ըստ նրանց, թույլ կտար թուլացնելու, չեզոքացնելու կամ ցանկալի ուղղություն հաղորդելու հեղափոխական այդ հուժկու հոսանքներին։ Ծնվող սոցիալական հոգեբանությունը, այսպիսով, սկզբից ևեթ ուներ դասակարգային շահագրգռվածություն։ Այստեղ, էական են նաև տվյալ գիտության զարգացման ներքին օրենքները։ Արդեն դարասկզբին սոցիալական հոգեբանությունը ձևավորվեց որպես մեկ ընդհանուր գիտություն իր առարկայով, մեթոդներով և կիրառական բնագավառներով։ Այդ միավորմանը մեծ չափով նպաստեց էքսպերիմենտալ մեթոդի կիրառումն անձի և հասարակության փոխհարաբերությունների ուսումնասիրման գործում։

Ներկայումս արտասահմանյան սոցիալական հոգեբանության հիմնական ուղղություններն են՝ բիհեվիորիզմը և նեոբիհեվիորիզմը կամ օպերացիոնալիզմը, ֆրոյդիզմը և առանձնապես, նեոֆրոյդիզմը, դաշտի տեսությունը և խմբային դինամիկան, սոցիոմետրիան, ինտերակցիոնիզմը և մի շարք այլ, առավելապես էկլեկտիկական, ուղղություններ։ Մեթոդոլոգիական առումով այդ ուղղություններն անհարիր են դիալեկտիկական մատերիալիզմի սկզբունքներին։ Սակայն ինչ վերաբերում է կոնկրետ գիտական խնդիրներին, ապա վերոհիշյալ բոլոր ուղղությունները հասել են դրական զգալի արդյունքների, որոնց հետազոտությունը, մարքսիստական մեկնաբանությունը և յուրացումը խիստ անհրաժեշտ է։

Սոցիալական հոգեբանության օբյեկտը նույնպես հասարակությունն է։ Եթե սոցիոլոգիան ուսումնասիրում է հասարակության կառուցվածքը, նրա հիմնական հաստատությունների առաջացման, զարգացման, անցման պրոցեսները, ապա սոցիալական հոգեբանության առարկան հասարակական տարբեր մասշտաբի խմբերում դրսևորվող հոգեբանական երևույթներն են։ Սովետական հայտնի հոգեբան Ա. Վ. Պետրովսկին, օրինակ, սահմանում է հետևյալ հիմնական պրոբլեմները, որոնց մշակմամբ և լուծմամբ զբաղվում է սոցիալական հոգեբանությունը. փակ խմբերում՝ մարդկանց հոգեբանական համատեղելիության հարցը, փոքր խմբերում՝ միջանձնական հարաբերությունները,



խմբային մթնոլորտի, խմբերում ղեկավարների (պաշտոնական և տարբերային լիդերների) տեղն ու դերը։ Խմբերի տիպերի (ասոցիացիաներ, կորպորացիաներ, կոլեկտիվներ) վերաբերյալ սոցիալական առումով չափազանց կարևոր պրոբլեմը, ձևական և ոչ-ձևական խմբերի փոխհարաբերությունները (ընդորում, ոչ ձևական խմբեր կարող են առաջանալ նաև ձևական, այսինքն՝ պաշտոնապես ստեղծված խմբերի կազմում և այդպիսի պաշտոնական խմբի ներսում փոխհարաբերությունները կարող են խիստ բարդանալ), փոքր խմբերի քանակական սահմանները, խմբերի համախմբվածության աստիճաններն ու պատճառները, ինչպես նաև այդ համախմբվածությունն ամրապնդելու և պահպանելու ուղիները, խմբերում մարդու կողմից մարդու ընկալման, ըմբռնման և նրա որպես անձնավորության վերաբերյալ հասկացություն ստեղծելու պրոցեսը խմբի, ինչպես նաև նրա առանձին անդամների ունեցած սոցիալական արժեքավորումների և դիրքորոշումների ստեղծման և միտման ձևավորման հարցը և այլն (տե՛ս Проблемы социальной психологии. Материалы Всесоюзного совещания, 2—4 декабря, 1969 г., М., 1971, стр. 7)։

Այս պրոբլեմների սոսկ թվարկումը, որոնք, ի դեպ, սոցիալական հոգեբանության ուսումնասիրման խնդիրների միայն մի մասն են, ցույց է տալիս, թե այդ գիտությունն այժմ արդեն (երբ շատ մասնագետների կարծիքով դեռ իր զարգացման մանկական շրջանում է), որքան ճյուղավորված է ու բարդ։ Բարդությունը պայմանավորված է նրանով, որ սոցիալական փոքր խմբերի ուսումնասիրման համար արդեն ստեղծված են համապատասխան հոգեբանական քիչ թե շատ զորեղ էքսպերիմենտալ միջոցներ (օրինակ՝ սոցիոմետրիկան մեթոդը, որը կիրառվել է վերջերս հրատարակված սովետական Ընդհանուր հոգեբանություն դասագրքում)։

Ժողովուրդների, մասնավորապես հասարակական շարժումների պատմության, անտրոպոլոգիական, ազգագրական, հնագիտական և մշակույթի մնացած բնագավառների տվյալների մանրակրկիտ ուսումնասիրությունը և հոգեբանական մեկնաբանությունն այսօր ևս հետազոտման հիմնական բնագավառներն են։ Մարքսը մի առիթով մարդկության թողած մշակութային արժեքներն անվանել է մարդու առջև զգայականորեն տարածված կոնկրետ հոգեբանություն։ Այդ արժեքները որոշակի դարաշրջաններում, հասարակարգերում, որոշակի աշխարհայացք, ունակություններ, հմտություններ ունեցող և հասարակական որոշակի խմբերի անդամ հանդիսացող անհատների (մեծ կամ փոքր խմբերի) աշխատանքային գործունեության արդյունքներն են։ Հետևաբար, ուսումնասիրելով դրանք, կարելի է մի ամբողջ շարք արժեքավոր եզրահանգումներ կատարել այն բոլոր սոցիալական և հոգեբանական պայմանների մասին, որոնցում ծնվել են մշակութային այդ արժեքները։ Այստեղ սոցիալական հոգեբանությունը սերտորեն առնչվում է այնպիսի ավանդական գիտությունների հետ, ինչպիսիք են՝ պատմությունը, հնէաբանությունը, ազգագրությունը և այլն, որոնք, նպաստելով հոգեբանության զարգացմանը, միաժամանակ իրենք ևս հարստացնում և ավելի բովանդակալից են դարցնում այն։

Ավելին, նշված միջառարկայական սերտ կապերը աստիճանաբար ծնում են հոգեբանության նոր և կարևոր բնագավառներ, որոնցից կարելի է նշել պատմական հոգեբանությունը (որը չի կարելի շփոթել հոգեբանության պատմության հետ) և էթնիկական (ազգային) հոգեբանությունը։ Վերջինիս զարգացումը թույլ կտա գիտական հիմքերի վրա դնելու այնպիսի մինչև այժմ

բավական անորոշ երևույթների ուսումնասիրությունը, ինչպիսիք են՝ «ազգային ոգին», ազգային ավանդույթները, ազգային մշակույթի ինքնատիպության աղբյուրների և ձևերի ակտուալ պրոբլեմը և այլն։ Հասկանալի է, թե մասնավորապես վերջին պրոբլեմները որքան հրատապ և կենսականորեն կարևոր են, եթե նկատի ունենանք, որ մեր ապրած դարաշրջանում ազգերի միջև փոխըմբռնման հաստատումը ունի տնտեսական, մշակութային և քաղաքական հրակայական նշանակություն։ Էթնիկական հոգեբանության ճիշտ ըմբռնումը թույլ կտա պատմության, փիլիսոփայության, բարոյականության և այլ պրոբլեմների քննարկման ժամանակ խուսափելու արատավոր էթնոցենտրիզմից, որը շովինիզմի հոգեբանական հիմքերից է։

Սոցիալական հոգեբանության «ամենահոգեբանական» և տակավին չլուծված պրոբլեմներից է մարդու կողմից մարդու ընկալման առեղծվածը։ Վերջինս մի այնպիսի սոցիալ-հոգեբանական երևույթ է, որը մեր առօրյա կյանքի ամենամոտ, ամենքին հուզող և ամենքին վերաբերող հարցն է։ Ինչպե՞ս է մարդը ընկալում ուրիշին, ի՞նչ նշաններից ելնելով է եզրակացությունների հանգում նրանում կատարվող հոգեկան պրոցեսների (զգացմունքների, մտքերի, մտադրությունների և ցանկությունների) մասին։ Ինչպե՞ս է ձեռք բերվում փոխըմբռնումը և ե՞րբ է այն թուլանում կամ անհնար դառնում։ Ի՞նչ է նշանակում հասկանալ մարդուն, մտնել նրա վիճակի մեջ, ապրել նրա մտքերով ու զգացմունքներով։ Սակայն վերջին տարիների հետազոտություններում դեռևս չեն բացահայտված մարդկային փոխհարաբերություններում հաճախակի հանդիպող այնպիսի երևույթների հոգեբանական մեխանիզմները, ինչպիսիք են՝ համակրանքը, հակակրանքը կամ միջանկյալ, ամբիվալենտային վերաբերմունքի ձևերը, որոնցում յուրօրինակ զուգակցվում են միմյանց նկատմամբ միաժամանակ տարածվող ինչպես դրական, այնպես և բացասական բանական և հուզական վերաբերմունքները։ Ողջ սոցիալական հոգեբանության համար վերջին երևույթների իմացությունն ունի սկզբունքային նշանակություն, քանի որ մեծ են հնարավորությունները բացահայտելու ցանկացած տիպի կոլեկտիվների ստեղծման և մարդկային փոխհարաբերությունները կարգավորելու ուղիները։

Հոգեվիճակների ուսումնասիրության պրոցեսում ընդունված է քննվող երևույթների կոմպլեքսը նշանակել էմպաթիա[1] տերմինով, իսկ մասնավոր դեպքերի համար օգտագործել այլ, ածանցյալ հասկացություններ։ Այս դեպքում էմպաթիան կմտնի համամասնակցության տերմինով նշանակվող երևույթների խմբի մեջ որպես մասնավոր, բայց չափազանց կարևոր դեպք և հնարավոր կլինի ստեղծել էմպաթիայի ընդհանուր տեսություն։

Էմպաթիան որպես հոգեվիճակ և միաժամանակ արժեքավորման, գնահատման ուղղվածություն այլ անձնավորությունների նկատմամբ, կազմված է բանական և հուզական բաղադրիչների բարդ միահյուսումից։ Նրա հուզական կողմը կարող է աչքի ընկնել տևականությամբ կամ կարճատևությամբ, խորությամբ կամ մակերեսայնությամբ, ուժով կամ թուլությամբ։ Էմպաթիայի մամբ միաժամանակ տածվող ինչպես դրական, այնպես և բացասական հակակրանքի միջև ընկած են այդ երկու տարամետ զգացմունքների բազմաթիվ հյուսվածքներ, որոնք բարդ սպեկտր են կազմում։ Համակրանքի և հակակրանքի հարաբերական կշիռները այդ սպեկտրի զանազան մասերում իրենց հիմքում ունեն բանական, գիտակցված, մասամբ գիտակցված կամ ընդհանրապես ենթագիտակցորեն գործող բաղադրամասեր։ Այլ կերպ ասած, էմպաթիայի սպեկտրը միաժամանակ հուզական ու բանական է և նրա յուրաքանչյուր շերտ աչքի է ընկնում հասկացման տարբեր մակարդակներով։ Հետևաբար, էմպաթիայի բոլոր տարատեսակներն ոչ թե իռացիոնալ, չպատճառաբանված վերաբերմունքներ և հոգեվիճակներ են, այլ լրիվ իմանալի հոգեկան երևույթներ։ Դրանց գիտական մեկնաբանությունը հնարավոր է միայն մտածողության պրոցեսների հոգեբանական խոր վերլուծության շնորհիվ և, հետևաբար, պետք է ստեղծել հասկացման մակարդակների վերաբերյալ հոգեբանական ամբողջական տեսություն, իսկ վերջինի կազմում՝ մարդու կողմից մարդուն հասկանալու տեսություն։

[1] Էմպաթիա տերմինով սոցիալական հոգեբանության մեջ նշանակում են մարդկանց միմյանց նկատմամբ ունեցած համակրանքն ու հակակրանքը կամ դրանց սինթեզը։



Ժամանակակից հոգեբանության մեջ հասկացման երևույթը թույլ է ուսումնասիրված։ Գտնում են, որ հասկացումը երևույթների էական կողմերի բացահայտումը և գիտակցումն է։ Բայց դա հասկացման միայն մասնավոր տեսակն է, երբ մարդը գիտակցորեն նպատակ է դնում ուսումնասիրել որևէ երևույթ և նրա էության մասին իր ստացած տվյալները ձևակերպել խոսքի միջոցով։ Այս դեպքում հասկացման պրոցեսի հիմնական փուլերի ընթացքի մասին մարդն իրեն հաշիվ է տալիս, այսինքն՝ գիտակցում է։ Բայց ինչպե՞ս բացատրել այն մեծաթիվ դեպքերը, երբ առաջին իսկ հանդիպման ժամանակ մարդիկ, առանց նպատակադրման, անմիջապես համակրանք կամ հակակրանք են տածում միմյանց նկատմամբ։ Մեր կարծիքով էմպաթիայի այդ և մյուս բոլոր դրսևորումների բացատրման հաջողությունը կապահովվի, եթե տարբերենք հասկացման հետևյալ հիմնական տեսակները. ա) հասկացումը որպես մարդու արտաքին հատկանիշների անմիջական ընկալում մեր զգայարանների կողմից, բ) հասկացումը որպես իմաստավորված ընկալում (որը երբեմն անվանում են զգայական ինտուիցիա), գ) հասկացումը որպես առարկայի ստրուկտուրայի բացահայտում (երբ խոսքը մարդու մասին է, ապա նրա ինչպես կենսաբանական, այնպես և հոգեբանական ստրուկտուրայի իմաստով՝ խառնվածքի, բնավորության հիմնական գծերի, ընդունակությունների և այլն), դ) հասկացումը որպես երևույթի պատճառա-հետևանքային և ֆունկցիոնալ կապերի բացահայտում տրամաբանական դատողությունների և մտահանգումների շարքերի միջոցով (հենվելով, իհարկե, փորձնական տվյալների վրա), ե) հասկացման հատուկ և շատ կարևոր տեսակ է բանական ներհայեցության (ինտելեկտուալ ինտուիցիայի) միջոցով կատարվող ներթափանցումը և երևույթների նոր կողմերի հայտնաբերումը։ Մարդուն այլ կերպ հասկանալու դեպքերը կյանքում բազմաթիվ են և դեռևս հոգեբանական խոր բացատրություն չեն ստացել։ Հասկացման այս բոլոր տեսակները միաժամանակ ընթանում են և՛ գիտակցության, և՛ ենթագիտակցության մակարդակներում։

Էմպաթիայի տեսության ստեղծման համար, բացի հասկացման վերոհիշյալ մակարդակների խոր վերլուծությունից, անհրաժեշտ է նաև հաշվի առնել, թե սոցիալ-հոգեբանական ինչպիսի գործոններ և չափանիշներ են պայմանավորում հասկացման տվյալ մակարդակի դեպքում էմպաթիայի հուզական այս կամ այն երանգավորման առաջացումը։ Մեր կարծիքով այստեղ գործում են հոգեբանական մի շարք չափանիշներ, որոնց խոր վերլուծությունը սկզբունքային նշանակություն ունի մարդկային փոխհարաբերությունները ճիշտ հասկա-

նալու համար։ Դրանցից են՝ ա) էսթետիկական չափանիշը, որի էությունը
մարդկային փոխհարաբերություններում այն է, որ մարդը ուրիշին հաճախ
գնահատում է իր ճաշակի, գեղագիտական արդեն ձևավորված ըմբռնումների
տեսանկյունից, այսինքն՝ զգալի չափով սուբյեկտիվորեն։ Ինչ նրան գեղեցիկ
է թվում, այն դրական էմպաթիա է առաջացնում հանդեպ այդ առարկան կամ
անձը, բ) աէսթոլոգիական չափանիշը հաճելի զգացմունքներ և դրական վերա-
բերմունք է առաջացնում օգտակարի հանդեպ։ Հասկանալի է, որ կյանքում,
մարդկանց գործունեության կոնկրետ դեպքերում գեղեցիկը և օգտակարը միշտ
չէ, որ համընկնում են, թեև հոգեբանական տեսակետից այդ երևույթները,
դրանց սուբյեկտիվ գնահատումները և, ի վերջո, համապատասխան չափանիշ-
ները ունեն նաև ներքին խոր կապեր, գ) մարդու նկատմամբ մենք հաճախ
համակրանք ենք տածում, երբ նրանում բացահայտում ենք այնպիսի գծեր,
որոնք կան նաև մեզ մոտ և բարձր են գնահատվում մեր կողմից։ Այստեղ գոր-
ծում է ինդենտիֆիկացիայի չափանիշը, ընդ որում, խոսքը մեր և ընկալվող
անձնավորության միջև իրական ընդհանրությունների առկայության մասին է,
դ) բայց հաճախ այդպիսի ընդհանուր գծեր չկան, սակայն գործունեության
կարիքներից ելնելով և ցանկանալով շփման պրոցեսը պահել անհրաժեշտ
մակարդակի վրա, մենք, սովորաբար ենթագիտակցորեն, երբեմն գիտակցա-
կան խորհրդածությունների և ինքնաներշնչման միջոցով, մարդուն վերագրում
ենք մեզ համար ցանկալի գծեր։ Այս դեպքում արդեն մենք օգտվում ենք
պրոյեկտիվ ինդենտիֆիկացիայի չափանիշից, որը թեև երբեմն օգտակար է,
բայց ավելի հաճախ մարդկանց մասին խեղաթյուրված պատկերացումներ է
ստեղծում։
Վերոհիշյալ բոլոր երևույթները խոր վերլուծելով և կապելով սոցիալա-
կան խմբերի տեսության այնպիսի հասկացությունների հետ, ինչպիսիք են՝
ռեֆերենտային (էտալոնային) խումբը, խմբային սպասումները (էքսպեկտա-
ցիաները), անձի ինքնագնահատումը և այլն, կարելի է ստեղծել էմպաթիայի
կարևորագույն երևույթի սոցիալ-հոգեբանական տեսությունը։ Այդ տեսության
կարևորությունը ակնհայտ է դառնում թեկուզ միայն այն փաստից, որ սոցիա-
լական կուռ հանրությունների և ալտրուիզմի (այլասիրության) առաջացման
համար դրական էմպաթիան, անշուշտ, կարևոր հոգեբանական գործոն է եղել։
Հետևաբար էմպաթիայի տեսության ստեղծումը թույլ կտա զգալիորեն հարըս-
տացնելու և խորացնելու մարքսիստական սոցիոլոգիայի այն բաժինները,
որտեղ ուսումնասիրվում է մարդկային անձնավորության պրոբլեմը։ Մասնա-
վորապես արդարության և մարդասիրության էթիկական և միաժամանակ սո-
ցիալ-հոգեբանական երևույթները հնարավոր է հոգեբանորեն խորապես մեկ-
նաբանել միայն էմպաթիայի համակողմանիորեն մշակված տեսության առ-
կայության դեպքում։
Տվյալ հարցի քննությունը վկայում է, թե սոցիալական հոգեբանության
պրոբլեմները որքան կարևոր են պարզաբանելու առօրյա կյանքի և մարդկա-
յին գործունեության բնույթը։ Այժմ, երբ կուսակցության XXIV համագումարը
լուրջ և պատասխանատու խնդիրներ դրեց հասարակական գիտությունների
առջև, կենսական են դառնում սոցիալական հոգեբանության դերն ու նշանա-
կությունը կոմունիստական հասարակարգի արդի փուլի խնդիրների հաջող
լուծման գործում։

Գ. Պ. ՖԵՈՖԱՆՈՎ
Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանի դիրեկտոր
Վ. Գ. ԱԴԱՄՅԱՆՑ
Գործարանի գիտա-տեխնիկական ինֆորմացիայի բաժնի պետ

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍՏԱՆԴԱՐՏԻՆ ՀԱՄԸՆԹԱՑ

Սովետական Միության հաստոցաշինությունը վերջին 15 տարում վիթխարի հաջողություններ է ձեռք բերել և վճռական ազդեցություն գործել արտադրության մակարդակի բարձրացման վրա։ Մեր երկրի հաստոցաշինության առաջադիմության խթանիչը լայն մասշտաբներով ծավալված գիտա-տեխնիկական հեղափոխությունն է։ Հիացմունք են պատճառում սովետական հաստոցաշինության հզորությունը, դրա թողարկած ժամանակակից բարձրարտադրողական հաստոցների բազմազանությունն ու քանակը։ Մեր մեքենաշինությունն առանձնապես մեծ հաջողությունների է հասել գերճշգրիտ հաստոցների թողարկման մարզում, ինչպես և արտադրության ավտոմատացման, էլեկտրաէրոզային, էլեկտրաքիմիական, ուլտրաձայնային և ճառագայթային մշակման նորագույն մեթոդների արմատավորման բնագավառում։

Մետաղամշակման սարքավորման նոր կոնստրուկցիաների մշակման գլխավոր սկզբունքը աշխատանքի արտադրողականության աճն է՝ բարձրորակ արտադրանքի և տնտեսական արդյունավետության ապահովման հետ մեկտեղ։ Հենց դրանով է ղեկավարվում կոնստրուկտորական արդի միտքը։ Այդ նպատակի իրագործմանն զգալի չափով օգնում են քիմիայի, ֆիզիկայի, մաթեմատիկայի ասպարեզներում կատարվող գիտա-հետազոտական աշխատանքների արդյունքները։

Հաստոցաշինության զարգացման համար շատ կարևոր է բարձր արտադրողական, անընդմեջ գործող ավտոմատացված պրոցեսների ստեղծումը։ Հաստոցաշինարարների գլխավոր խնդիրներից մեկը արտադրանքի մշակման տեխնոլոգիայում կոմպլեքսայնության պրոբլեմների լուծման նպատակով տարբեր պրոցեսների առավել արդյունավետ համակցությունների ստեղծումն է։

Թվային-ծրագրային կառավարման (ԹԾԿ) հաստոցների կիրառումը ար-
տադրության ռացիոնալացման կարևոր, սակայն միակ միջոցը չէ։ Գիտնա-
կաններն ու կոնստրուկտորները համառորեն շարունակում են մշակել ավտո-
մատների, կիսավտոմատների, ավտոմատացված ունիվերսալ և բազմաֆունկ-
ցիոնալ հաստոցների նոր տիպեր։ Մեքենայացման բարձր աստիճանը, հա-
ղորդակի, կառավարման, վերահսկողության և չափման սիստեմները կգոր-
ծարկվեն էլեկտրոնային, հիդրավլիկ, պնևմատիկ ու մեխանիկական սկըզ-
բունքների հիման վրա՝ հիշյալ սիստեմներից առավել նպատակահարմար
համակցությունների ընտրությամբ։

Գործող՝ հաստոց-գործիք-դետալ սխեման այժմ իսկ (էլ չենք խոսում
մոտ ապագայի մասին) ի վիճակի չէ ապահովելու մշակման բարձր ճշգրտու-
թյունների աճը։ Ահա թե ինչու ստեղծվել և ստեղծվում են ադապտիկ կառա-
վարման սիստեմներ, որոնք բացառում են գործիքի մաշվածության, դինամիկ
գործոնների, ստատիկ դեֆորմացիաների, ջերմաստիճանի և այլ երևույթների
ազդեցությունը։ Դրանց համար հիմք են հանդիսանում ունիֆիկացված սիս-
տեմների, հաղորդակի, կառավարման, վերահսկողության ու չափման հան-
գույցների և տարրերի ստեղծումը, որոնք, կենտրոնացված կարգով, պատ-
րաստվում են մասնագիտացված գործարաններում։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում կանխանշվել է հաստոցա-
շինական և գործիքաշինական արդյունաբերության գիտա-տեխնիկական առա-
ջադիմության ընդարձակ ծրագիր։

Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանը համեմատաբար երի-
տասարդ ձեռնարկություն է։ Նրա տարիքը տասնից մի փոքր ավելի է, բայց,
չնայած դրան, այն այժմ առաջատար տեղերից մեկն է գրավում ենթաճյուղի
նման ձեռնարկությունների և հանրապետության հաստոցաշինական ձեռնար-
կությունների շարքում։ Կազմավորման տարիներին գործարանը կառուցվել և
միաժամանակ ընդլայնել է իր կարողությունները, ընդ որում, այդ տարիներին
կատարվել և գերակատարվել են նրա արտադրական և տեխնիկական առա-
ջադիմության պլանային առաջադրանքները։ Արմատավորվել են տեխնոլո-
գիական առաջավոր պրոցեսներ, մեքենայացվել են աշխատատար պրոցես-
ները, յուրացվել են մետաղահատ հաստոցների նոր տեսակներ, աշխատանքի
գիտական կազմակերպման շնորհիվ բարելավվել է արտադրամասերի, բա-
ժինների ու տեղամասերի կառուցվածքը։

Լավ են աշխատել մարդիկ։ Գործարանը նրանց ես ոչինչ պարտք չէ։ Վեր-
ջին երեք տարվա արդյունքների համար վճարվել է 150 հազար ռուբլու միա-
նվագ պարգև, իսկ նյութական խրախուսման համար ծախսվել է 700 հազար
ռուբլի։ Գործարանը հիշյալ ժամանակամիջոցում իր աշխատողների համար
կառուցել է 24 բնակարանանոց երկու բնակելի շենք։

Վերջին երեք տարիներին ՍՍՀՄ հաստոցաշինական ու գործիքաշինական
արդյունաբերական ձեռնարկությունների եռամսյակային սոցմրցություննե-
րում Կիրովականի հաստոցաշինարարներն անընդմեջ մրցանակներ են նվաճել։

Բարձր է գնահատվել գործարանի կոլեկտիվի աշխատանքը. հոբելյանա-
կան սոցիալիստական մրցությունում նրան շնորհվել է Լենինյան պատվոգիր,
իսկ արտադրության բարձր կուլտուրայի համար՝ ՍՍՀՄ Մինիստրների սովե-
տի և ՀԱՄԿԽ-ի դիպլոմ։ Հայաստանի կոմունիստական կուսակցության կենտ-
րոնական կոմիտեի, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի, Հայաստանի
մավորման և հանրապետությունում սովետական իշխանության հաստատման





50-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունում ձեռք բերած
հաջողությունների համար գործարանի կոլեկտիվը, հանրապետության մյուս
առաջավոր ձեռնարկությունների հետ մեկտեղ, պարգևատրվել է Հոբելյանա-
կան հուշամեդալով։

Զգալի աշխատանք է կատարվել հաստոցաշինական մասնագետների
պատրաստման ասպարեզում։ Մեծ թվով հաստոցավարներ են պատրաստվել
բրիգադային և անհատական ուսուցման մեթոդով։ Մեր գործարանը համա-
լրում են տեխնիկական ուսումնարաններն ավարտած մասնագետները։ Գոր-
ծարանի հասարակական կազմակերպությունների մշտական հոգատարության
առարկան է եղել մատաղ սերնդի դաստիարակությունը։ Ինժեներներն ու վար-
պետները ձգտել են կոլեկտիվի, պետության հանդեպ պատասխանատվության
զգացում դաստիարակել աշակերտների հոգում։

Բարձրակարգ մասնագետներ են դարձել բանվորներ Օ. Նազարյանը, Վ.
Լևոնյանը, Հ. Գրիգորյանը, Ն. Սադովսկին, Մ. Խաչատրյանը, Հ. Բաղդասար-
յանը, Մ. Ավետյանը, Ս. Գորոբեցը, Ս. Սարգսյանը, Ջ. Գինոսյանը, Լ. Խո-
յեցյանը և շատ ուրիշներ։ Փորձ են ձեռք բերել և բարեխիղճ աշխատում են
շատ ինժեներ-տեխնիկներ։ Արտադրության լավ հրամանատարներ են դարձել
այնպիսի տեխնիկներ ու ինժեներներ, ինչպիսիք են՝ Ն. Մխիթարյանը, Հ. Գրի-
գորյանը, Կ. Պապյանը, Է. Մանասյանը, Ն. Գրիգորյանը. նրանք գործարան են
եկել անմիջականորեն ինստիտուտից։

Անշեղորեն բարձրացել է աշխատողների որակավորումը. երիտասարդնե-
րի մեծամասնությունը սովորում է բուհերում և միջնակարգ ուսումնական
հաստատություններում։ Ամեն տարի գործարան են գալիս փականագործներ,
խառատներ, հավաքող բանվորներ, որոնք հետագայում դառնում են տեխնո-
լոգներ, կոնստրուկտորներ, վարպետներ և արտադրության հրամանատարներ։

Անցած հնգամյակի տարիներին ծնունդ են առել և լայնորեն տարածվել
սոցիալիստական մրցության այնպիսի նոր, հիանալի ձևեր, ինչպես՝ հանուն
մասնագիտությունների համատեղման և բազմահաստոցավարների շարժումը,
որոնք հանգեցրին աշխատանքի արտադրողականության բարձրացման, բան-
վորական ուժի զգալի խնայողության։

Պլանի կատարման համար ծավալված պայքարում Կիրովականի գեր-
ճշգրիտ հաստոցների գործարանի կուսկազմակերպությունը ձեռք է բերել
քաղաքական-մասսայական աշխատանքի և տնտեսության ղեկավարման մեծ
փորձ։ Մշտապես գտնվելով բանվորական կոլեկտիվի ավանգարդում, կոմու-
նիստները, կուսակցական կոմիտեի գլխավորությամբ, ավելի ու ավելի մեծ
թվով հաստոցաշինարարների են մասնակից դարձնում հասարակական կյան-
քին։ Գործարանի տասնյակ աշխատողներ կատարում են կուսակցական, կոմ-
երիտական և արհմիութենական տարբեր հանձնարարություններ։

Ընթացիկ հնգամյակում ավելի կզարգանա գործարանը, կընդլայնվեն
արտադրական տարածությունները, կավելանա սարքավորումների թիվը։ 1962
թվականից սկսած հաստոցաշինարարներն աշխարհի տասնյակ երկրներն են
ուղարկում իրենց արտադրանքը։ Աշխարհի գրեթե բոլոր մայր ցամաքներում
կարելի է հանդիպել Հայաստանի հաստոցաշինարարների մակնիշը կրող խա-
ռատահաստոցներ, ուլտրաձայնային շրջահաստոցներ, դինամիկ հավասարա-
կշռման և բազմաթիվ այլ հաստոցներ, որոնք պատրաստված են մեր գործա-
րանում։

Այս իրողությունն ինքնին մեզ պարտավորեցնում է հետայսու առավել մեծ ուշադրություն նվիրել թողարկվող արտադրանքի որակին, դրա փաթեթավորման և առհասարակ արտադրական էսթետիկային։

Գործարանը հաջողությամբ է մասնակցում հաստոցաշինական արտադրանքի գրեթե բոլոր միջազգային տոնավաճառներին ու ցուցահանդեսներին, որոնք կազմակերպում են ՍՍՀՄ արտաքին առևտրական և մեր հանրապետության կազմակերպությունները։ Ընդամին, առանձին հաջողություն են գտնում մեր էլեկտրակայծային հաստոցները, որոնց սխեմայում և կոնստրուկցիայում օգտագործված են մոտ տասը գյուտեր ու արտոնագրեր։ 1966 թվականին Պլովդիվում, Լայպցիգում և Մոսկվայի միջազգային ցուցահանդեսում «4531» մոդելի մեր հաստոցն արժանացավ Ոսկե մեդալի։ Էլեկտրակայծային հաստոցների սերիական թողարկումը յուրացնելու համար գործարանի կոլեկտիվը պարգևատրվել է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի պատվավոր դիպլոմով։ 1969, 1970 թթ. ընթացքում առանձին բանվորներ և ինժեներ-տեխնիկներ բազմիցս արժանացել են ՍՍՀՄ ԺՏՆՑ մեդալների և դրամական պարգևների։

Վերջին տարիներս գործարանի աշխատողները յուրացրել են ծրագրային կառավարմամբ էլեկտրակայծային հաստոցների թողարկումը։ Իրենց ճշգրտությամբ, արտադրողականությամբ, գործիքների դիմացկունությամբ այդ հաստոցներն զգալիորեն գերազանցում են արտասահմանյանին, ավելի բարձր է դրանց ավտոմատացման մակարդակը։ Մեր հաստոցները մշտապես ցուցադրվում են ՍՍՀ Միության և հանրապետության ԺՏՆ ցուցահանդեսներում։

Արտադրանքի ավելացման կապակցությամբ գործարանը համալրվում է նոր տեխնիկայով, գործարկվում են լրացուցիչ կարողություններ։ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ շահագործման հանձնվեց 6.200 քմ տարածությամբ գլխավոր կորպուսը, որտեղ գտնվում են դետալների մեխանիկական մշակման և բարձր ճշգրտության հաստոցների հավաքման արտադրամասերը։

Կտրող գործիքներն ավելի դիմացկուն, որակյալ ու ճշգրիտ դարձնելու նպատակով կազմակերպվել է դրանց կենտրոնացված հեսանում. կենտրոնացված կարգով էլ դրանք հասցնում են աշխատավայրերը։ Մշակման հիմնական արտադրամասերում ևս կիսահումքն ու կիսաֆաբրիկատները կենտրոնացված կարգով են հասցնում հաստոցավորների աշխատավայրը։ Սույն միջոցառումները մի քանի անգամ կրճատել են մշակման գործողությունների նախապատրաստման ժամանակը։ Այդ նպատակով նախագծվել և պատրաստվել է հարմարավետ հատուկ տարա։

Հավաքման և մեխանիկական արտադրամասերում տեղակայվել են միագիծ տելեֆերային ուղիներ և շրջապտույտ չորսու-ամբարձիչներ, որոնց շնորհիվ մեքենայացվել է բեռնման-բեռնաթափման, ինչպես և կորպուսային ծանր դետալները հաստոցներին դնելու ձեռքի աշխատանքը։ Էմուլսիան և քսայուղերը կենտրոնացված կարգով մատուցվում են արտադրամասերին ու հաստոցավորների աշխատավայրերին։

Բեռնման-բեռնաթափման, փոխադրման և պահեստավորման մեքենայացման պրոցեսի կարևորագույն օղակն է գործարանի էլեկտրադարսիչ ունեցող մեքենայացված պահեստի կազմակերպումը, որի շնորհիվ հնարավոր դարձավ ազատել և այլ աշխատանքի ուղարկել բեռնող-բեռնաթափող 9 բանվորների։



Աշխատանքի գիտական կազմակերպման պլանների կատարման գործում կարևոր տեղ է գրավում առաջավոր տեխնոլոգիայի արմատավորումը։ 1970 թվականին և 1971 թվականի առաջին կիսամյակում արմատավորվել են տեխնոլոգիական տասնյակ առաջավոր մեթոդներ, օգտագործելով մետաղամշակման վերջին նվաճումները։ Մշակման խմբային մեթոդների են փոխադրվել 50 դետալ, լայնորեն կիրառվում են արհեստական ալմաստից և էլբորից պատրաստված գործիքները, ավելի ու ավելի մեծ թվով դետալներ են թողարկվում տաք ու սառը դրոշմման մեթոդով։

Ունիվերսալ-հավաքիչ հարմարանքի կիրառմամբ 3 անգամ կրճատվել է նոր արտադրատեսակների թողարկման տեխնիկական նախապատրաստման ժամանակը, զգալի չափով տնտեսվել է սարքավորման կոնստրուկտորների և գործիքաշեն փականագործների աշխատանքը։ Դետալների մեխանիկական մշակման համար նախագծվել և պատրաստվել են ավելի քան 30 բազմատեղ և բարձրարտադրողական հարմարանքներ։

Հավաքման որակը բարձրացնելու նպատակով պատրաստվել և հաջողությամբ շահագործվում են հաստոցների առավել կարևոր հանգույցները ծանրության տակ հղկելու ստենդներ։ Տեխնիկապես հիմնավորված հաշվարկային նորմաների թիվը հասել է գործող բոլոր նորմաների 40 տոկոսին։ Ատամնամշակման հաստոցների տեղամասում բանվորները ջանում են տիրապետել բազմահաստոց սպասարկմանը։ Եվ այժմ յուրաքանչյուր հաստոցավոր սպասարկում է ատամնամշակման 2—3 հաստոցների։ Նրանց օրինակին են հետևում նաև պարույրահղկիչ բանվորները։

Գլխավոր մեխանիկի և էներգետիկ ծառայության նորոգման բրիգադներում շատ բանվորներ տիրապետում են 2—3 մասնագիտության։ Գործարանում խառատների, հղկիչների, ֆրեզերողների, էլեկտրամոնտաժողների և այլ մասնագետների համար կազմակերպվում են առաջավոր փորձի դպրոցներ։ Դրա շնորհիվ բարձրանում է աշխատողների որակավորումը, և երբ նրանք հանձնում են գիտելիքների անհրաժեշտ մինիմումը, ստանում են ավելի բարձր կարգ։ Անցյալ տարի և այս տարվա սկզբին տարբեր մասնագիտությունների 150 բանվորներ բարձրացրել են իրենց որակավորումը։

Նոր արտադրամասերում տեղադրվել և յուրացվել են ավտոմատ և կիսավտոմատ հաստոցներ, այդ թվում՝ ծրագրային կառավարման հիդրոպատճենահան խառատահաստոցներ ու ֆրեզերահաստոցներ, գործարկվել են տեխնոլոգիական հոսքագծեր, որոնց շնորհիվ նվազել է մշակվող դետալների աշխատատարությունը։ Հիմնական մշակման արտադրամասերը, առանց նոր կարողությունների գործարկման, զգալի չափով ավելացրել են արտադրանքի թողարկումը՝ տեխնոլոգիական պրոցեսների ինտենսիվացման, սարքավորման արդիականացման ու վերակառուցման միջոցով։

Գործարանի տեխնիկական առաջադիմության մարզում զգալի ավանդ են ներդնում ռացիոնալիզատորները։ Նրանց առաջարկություններն արտադրության մեջ արմատավորելու շնորհիվ գործարանի խնայատուփն է մուծվել 190 հազար ռուբլի, տնտեսվել է ավելի քան 200 տոննա մետաղ։

Ձեռնարկության տեխնիկական առաջադիմության գործում առաջատար դեր են խաղում գործարանի տեխնիկական ծառայությունները։ Հաստոցաշինության հիմնական խնդիրներն են՝ ավելացնել ճշգրտությունը, բարձրացնել մեքենայացման մակարդակը, դյուրացնել բանվորների աշխատանքը։ Գլխա-

վոր կոնստրուկտորի բաժնի երիտասարդ կոլեկտիվն ի վիճակի է լուծելու այդ խնդիրները։

Գործարանի փորձարարական և մյուս արտադրամասերում կյանքի ուղեգիր են ստացել գիտության ու տեխնիկայի վերջին խոսքին համապատասխանող և արտադրության մեջ իրենց արդարացրած չափազանց բարդ հաստոցները, որոնք ստեղծվել են ճյուղային նախագծային կազմակերպությունների և գործարանի կոնստրուկտորների համատեղ ջանքերով։ Այդ բարդ հաստոցներից է՝ վառելիքային ապարատների դետալների խոր շաղափման «КП—10» մակնիշի կիսավտոմատը, որի շնորհիվ որոշ չափով լուծվում է վառելիքային ապարատների գործարանների համար վառելիքապոմպերի կորպուսների վառելիքատար թեք ու խոր անցքերի մշակման պրոբլեմային հարցերից մեկը։

Կիրովականցիները կարևոր ավանդ են մուծել ճշգրիտ և գերճշգրիտ հաստոցների թողարկման գործում։ 1970 թ. գործարանը պատրաստել է միասնական նոր գամայի խառատահաստոցների 6 մոդելների փորձանմուշները, իսկ այժմ նոր արտադրամասի կոլեկտիվը թողարկում է դրանց առաջին սերիաները։ Այնքան էլ հեշտ գործ չէ նոր հաստոցների յուրացումը։ Յուրօրինակ ու պարզ է այդ գամայի հանգույցների կոնստրուկտորական լուծումը։ Հաստոցներն օժտված են բարձր ճշգրտությամբ, կարծրությամբ ու դիմացկունությամբ, առավել չափով ունիֆիկացված են։ Հաստոցների կոնստրուկցիայում օգտագործված են մետաղամշակման տեխնիկայի վերջին նվաճումները։ Տվյալ գամայի յուրացմամբ զգալի չափով ընդլայնվել է մշակման 100-ից մինչև 200 մմ տրամագծի խառատահաստոցների կիրառման ասպարեզը։ Նոր գամայի հաստոցները հաջողությամբ կարող են մրցել արտասահմանյան լավագույն նմուշների հետ։

Գլխավոր կոնստրուկտորի բաժնում պատրաստվում են էլեկտրակայծային հաստոցների ունիֆիկացված նոր գամայի անցնելու տեխնիկական փաստաթղթերը։ Նոր գաման տեխնիկական մակարդակով զգալիորեն բարձր է հաստոցների նախկին մոդելներից։ Այդպիսի հաստոցների ներդրումը հնարավոր է դարձնում ժողովրդական տնտեսության շատ ճյուղերում մետաղամշակման տեխնոլոգիայի կատարելագործումը, թողարկվող հաստոցների հուսալիության ու դիմացկունության բարձրացումը։ Հաստոցների առանձին տարրերի ու հանգույցների արատները հայտաբերելու նպատակով կատարված տեխնիկական վերլուծության և հաստոցների աշխատանքի հետազոտության միջոցով գլխավոր կոնստրուկտորի ծառայության ապարատը մշակել է միջոցառումների կոմպլեքս՝ թողարկվող հաստոցների հետագա կատարելագործման նպատակով։

Արտադրությունից հանվում է արդի տեխնիկական մակարդակին չհամապատասխանող արտադրանքը։ Փոխարենը յուրացվում են այնպիսի հաստոցներ, որոնց տեխնիկական պարամետրերը ոչնչով չեն զիջում արտասահմանյան լավագույն նմուշներին։ Դրանք օժտված են բարձր հուսալիությամբ, դիմացկուն են, արտաքին տեսքով ու ձևով բավարարում են տեխնիկական էսթետիկայի ամենախիստ պահանջները։

Գլխավոր տեխնոլոգի բաժինը մշակել և արմատավորել է նոր արտադրատեսակների տեխնոլոգիական պրոցեսները, անընդհատ կատարելագործում է յուրացված արտադրատեսակների տեխնոլոգիան, ձգտելով առավել չափով մեքենայացնել ու ավտոմատացնել աշխատանքը, լավագույն ձևով օգտագործել



բարձրարտադրողական և ավտոմատ սարքավորումները, գործիքներն ու հարմարանքները։

Բաժնի աշխատողներն ուշի-ուշով ուսումնասիրում են ինչպես իրենց, նույնպես և մյուս ձեռնարկությունների նորարարների և առաջավորների փորձը, մշակում արտադրության տեխնոլոգիան՝ հաշվի առնելով հայրենական և արտասահմանյան տեխնիկայի առաջավոր փորձն ու լավագույն նվաճումները։ Համագործակցելով վարպետների և նորարար բանվորների հետ՝ տեխնոլոգներն ինտենսիվացնում են տեխնոլոգիական պրոցեսները, բանվորներին օգնելով յուրացնելու արտադրության առավել արդյունավետ մեթոդները։ Բաժնի գործիքաշինական-կոնստրուկտորական բյուրոն նախագծում է սարքավորում ու հարմարանքներ, չափիչ ու հատուկ գործիքներ, մեքենայացման ու ավտոմատացման միջոցներ։

Բաժնի տեխնոլոգներն ակտիվ մասնակցում են «Ուկրօրգստանկինպրոմ» ինստիտուտի և Հայաստանի մեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտի նախագծերով կառուցված նոր արտադրական գլխավոր կորպուսի սարքավորմանը, հատակագծմանն ու տեղադրմանը։ Նոր կորպուսում գործարկվում են հաստոցավորների աշխատատեղերը, կենտրոնացված կարգով էմուլսիա և քսայուղեր մատուցող խողովակաշարերի սիստեմը։ Դետալների ռիթմիկ թողարկումն ապահովելու նպատակով մեխանիկական արտադրամասերում ստեղծվել են տեխնոլոգիական 8 հոսքագծեր։ Սռնակների և լիսեռների մշակման համար տեղադրվել են հիդրոպատճենահանման հաստոցներ. հաջողությամբ են բանում խառատային-պտտուն ավտոմատներն ու կիսավտոմատները, ծրագրային կառավարման հաստոցները։ Բաժնի աշխատողներն արտադրության մեջ ներդրել են ունիվերսալ հավաքիչ հարմարանք (УСП), որը տնտեսապես խիստ շահավետ է գործարանի համար, քանի որ դրա շնորհիվ մի քանի անգամ կրճատվում է նոր արտադրատեսակների արտադրության տեխնիկական նախապատրաստման ժամանակը։ Շատ արդյունավետ է էլբորից պատրաստված գործիքների կիրառումը։ Մշակման խմբային մեթոդների են փոխադրվել 30 դետալ, պատրաստվել և շահագործվում են բարձր արտադրողական սարքավորման 17 միավոր, տեղակայվել են հավաքման մեքենայացված ստենդներ, մեքենայացվել են բեռնման-բեռնաթափման աշխատանքները հիմնական և օժանդակ արտադրամասերում։ Այս ամենի շնորհիվ հնգամյակի ընթացքում 65 տոկոսով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։

Սարքավորվում է ջերմակոնտակտային արտադրամասը։ Լիովին մեկուսացված շենքամաս է այն, որտեղ մշտապես կպահպանվի անփոփոխ ջերմաստիճան, որը հնարավոր կդարձնի հաջողությամբ հավաքելու գերճշգրիտ հաստոցները։

Նորի, առաջավորի, անդուլ կատարելագործման ակնբախ ձգտումը ցույց է տալիս, որ մեր հաստոցաշինարարները քաջ գիտակցում են իրենց գործի կարևորությունը։



Կ. Ա. ՂԱԶԱՐՅԱՆ

# ՀԱԿԱԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿՈՆՎԵՅԵՐԸ ԵԹԵՐՈՒՄ

«Մենք ապրում ենք գաղափարական անդադրում պատերազմի պայմաններում, որը մեր երկրի դեմ, սոցիալիզմի աշխարհի դեմ մղում է իմպերիալիստական պրոպագանդան՝ օգտագործելով ամենանրբին եղանակներ և տեխնիկական հզոր միջոցներ»,— ասված է կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ:

Լուրջ քաղաքական ցնցումներ և ձախողումներ կրելով ներքին և արտաքին քաղաքականության բնագավառներում, իմպերիալիզմը, առաջին հերթին, ամերիկյան իմպերիալիզմը գաղափարական և քաղաքական դիվերսիաներ է կազմակերպում սոցիալիստական երկրների, կոմունիստական և ողջ հակաիմպերիալիստական շարժման դեմ: Ըստ ամենայնի կեղծելով և նենգափոխելով իրականությունը, կապիտալի ջատագովները փորձում են վարկաբեկել և արատավորել սոցիալիզմը, գունազարդել բուրժուական կարգերը և ապրելակերպը:

Կոմունիզմի գաղափարների դեմ մշտական պատերազմ վարելու համար ԱՄՆ-ում ստեղծված են և ակտիվորեն գործում են այնպիսի հատուկ կառավարական գործակալություններ, ինչպիսին Միացյալ Նահանգների ինֆորմացիոն գործակալությունն է (ՅՈՒՍԻԱ), որը տնօրինում է տխրահռչակ «Ամերիկայի ձայն» ռադիոկայանի հզոր ցանցը, տարբեր երկրներում տեղակայված ինֆորմացիոն կենտրոնները և ժամանակակից պրոպագանդայի այլ միջոցներ: Հակակոմունիստական գործունեության մեջ ընդգրկված են նաև բազմաթիվ այլ կազմակերպություններ, ինչպես, օրինակ, «Խաղաղության կորպուսը», որը ստեղծված է, իբր, մարդասիրական նպատակներով, թույլ զարգացած երկրներին «օգնելու» համար:

Ամերիկյան ռեակցիոն պրոպագանդայի համակարգի մեջ անմիջականորեն ներգրավված են նաև ռադիոկայաններ, որոնք համարվում են «մասնավոր» և տեղավորված են «երրորդ երկրների» տերիտորիաներում:

Վերջին տարիներին ՅՈՒՍԻԱ-ի գործունեության շրջանակներից վերջնականապես դուրս է նետվել «անաչառության» և «անկողմնակալության» դիմակը, որով նրանք ոչ-հեռու անցյալում փորձում էին ծածկել այդ հակակոմունիստական պրոպագանդիստական ծառայության իսկական դեմքը: Նիքսոնի վարչակազմի իշխանության գլուխ անցնելուց հետո ՅՈՒՍԻԱ-ի ապարատը հիմնովին զտվեց և վերակառուցվեց, որի ընթացքում նրա կազմից հեռացվեցին վերջին «լիբերալ տարրերը»:

Այսպես, 1969 թվականի հունվարին ՅՈՒՍԻԱ-ի ղեկավար նշանակվեց Ֆրենկ Շեքսպիրը, պրեզիդենտի վստահելի անձը, մարդ, որն ինքն իրեն անվանում է «պահպանողականներից պահպանողականը»: Իսկ «Ամերիկայի ձայնը» ընկավ Քեննետ Հիդենսի ձեռքը, որը Ջոն Բերչի ֆաշիստական կազմակերպության ղեկավարների հետ սերտ հարաբերությունների մեջ է: Դրանով է, անկասկած, բացատրվում այն, թե ինչու այդ «ձայնը» մասնավորապես ռուսերեն հաղորդումներում ավելի է ուժեղացրել հակասովետական շեշտը:

Գաղափարական պայքարում իմպերիալիզմը մեծ տեղ է հատկացնում ռադիոպրոպագանդային, որն աշխարհով մեկ տարածում է հակակոմունիստական հերյուրանքներ: Այսպես, վերջին տարիներին «Ամերիկայի ձայնը» թըմբկահարելով, թե հաղորդում է միայն հավաստի փաստեր, սև գույնով է համաշխարհային հասարակայնությանը ներկայացնում սոցիալիստական երկրների, հակաիմպերիալիստական ուժերի, բանվորական շարժման վերաբերյալ տեղեկությունները ու լուրերը:

Կառավարական այդ ռադիոկայանը սկսել է գործել գրեթե երեսուն տարի առաջ, 1942 թըվականի փետրվարից: Ներկայումս «Ամերիկայի ձայնի» 104 կարճալիք և միջին ալիք հաղորդիչները թունավորում են եթերը ԱՄՆ-ում և արտասահմանում: Ռադիոկայանի 32 ստուդիաների 2400 աշխատակիցներից 40 տոկոսը ծառայում է «հոգեբանական պատերազմի» բնագավառում: «Ամերիկայի ձայնը միաժամանակ 100 տարբեր աղբյուրներից նյութեր է ընդունում, կատարում 40 ձայնագրություններ և 36 լեզուներով հաղորդում 26 ծրագիր:

«Ամերիկայի ձայնի» 104-ից 41 հաղորդիչներ գտնվում են Միացյալ Նահանգների տերիտորիայում: Դրանց մեծամասնությունը տեղակայված է արևելյան նահանգներում և առաջացնում է հզոր ռադիոճակատ ու ձգվում է հյուսիսից հարավ, Բետանից (Օհայոյի նահանգ) մինչև Մարատոնա (Ֆլորիդայի նահանգ): Այդ ճակատի կենտրոնում Գրինվիլում (Հյուսիսային Կարոլինայի նահանգ) տեղադրված են հզոր հաղորդիչներ, որոնք գրգռված վիճակում են պահում ռուսերեն լսող ունկնդիրներին: Մյուս, արևմտյան ռադիոճակատը տեղ է գտել խաղաղօվկիանոսյան ափին (Կալիֆոռնիայի նահանգ) և անցնում է Դելանո և Դիքսոն քաղաքների միջով:

«Ամերիկայի ձայնը» հզոր անտենաների միջոցով հատուկ հաղորդումներ է տալիս բոլոր հինգ մայրցամաքների երկրների համար: Օգտագործելով Տանժերի (Մարոկկո), Վուֆերտոնի (Անգլիա), Մյունխենի (ԳՖՀ), Մոնրովիայի (Լիբերիա), Սալոնիկի և Հոդոս կղզու (Հունաստան) վերատրանսլյացիոն կայանները, այն Եվրոպայի խիտ բնակեցված երկրների, ինչպես նաև Աֆրիկայի ու Մերձավոր Արևելքի պետությունների եթերը լցնում է անընդմեջ հաղորդումներով: Ասիայի, Ավստրալիայի և խաղաղօվկիանոսյան շատ ժողովուրդներ գտնվում են ամերիկյան ռադիոպրոպագանդայի ազդեցության տակ: Լատինաամերիկյան երկրները նույնպես հագեցած են իրենց հյուսիսային հարևանի ռադիոհաղորդումներից:

Օրավուր մեծանում են այդ հզոր կայանի հնարավորությունները, կառուցվում են 10 լրացուցիչ կարճալիք հաղորդիչներ Քևալում (Հունաստանի հյուսիսում): Նոր կենտրոնը ծառայում է Արևելյան Եվրոպա, Սովետական Միություն, Մերձավոր Արևելք, Հյուսիսային Աֆրիկա և Հարավային Ասիա կատարվող հաղորդումները ուժեղացնելու նպատակին: Կայանում գործում են նաև շարժական ռադիոհաղորդիչներ, որոնք անհրաժեշտության դեպքում կարող են փոխադրվել երկրագնդի ցանկացած կետը:

Սոցիոլոգիայի ամերիկյան պրոֆեսոր Մայքլ Չուկասը, որը հայտնի է որպես «բարոյական գործողությունների» բնագավառի աչքի ընկնող մասնագետ, պրոպագանդիստական գաղափարները համեմատում է գնդակների հետ: Ընդ որում, վերջիններս նրան թվում են ո՛չ այնքան սարսափելի, ինչպես առաջինները: «Գնդակը և գաղափարը,— ասում է նա,— ենթադրում են ուղարկողի և պոտենցիալ ստացողի առկայությունը: Բայց կրակված գնդակը ծախսվում է, և նույնիսկ երեխան կարող է բարձրացնել այն, խաղալ նրա հետ: Իսկ պրոպագանդիստական գաղափարը կենսունակ է, այն գրեթե անխորտակելի է, և նրա հետևանքները հաճախ չի կարելի կանխատեսել»: Նման խոստովանությունը ցույց է տալիս, թե ժամանակակից կապիտալիզմի քաղաքական պայքարում ինչպիսի խոշոր նշանակություն է տրվում գաղափարական զենքին, նրա ներգործությանը: Այդ նպատակների համար միայն «Ամերիկայի ձանը» տարեկան ծախսում է 33 միլիոն դոլար: Սոցիալական պատվերը, որ կատարում է ամերիկյան ռադիոպրոպագանդան, բավական ընդարձակ է ու բարդ: Այն, մի կողմից՝ պաշտպանում է բուրժուական աշխարհի հիմքերը, մյուս կողմից կատաղի և անհաշտ պայքար է մղում կոմունիզմի գաղափարների, սոցիալիզմի երկրների դեմ:

Այդ ասպարեզում ամերիկյան ռադիոյին ձայնակցում են Լոնդոնի Բի-Բի-Սին, Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության Քյոլնի «Գերմանական ալիքը» և մյուսները: Եթե դատենք հաղորդիչների թվով, ապա արևմուտքի «ձայները» այնքան հզոր չեն, ինչպես «Ամերիկայի ձայնը», բայց դա տակավին չի նշանակում, թե դրանք խոսում են ավելի «ցածր», մեր գաղափարների ու հասարակարգի հանդեպ հակակոմունիստական մաղձի և սարսափի առավել պակաս թույնով: Երբ սրվում է միջազգային իրադրությունը, բարձրանում է բարձրախոսների լարվածության տենդը: Այդպես էր, օրինակ, դոմինիկյան ճգնաժամի օրերին, վիետնամական պատերազմի էսկալացիայի ընթացքում, չեխոսլովակյան իրադարձությունների ժամանակ:

Միացյալ Նահանգների ռազմական էսկալացիան Վիետնամում ուղեկցվում էր հաղորդիչների փոխադրմամբ՝ Լիբերիայից Ֆիլիպիններ, որի հետևանքով այդ շրջանում մեծացավ հաղորդումների ծավալը:

Գաղափարական դիվերսիայում ամերիկյան

իմպերիալիզմը օգտագործում է նաև օտարերկըրյա պետություններում գոյություն ունեցող ներքին դժգոհությունները և բախումները, բորբոքում ռասայական, կրոնական, քաղաքական և տնտեսական կոնֆլիկտներ: Հանրահայտ է այն իրողությունը, թե ինչպիսի բացահայտ գաղափարական հարձակումներ ծավալեցին Արևմուտքի չարագուշակ «ձայները» 1969 թըվականին չեխոսլովակյան իրադարձությունների ժամանակ, ընդդեմ խաղաղության և սոցիալիզմի ուժերի:

Բուրժուական պրոպագանդայի էությանը նըվիրված աշխատություններից մեկում անգլիացի Ֆրեյզերը ասես ջրի մեջ էր նայում, երբ ասում էր՝ «Մի ստիր, եթե կա մերկացման վտանգ, և հիշիր, որ ժամանակի ընթացքում քեզ անպայման կմերկացնեն»: Այդպիսի անախորժ վիճակում են ներկայումս ամերիկյան բազմաթիվ կազմակերպություններ և, առաջին հերթին՝ «Ազատ Եվրոպա» ռադիոկայանը, որի հերյուրանքներով լի հաղորդումները օճառի պղպջակների նման հօդս ցնդեցին և մոռացվեցին, որպես ստի ու կեղծիքի արտահայտություն: Համաշխարհային հասարակայնության արդեն պարզ դարձավ, որ, այսպես կոչված՝ «Ազատ Եվրոպա» ռադիոկայանը ֆինանսավորում են ո՛չ թե ամերիկացիները, այլ ամերիկյան կենտրոնական հետախուզական վարչությունը:

Այդ հեղինակազուրկ ռադիոկայանը շուրջ քսան տարի Արևելյան Եվրոպայի երկրների եթերն է ուղղում օրական 100 հազար բառ՝ թունավորված կեղծիքով և լիցքավորված ատելությամբ կոմունիզմի հանդեպ: Նրա 32 հաղորդիչները տեղակայված են ԳՖՀ-ում և Պորտուգալիայում: Ազատ Եվրոպան միավորված է երեք ռադիոկայանների մեջ, որոնցից երկուսը տեղակայված են ԳՖՀ-ում, Բիբլիսում և Խոլցկիրհենում, իսկ երրորդը, Պորտուգալիայում (Լեն-Գորիայում, Լիսաբոնի շրջանում): Նա Մյունխենում, որը «Ազատ Եվրոպայի» կենտրոնն է, ունի տպարան և 17 ռադիոստուդիաներ, նաև բաժանմունքներ եվրոպական մի քանի քաղաքներում: Կայանն ունի սեփական լսող ծառայություն, որն ընդունում և ձայնագրում է հեռագրական գործակալությունների և սոցիալիստական երկրների մոտ 50 ռադիոկայանների ծրագրերը: Այդ ծառայությունը կատարում է նաև «հետազոտական ֆունկցիաներ», մշակելով հակակոմունիստական քայքայիչ պրոպագանդայի մեթոդներ:

«Ազատ Եվրոպան» տեղակայված է արևմըտագերմանական Մյունխեն քաղաքում: Այդ կայանում աշխատում են մոտ 1500 մարդ, որոնց խնամակալն է ԱՄՆ-ի կենտրոնական հետախուզական վարչությունը: Վերջինս տարեկան մոտ 34 միլիոն դոլար է հատկացնում կայանին: Նյու-Յորքում է գտնվում «Ազատ Եվրոպայի» ղեկավարությունը, ուր և մշակվում ու առաքվում են քաղաքական դիրեկտիվները, խմբագրական նյութերը: Մյունխենում Նյու-Յորքից նախօրոք բոլոր լեզուներով թարգմանված նյութը համապատասխան հրահանգներով և մեկնություններով հանձնվում է կատարողներին՝ տարբեր լեզուներով աշխատող խմբագրություններին: Միացյալ Նահանգների պրոպագանդիստական ապարատը Մյունխենում մեծ ջանքեր է թափում, որպեսզի հաղորդումների բովանդակությունը հագեցված լինի այժմեական հարցերով, ընթացիկ իրադարձությունների մեկնաբանությամբ: Հաղորդումների կատարյալ սիստեմը «Ազատ Եվրոպա» ռադիոկայանը դարձնում է Արևմուտքի կարևորագույն միջնաբերդը՝ հոգեբանական պատերազմում:

Ներկայումս «Ամերիկայի ձայնը» և նրան արձագանքող մյուս հակակոմունիստական «ձայները», քամելեոնի նման, փոխելով մաշկի գույնը, ձգնում են նոր միջոցներով ու հնարներով ներազդել սոցիալիստական երկրների բնակչության վրա: Իրենց մեկնաբանություններում, թղթակցություններում, հոդվածներում, ծանուցումներում և ասուլիսերում այժմ նրանց բացահայտ մերժողական ոճը փոխարինվել է խորամանկ դատողություններով, ուր կասկածի տակ են դրվում անհատի վերափոխումը, առաջադիմությունը սոցիալիստական հասարակարգում: Նրանց ծրագրերում մեծ տեղ է հատկացվում կապիտալիստական հասարակարգի տարբեր կողմերի գովաբանմանը: Այդ մասին անգլիական Բի-Բի-Սին դեռևս 1968 թվականի հոկտեմբերի 22-ի իր հաղորդման մեջ ասում էր. «Չափազանցությունները միանգամայն բնական են խոսքի ազատության մեր երկրում»: «Չափազանցությունը»՝ համաձայն Վեբստերի բառարանի, նշանակում է՝ «անցնել ճշմարտության սահմանները»:

Կապիտալիստական հասարակարգում դասակարգային խաղաղության կոնցեպցիան հիմնավորելու համար «ձայնը» հրավիրում է սոցիոլոգ-պրոֆեսորների, որոնք ձգնում են ապացուցել, թե, իբր, հին, դաժան կապիտալիզմը, որի մասին գրել է Կարլ Մարքսը, այլևս գոյություն չունի: Իբր, վերջինս կերպարանափոխվել է նոր, ներդաշնակ հասարակության, ուր ձեռնարկատերերը և բանվորները հավասարապես շահագրգռված են շահույթների համար և վերջիններին ավելի շուտ կարելի է համարել «ժողովրդական կապիտալիստներ», քան պրոլետարներ: Միչիգանի համալսարանի



քաղաքական գիտությունների պրոֆեսոր Ռեմասը պնդում է, օրինակ, որ բանվորներին պետք չէ քաղաքական կազմակերպություն, քանի որ ԱՄՆ-ի երկու բուրժուական կուսակցությունները՝ հանրապետականն ու դեմոկրատականը, արդեն հոգ են տանում աշխատավորների կարիքների համար:

Սակայն ինչքան էլ Արևմուտքի «ձայները» քարոզեն ներդաշնակություն կապիտալիստական հասարակությունում, այնուամենայնիվ, վերջինիս բնորոշ են դասակարգային սուր պայքարը, գործազրկությունը և աղքատությունը:

1953 թվականի մարտից եթերում հնչեց ևս մի օտար ռադիոձայն, որը «Ազատագրում» ռադիոկայանինն էր: Սակայն իր գոյության առաջին իսկ տարիներից նա այնքան վարկաբեկեց իրեն, որ Միացյալ Նահանգները ստիպված եղան փոխել այդ անվանումը և այն կոչեցին «Ազատություն»: Նրա 17 կարճալիք հաղորդիչները թույլ են տալիս օրական Սովետական Միության ժողովուրդների 18 լեզուներով 375 ժամ ձայնասփռում կատարել: Հաղորդումները վարվում են Լամպերտգեյմի (Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության) շրջաններից, Բարսելոնից (Իսպանիա) և Տրայբեյից (Տայվան կղզուց): Մյունխենյան «Ազատություն» ռադիոկայանի շտաբ-բնակարանում կառուցված է սովետական 100 ռադիոհաղորդման կայանների հաղորդումների լսման և ալիքակալման հատուկ կենտրոն: Հակակոմունիստական պրովոկացիոն գործունեություն են ծավալել «Ազատ Եվրոպա» և մյուս ռադիոկենտրոնները: Եթերը մթագնողների թվում մեծ տոկոս են կազմում Արևելյան Եվրոպայից փախած հազար ու մի թափթփուկներ, հայրենիքի դավաճաններ: Այստեղից պարզ է դառնում, թե ինչու է ամերիկյան պրոպագանդան ընտրել Մյունխեն քաղաքը որպես հոգեբանական պատերազմի կենտրոն Եվրոպայում: Այստեղ հիմնավորվել են շուրջ 200 վտարանդիական կազմակերպություններ և հետախուզական ծառայություններ: ԱՄՆ-ի հետախուզական օրգանները հովանավորում են Մյունխենում ապաստանած պատերազմի հանցագործներին:

Հակակոմունիզմի և հակասովետիզմի այդ որջը դիմակազերծելու նպատակով լեհ հետախույզ Անջեյ Չեխովիչը ստացավ հատուկ առաջադրանք. ձեռք բերել անհերքելի ապացույցներ, փաստաթղթեր, ականատեսի վկայություն: Այդ միտումով նա վեց տարի աշխատակցեց «Ազատ Եվրոպա» ռադիոկայանի կենտրոնական մյունխենյան ապարատում, ծանոթացավ նրա քայքայիչ գործունեության մեթոդներին: Այդ մասին նա վերջերս հանգամանորեն պատմեց Վարշավայում տեղի ունեցած պրես-կոնֆերանսում և անհերքելի փաստերով ապացուցեց, որ «Ազատ Եվրոպա» կոչված ռադիոկայանը Միացյալ Նահանգների լրտեսական կենտրոնն է Եվրոպայում և գործում է սոցիալիստական երկրների դեմ: Նա ուսումնասիրել է նաև «Ազատություն» ռադիոկայանի «դժոխային խոհանոցի» գործունեությունը, որը նույնպես ուղղված է Սովետական Միության դեմ:

Հարկ է նշել նաև, որ այդ հակասոցիալիստական պրոպագանդիստական բոլոր կենտրոնները՝ «Ամերիկայի ձայնը», «Ազատ Եվրոպան», «Ազատությունը», «Ռիասը», «Բի-Բի-Սին» և այլ կայաններ աշխատում են սերտ կոնտակտի մեջ և մշտապես նյութեր են փոխանակում:

Լեհ հետախույզին հաջողվել է թափանցել «Ազատ Եվրոպայի» գնահատումների բաժինը», որն իրականում ռադիոկայանի հետախուզական բաժինն է: Վերջինս պահպանում են 15 ոստիկան. այն ունի 17 աշխատակից, որոնք աշխատում են պողպատյա դռների ետևում, ուր գործում է գաղտնի ազդանշանների սիստեմը:

«Ազատ Եվրոպա», «Ազատություն» և մյուս ռադիոկայանների ու սիոնիստական կազմակերպությունների գործունեությունը կոորդինացվում է կենտրոնական հետախուզական վարչության և ՅՈՒՍԻԱ-ի կողմից: Չեխովիչը բազմաթիվ համոզիչ փաստեր բերեց Մյունխենի, այսպես կոչված՝ «անկախ» ռադիոկայանների բազմակողմանի լրտեսական գործունեության մասին, նա հատկապես մատնանշեց, որ այնտեղ ամեն օր խնամքով ուսումնասիրվում են և մշակվում սոցիալիստական երկրներում տպագրվող թերթեր, ամսագրեր ու գրքեր, որոնց միայն քան տոկոսն է օգտագործվում «Ազատ Եվրոպայի» կողմից եթերում մղվող հակակոմունիստական ռադիոպրոպագանդայի համար, իսկ մնացածը դառնում է կենտրոնական հետախուզական վարչության սեփականությունը:

«Ազատ Եվրոպան» և «Ազատությունը» կատարում են Արևմուտքի իմպերիալիստական շրջանների բազմատեսակ առաջադրանքները, որոնք այսօր հակակոմունիզմի համակարգում գրավում են կենտրոնական տեղերից մեկը:

Ամերիկյան ռադիոպրոպագանդայում մեծ է նաև արտասահմանում գտնվող ԱՄՆ-ի զինված ուժերի ռադիո և հեռուստատեսային համակարգի դերը: Նրա 350 ռադիոհաղորդման և 90 հեռուստացուցային կայանները նախատես-

ված են ո՛չ միայն Միացյալ Նահանգների զինվորական անձնակազմի «ուղեղները լվանալու», այլև օտար երկրներում «սառը պատերազմի» և ռազմական հիստերիայի մթնոլորտը շիկացնելու համար:

Ամերիկյան ռադիոպրոպագանդիստները կրելով մի շարք ձախողումներ Պոտոմակի, ինչպես նաև Թեմզայի և Հռենոսի ափերին, այժմ արդեն մեծ հույսեր են կապում ո՛չ միայն համաշխարհային եթերի, այլև տիեզերական տարածության հետ: Խոսքը վերաբերում է «առևտրական արբանյակների գլոբալ սիստեմի» ստեղծմանը, որոնք կօգտագործվեն տիեզերական հեռուստատեսության միջոցներով «հոգեբանական պատերազմ» վարելու համար:

Գաղափարական պատերազմի ամերիկյան պրոպագանդիստները համառորեն առաջարկում են հեռուստաարբանյակների միջոցով ցուցադրել ամերիկյան կովբոյական կինոնկարներ՝ վեստերններ: Հնարավոր է, որ տեխնիկական տեսակետից ամերիկյան հեռուստատեսությունը գտնվում է պատշաճ մակարդակի վրա, բայց ինչ վերաբերում է գաղափարներին, որով լիցքավորվում են պրոպագանդիստական ստերը, ապա աշխարհի ժողովուրդներին վաղուց ծանոթ է դրանց միտումնավոր բնույթը, քաղաքական ուղղությունը:

Երբեք չի կարելի թերագնահատել հակակոմունիզմի և հակասովետիզմի քաղաքականության վտանգը, որը վարվում է Միացյալ Նահանգների և մյուս իմպերիալիստական երկրների ռեակցիոն շրջանների կողմից: Այն անպայման ունակ է ազդելու հետամնաց, թերզարգացած ուղեղների վրա, եթե պատշաճ հակահարվածի չհանդիպի, կարող է բացասաբար ազդել աշխարհի քաղաքական մթնոլորտի վրա և դառնալ ագրեսիվ գործողությունների աղբյուր: Սակայն նույնիսկ հակակոմունիզմի ամենաանուղղելի հետևորդները անկեղծության րոպեներին ընդունում են վճռական ուղղություններում իրենց գործունեության անհաջողությունները: Այդ առընչությամբ չափազանց հատկանշական է ՅՈՒՍԻԱ-ի կողմից հրատարակվող «Կոմունիզմի պրոբլեմները» ամսագրի էջերում (1970 թ. հունվար—փետրվար) հակասովետական սիմպոզիումի մասնակիցների արած մի քանի հայտարարությունները: Ամերիկյան պրոֆեսոր Էնդրյու Էզերգայլիսը, որի հոդվածը գրգռիչ խայծ էր «դիսկուսիայի համար», ստիպված էր ափսոսանքով նշել կոմունիզմի թուլացման հետ կապված հույսերի պատմական ապարդյունությունը: Ամսագրի էջերում նա գրում է. «Բոլշևիկները 1917 թ. ավելի ուժեղ էին, քան 1903 թ., 1930 թ. ավելի ուժեղ, քան 1922 թ., իսկ 1955 թ. ավելի ամուր, քան 1944 թ.: Որևէ իմաստ կա՞, արդյոք, ենթադրելու, որ կոմունիզմը այսօր ավելի թույլ է, քան 1956 թվականին: Եվ, վերջապես, հինգ տարի առաջ ո՞վ կարող էր գուշակել, որ Եվրոպայում և ԱՄՆ-ում ուսանողների նոր սերունդը այսօր մարքսիստական դրոշների ներքո պետք է ազատագրի համալսարանական շենքերը և գոչի կոմունիստական հեղափոխական հերոսների անունները»:

Ինչպես ՍՄԿԿ XXIV համագումարում իր ելույթի մեջ նշեց ընկեր Բրեժնևը,— «Մտքերի վրա ներգործելու բուրժուազիայի ձեռքին գտնվող բոլոր գործիքները՝ մամուլը, կինոն, ռադիոն մոբիլիզացված են, որպեսզի մոլորության մեջ գցեն մարդկանց, նրանց մեջ այն պատրանքը ստեղծեն, թե կապիտալիզմի օրոք կյանքը համարյա եդեմական է, զրպարտեն սոցիալիզմը: Եթերը բառացիորեն հագեցած է մեր երկրի, սոցիալիզմի եղբայրական երկրների մասին ամեն կարգի հերյուրանքներով»:

Մեր պրոպագանդիստական, ագիտացիոն-մասսայական ճակատի աշխատողների պարտքն է՝ ժամանակին վճռական հակահարված հասցնել այդ գաղափարական հարձակումներին, հարյուր միլիոնավոր մարդկանց հասցնել ճշմարտությունը սոցիալիստական հասարակության, սովետական ապրելակերպի, մեր երկրում կոմունիզմի կառուցման մասին: Եվ այս բանը պետք է անել համոզիչ, մատչելի, ցայտուն կերպով: Սովետական Միության մասին ճշմարտության ձայնը պետք է լսելի լինի հողագնդի բոլոր աշխարհամասերում»:



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՋԵՐՄ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՄԲ ՇՈԴՎԱԾ

*Մեր երկրի ժողովուրդների օրեցօր ամրապնդվող բարեկամությունն ու եղբայրությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակն են հաստատում: Սովետական իշխանության համար մղվող պայքարի տարիներին տարբեր ազգության պատկանող աշխատավորների միջև ստեղծված բարեկամությունը, սոցիալիստական հասարակարգի պայմաններում անսասանելի ուժ ստանալով, նպաստեց այն բանին, որ մեր ժողովուրդները, փառքով դուրս գալով ամենածանր փորձություններից, պատմական փայլուն հաղթանակներ ձեռք բերեցին սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում: Վ. Ի. Լենինը նշում էր, որ ժողովուրդների բարեկամությունը, սոցիալիստական ազգերի միջև եղած փոխադարձ եղբայրությունն ու համագործակցությունը սոցիալիստական շինարարության հաջողությունների գրավականն են:*

*Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, իր գործունեության ընթացքում մինչև վերջ կենսագործելով լենինյան այդ պատգամը, մեր երկրում ստեղծեց մի այնպիսի հասարակարգ, որը խարսխված է ժողովուրդների սերտ բարեկամության ու եղբայրության սկզբունքների վրա: Սովետական Միությունում առաջացել է մարդկանց պատմական նոր ընդհանրություն՝ սովետական ժողովուրդը, որն իրենից ներկայացնում է եղբայրական բարեկամության ու փոխադարձ հարգանքի սկզբունքներով համախմբված, հավասար իրավունքներով օժտված ազգերի միասնական ընտանիք: Նպատակի ու պարտականությունների, հայրենիքի ու պետականության, էկոնոմիկայի ու գաղափարների միասնությունը նպաստել ու նպաստում են սովետական մարդկանց բարոյական այնպիսի հիանալի հատկանիշների ձևավորմանը, ինչպիսիք են եղբայրությունն ու բարեկամությունը: Սա սոցիալիզմի ամենաէական հաջողություններից ու հաղթանակներից մեկն է:*

*Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Սոցիալիզմի ամենախոշոր նվաճումներից մեկը կուսակցության կողմից ԼԵՆԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ՝ ժողովուրդների հավասարության ու բարեկամության քաղաքականության պրակտիկ իրագործումն է»*

(ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը, Երևան, 1971 թ., էջ 117)։ Ժողովուրդների բարեկամությունը համարելով երկրի հզորության անվիճելի նախապայմաններից մեկը՝ մեր կուսակցությունն առանձնահատուկ նշանակություն է տալիս աշխատավոր մասսաներին ինտերնացիոնալիզմի ու սոցիալիստական հայրենասիրության ոգով դաստիարակելու գործին։ Կուսակցությունը աչքի լույսի պես է պահպանում ժողովուրդների բարեկամությունը։ Սոցիալիստական ազգերի միջև անընդհատ ամրապնդվող այս բարեկամությունը դարձել է սովետական պետության, մեր սոցիալիստական հասարակարգի հիմնական առաջմղիչ ուժերից մեկը։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ կապիտալը համաշխարհային ուժ է, նրան հաղթելու համար հարկավոր է բանվորների միջազգային համերաշխությունը։

Կոմունիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանում կուսակցությունը, հետևողականորեն կենսագործելով ինտերնացիոնալիզմի սկզբունքներն ազգային հարաբերությունների բնագավառում, իր սրբազան պարտքն է համարում անհաշտ պայքար մղել ամեն կարգի նացիոնալիզմի դեմ։ Մեր կուսակցության ծրագրում ասված է. «Այսուհետև ևս հետևողականորեն կիրառել ինտերնացիոնալիզմի սկզբունքներն ազգային հարաբերությունների ասպարեզում. ամրապնդել ժողովուրդների բարեկամությունը՝ որպես սոցիալիզմի կարևոր նվաճումներից մեկը. անհաշտ պայքար մղել նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների դեմ, ազգային սահմանափակության և բացառիկության, անցյալի իդեալականացման և ժողովուրդների պատմության մեջ սոցիալական հակասությունների սքողման տենդենցների դեմ, այն սովորույթների ու բարքերի դեմ, որոնք խանգարում են կոմունիստական շինարարությանը։ ...Սովետական հանրապետություններում տարբեր ազգությունների աշխատողների դաստիարակության և օգտագործման ասպարեզում անթույլատրելի է ազգային մեկուսացածության որևէ դրսևորում» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, Երևան, 1962 թ., էջ 536—537)։

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործը կոմունիստական գաղափարախոսության անբաժանելի մասնիկն է, հարատև ջանքեր, հետևողական ու բազմակողմանի աշխատանք պահանջող բավականաչափ բարդ պրոցես։

Կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ սովետական մարդկանց անսահման սեր ներարկել հայրենիքի նկատմամբ, ամրապնդել մեր երկրի ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունը, խնամքով պահպանել հեղափոխական ավանդույթները։

Ինտերնացիոնալիզմի հիմնական գծերն ու հատկանիշները մարդկանց մոտ ամենից առաջ ձևավորվում են աշխատանքի պրոցեսում։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումով ամրապնդվում է սովետական ժողովուրդների միասնությունը։ Այդ պրոցեսում առավել ընդարձակվում է նյութական ու բարոյական հարստությունների փոխանակումը ազգերի միջև, ավելանում է յուրաքանչյուր ժողովրդի ներդրումը կոմունիզմի կառուցման գործում։ Ազգային հանրապետությունների զարգացման այս տենդենցը նոր ուղիներ է բացում սովետական ժողովուրդների բարեկամության ամրապնդման համար։ Այդ պրոցեսն այժմ ակնառու է ինչպես ամեն մի հանրապետությունում, այնպես էլ յուրաքանչյուր քաղաքում, շրջանում, ձեռնարկությունում ու տնտեսությունում։ Այդ է վկայում նաև Ամասիայի շրջանի փորձը։



Մեր շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում, արդյունաբերական ձեռնարկություններում ու շինարարական օբյեկտներում ձեռք-ձեռքի տված աշխատում են ադրբեջանցիները, հայերն ու ռուսները։ Բազմազգ է նաև շրջանի հիմնարկություններում, դպրոցներում և այլ կազմակերպություններում աշխատող բանվորների ու ծառայողների կազմը։ Միևնույն ընտանիքի անդամների պես նրանք միասնական ջանքերով պայքարում են մեր կուսակցության կողմից շրջանի առջև դրված խնդիրները կենսագործելու համար։ Համատեղ պայքարի ընթացքում այստեղ աշխատավորների մի նոր, հիանալի սերունդ է դաստիարակվել։

Շրջանում ապրող ու աշխատող տարբեր ազգությունների ներկայացուցիչներին ժողովուրդների բարեկամության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելը մեծ նշանակություն ունեցող գործ է։ Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, իրենց աշխատանքային ծրագրերն ու պլանները մշակելիս, առաջնակարգ տեղ են հատկացնում դրան։

Ամասիան կես դարից ավելի է, ինչ տարբեր լեզվով խոսող աշխատավոր մարդկանց միասնական ու համերաշխ ընտանիք է դարձել։ Սովետական իշխանության տարիներին այստեղ ձեռք բերված հիանալի փորձն ավելի մասսայական դարձնելու և է՛լ ավելի զարգացնելու նպատակով՝ շրջանային կոմիտեն ու սկզբնական կուսկազմակերպությունները մեծ ջանքեր են թափում։ Մեր խնդիրն է՝ ինտերնացիոնալ դաստիարակության գործն այնպես կազմակերպել, որպեսզի նոր սերունդն առավել մեծ սիրով ընթանա հայրերի ճանապարհով, շարունակի նրանց սկսած հիանալի ավանդույթները։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո վերջնականապես, մեկընդմիշտ լուծվեց շրջանում ապրող հայ և ադրբեջանցի աշխատավորների բախտը։ Ցարական Ռուսաստանի հեռավոր ծայրամասերից մեկը հանդիսացող Ղարսի մարզի Աղբաբա շրջանում կյանքը չէր ժպտում աշխատավորին. հայ ու ադրբեջանցի գյուղացին հալածվում, տանջվում էր ծանր լծի տակ։ Նա ունեզուրկ էր, չքավոր, տգետ։ Ամենուր տարածվել էին սովն ու համաճարակը։ Մարդիկ բնակվում էին գետնափոր, հողածածկ խրճիթներում, հաճախ անասունների հետ միասին։ Նրանց ապրուստի, առողջության, կրթության մասին հոգացող չկար։

Սովետական իշխանության տարիներին անճանաչելի կերպով փոխվեց Ամասիայի դեմքը։ Ի՞նչ է տվել լենինյան իմաստուն ազգային քաղաքականության անշեղ կենսագործումը Հայաստանին հարցի փայլուն պատասխանն է մեր այսօրվա Ամասիան։ Ազգային հարցի ճիշտ լուծման, սոցիալիզմի կառուցման լենինյան պլանների կենսագործման շնորհիվ սովետական իշխանության տարիներին վերացվեց այն տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, որը ժառանգություն էր մնացել անցյալից։ Շրջանում ստեղծվեցին ժամանակակից արդյունաբերություն, հանրային առաջավոր տնտեսություններ, հանդես եկան բազմազան ունակությունների տեր, բազմակողմանի զարգացած մարդիկ, ձևավորվեց մտավորականությունը։

Հավատարիմ մնալով իրենց ինտերնացիոնալիստական ավանդույթներին՝ Ամասիայի աշխատավորները համատեղ ուժերով զարգացնում են շրջանի էկոնոմիկան ու մշակույթը, հասնում նորանոր հաջողությունների։ 1936 թվականին Ամասիայի և Ղուկասյանի շրջաններին սպասարկող ՄՏԿ-ում կար ընդամենը 19 տրակտոր, 4 կոմբայն, 4 շարքացան և 16 գութան։ Իսկ այժմ

միայն Ամասիայի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզներն ունեն 200 տրակտոր, 30 կոմբայն, 230-ից ավելի բեռնատար ավտոմեքենա, 77 շարքացան և այլն։

Անցած հիսուն տարիների ընթացքում, հիրավի, կուլտուրական մեծ հեղափոխություն է տեղի ունեցել մեզ մոտ։ Դարերի ընթացքում մշակույթից զրկված, անչափ ետ մնացող աշխատավորը միայն սովետական իշխանության տարիներին գրել-կարդալ սովորեց, մոտիկից ծանոթացավ գրականության և մշակույթի հետ։ Այժմ շրջանում գործող 26 դպրոցներում սովորում է ավելի քան 5560 աշակերտ, աշխատում՝ 366 ուսուցիչ։ Շրջանն ամբողջությամբ էլեկտրիֆիկացված ու ռադիոֆիկացված է։ 1959 թ. այստեղ, ավելի ճիշտ, շրջկենտրոնում, կար միայն բազմահարկ մեկ բնակելի շենք։ Իսկ այժմ և՛ շրջկենտրոնում, և՛ գյուղերում վեր են խոյանում բազմահարկ, հարմարավետ բազմաթիվ բնակելի շենքեր։ Արմատապես բարելավվել է բնակչության կուլտուրական ու կենցաղային սպասարկումը։ Գյուղերում գործում են ակումբներ ու գրադարաններ։

Եղբայրությունն ու բարեկամությունը, համատեղ ջանքերը նորանոր հաջողություններ բերեցին շրջանի աշխատավորությանը հատկապես ութերորդ հնգամյա պլանների կատարման գործում։

Ժողովուրդների բարեկամության փայլուն օրինակ է այն կոլեկտիվը, որն այժմ իրագործում է Ախուրյանի Աջափնյա ոռոգման սիստեմի շինարարությունը։ Կոլեկտիվում կան վեց ազգի ներկայացուցիչներ։ Բարեկամությունը ոգևորում, նոր եռանդ ու լիցք է տալիս նրանց։ Այստեղ հայերի ու ադրբեջանցիների հետ ուս-ուսի աշխատում են ռուս Գեորգի Վերբովը, վրացի Ալեքսանդր Բեջաշվիլին, հույն Շալիկո Կոմեշովը, Իվան Խորդանովը և ուրիշներ։ Միասնական նպատակը, համատեղ աշխատանքը, միևնույն իղձերն ու ցանկությունները համերաշխ մի ընտանիք են դարձրել ամբողջ կոլեկտիվը։ Այդ բարեկամության ամրապնդման գործում քիչ վաստակ չունի շինարարության կուսկազմակերպությունը, որն այս մեծ կոլեկտիվի ինտերնացիոնալ դաստիարակությունը համարում է իր ամենօրյա ու կարևոր գործը։ Այստեղ հաճախակի են ունկնդրում ժողովուրդների բարեկամությանը նվիրված դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ։ Ուշադրության արժանի էին բոլորովին վերջերս կազմակերպված «Ժողովուրդների բարեկամությունը», «Հայ և ադրբեջանական ժողովուրդների հավերժ եղբայրությունը», «Անդրկովկասյան ժողովուրդների բարեկամությունը» դասախոսությունները։

Ժողովուրդների բարեկամության ամրապնդման, աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում մեծ փորձ է կուտակել նաև Ամասիայի կաթնապրանքային սովխոզի կուսկազմակերպությունը։ Այստեղ տարվող ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքում հատուկ տեղ են հատկացվում աշխատավորների կոմունիստական, հատկապես նրանց ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակմանը։ Կարդացված դասախոսությունների, կազմակերպված զրույցների հիմնական թեման ժողովուրդների լենինյան բարեկամությունն է։ «Ընկերությունն ու եղբայրությունը», «Հայ ու ադրբեջանական ժողովուրդների դարավոր բարեկամությունը» թեմաներով դասախոսությունները մեծ ուշադրությամբ են լսել սովխոզի մարդիկ։ Ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում ծավալած արդյունավետ գործունեությունը փայլուն արդյունքներ է տալիս ինչպես արտադրապրոցեսում, այն-



պես էլ հասարակական կյանքում։ Սովխոզում աշխատող հայ և ադրբեջանցի բանվորներն ու բանվորուհիները համատեղ ջանքերով պատվով կատարեցին ութերորդ հնգամյակի ծրագիրը և այժմ պայքարում են իններորդ հնգամյակի առաջին տարվա բնագծերը ժամկետից շուտ նվաճելու համար։

Շրջանի կուսկազմակերպությունները ինտերնացիոնալ դաստիարակությունը զուգակցում են աշխատանքային դաստիարակության հետ։ Հանրօգուտ աշխատանքը մտերմացնում ու հարազատ է դարձնում տարբեր ազգությունների պատկանող մարդկանց։ Նրանք իրար օգնում ու աջակցում են եղբայրաբար։ Ինտերնացիոնալ կոլեկտիվներում բոլոր միջոցառումները, որպես կանոն, անց են կացվում տարբեր ազգերի ներկայացուցիչների ներկայությամբ։ Նրանք միասին են բաժանում թե՛ ուրախությունը, թե՛ տխրությունը, համատեղ մասնակցում հարսանիքներին, ուղեկցություններին։ Միասին են դիմավորում սովետական բանակից տուն վերադարձող զինվորին, միասին ճանապարհում բանակ մեկնող համագյուղացիներին։ Ավագ սերնդի ներկայացուցիչներ Աղա Հուսեյնովի և Աղաբեկ Գրիգորյանի անձնական բարեկամությունը վառ օրինակ է այժմյան մեր երիտասարդության համար։

Կուսկազմակերպություններն աշխատավորներին ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում օգտվում են նաև գաղափարական աշխատանքի այլ միջոցներից։ Կոմունիստների, անկուսակցական ակտիվիստների, կոմերիտականների քաղաքական ուսուցման ցանցը, դասախոսական պրոպագանդան այս հարցում մեծ հնարավորություններ են ընձեռում մեր կազմակերպություններին։ Ժողովուրդների բարեկամության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի թեմաներով բովանդակալից դասախոսություններ են կարդում պրոպագանդիստներ Սրապիոն Խաչատրյանը, Ադիլ Մամեդովը, Ռոզա Ավետիսյանը, Ռաշիդ Իսկանդարովը և ուրիշներ։

Տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում շրջանի ձեռք բերած նվաճումների, ինտերնացիոնալ կոլեկտիվների գործադրած միասնական ջանքերի քաղաքական իմաստը աշխատավորության շրջանում լայնորեն պրոպագանդելու նպատակով կուսկազմակերպությունները հմտորեն են օգտագործում գաղափարական աշխատանքի ձևերն ու մեթոդները։

Այժմ, երբ մեր կուսակցությունը հետևողականորեն վարում է սոցիալիստական ազգերի ծաղկման և նրանց աստիճանական մերձեցման լենինյան կուրսը, երբ գնալով ընդլայնվում է այդ ազգերի փոխադարձ համագործակցությունը, առավել մեծ նշանակություն է ստանում սոցիալիստական մրցությունը։ Մեր կուսկազմակերպություններն անում են ամեն ինչ, որպեսզի սոցիալիստական մրցության մեջ ընդգրկվեն բոլոր աշխատավորական կոլեկտիվները և մրցությունը խթանի տնտեսական ու կուլտուրական շինարարության զարգացումը։ Կուսկազմակերպությունները ջանում են, որպեսզի յուրաքանչյուր կոլեկտիվ, մրցության մասնակից պարզ հասկանա ստանձնած պարտավորությունների կատարման նշանակությունը, իմանա, որ կոմունիզմի կառուցման հաջողությունները, ամենից առաջ, կախված են յուրաքանչյուր ձեռնարկության, կոլտնտեսության ու սովխոզի աշխատավորական կոլեկտիվի եռանդից ու ներդրումից։ Սոցիալիստական մրցությունը գործարար ու ակտիվ մթնոլորտ է ստեղծում աշխատավորական կոլեկտիվների միջև։ Տարբեր ազգերի ներկայացուցիչներ, մրցելով իրար հետ, միասնական ջանքերով նպաստում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը։ Մեր շըր-

ջանի աշխատավորները մրցում են մի շարք շրջանների արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կոլեկտիվների հետ։ Լայն մրցություն է ծավալվել նաև շրջանի ներսում։

Երկար տարիներ է, որ մեր արդյունաբերական ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները բարեկամաբար մրցում են հարևան Ղուկասյանի շրջանի, ինչպես նաև Վրացական ՍՍՀ Ասպինձայի և Բոգդանովկայի շրջանների արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների հետ։ Դա մեծապես նպաստում է տնտեսությունների առաջընթացին, ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը։ Փորձի փոխանակում, միասնական ջանքեր, փոխադարձ օգնություն, եղբայրական հոգատարություն— սրանք են մրցության հատկանշական գծերը։

Շրջանային կոմիտեի բյուրոյի նիստերում ու պլենումներում սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում քննարկվում են պարտավորությունների կատարման ընթացքը, մրցության կազմակերպման ու ղեկավարման վիճակը։ Շրջանային թերթի էջերում հաճախ են զետեղվում հոդվածներ, ակնարկներ և ինֆորմացիաներ սոցիալիստական մրցության ընթացքի և արդյունքների, ինտերնացիոնալ կոլեկտիվների արտադրական հաջողությունների մասին։ Նպատակային հաղորդումներ է պատրաստում նաև տեղական ռադիոն։ Կազմակերպական ու քաղաքական աշխատանքները հիմնականում ուղղվում են բազմազգ կոլեկտիվների միջև ծավալվող մրցության արդյունավետության բարձրացմանը։ Նյութապես և բարոյապես խրախուսվում են մրցության առաջավորները։

Համատեղ գործունեության մեջ, միևնույն կոլեկտիվում, սոցիալիստական մրցության հողի վրա ստեղծված բարեկամությունը նոր սխրանքների է մղում աշխատավորներին, բարձրացնում նրանց արտադրական ու քաղաքական ակտիվությունը։ Մրցող կողմերի ներկայացուցիչների յուրաքանչյուր հանդիպում, ասես, ժողովուրդների բարեկամության ու ազգերի մերձեցման մի նոր ու փայլուն ցույց է։ Մրցակիցներն այս հանդիպումների ժամանակ գոհունակությամբ ծանոթանում են աշխատանքի կազմակերպման մեթոդներին, ձեռք բերված հաջողություններին ու փորձին։ Աշխատավորներն առավել մտերմանում, հարազատանում են։ Մրցող կողմերը հավասարապես ուրախանում են յուրաքանչյուրի նվաճման համար, միասնական ուժերով վերացնում թերությունները։

Շրջանի Գյուլլիբուլաղ գյուղի կոլտնտեսությունը տարիներ շարունակ մրցում է Ախուրյանի շրջանի Մարմաշեն գյուղի կոլտնտեսության հետ։ Երկու գյուղերի կոլտնտեսականները բարեկամաբար օգնության ձեռք են մեկնում իրար։ Նրանց մրցությունը սովորական չէ, այն եղբայրական ու բարեկամական բնույթ ունի։ Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի ժամանակ Գյուլլիբուլաղի դաշտերում հոնդում են Մարմաշենի կոմբայնները։ Գյուլլիբուլաղցիները նույնպես պարտքի տակ չեն մնում իրենց բարեկամների մոտ։ Նման օրինակներ շատ կարելի է բերել մեր շրջանի գյուղերից ու տնտեսություններից։

Մեր կուսկազմակերպություններում լավ գիտեն, որ մարդիկ բնավ էլ ի ծնե հայրենասերներ չեն լինում։ Առողջ սերնդին հայրենասիրության, ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու համար հետևողական, արդյունավետ ջանքեր են հարկավոր։ Հայտնի է նաև, որ գաղափարական աշխատանքի այս



բնագավառը սեզոնայնություն չի սիրում։ Հայրենասերներ, ինտերնացիոնալիստներ, աշխատասերներ դաստիարակելու համար բովանդակալից, լուրջ գործունեություն պետք է ծավալեն գաղափարական դաստիարակությամբ զբաղվող բոլոր կազմակերպությունները։ Այդ իմաստով շրջանի դպրոցներում կուսակցական, կոմերիտական ու պիոներական կազմակերպությունները մշտապես հոգում են երիտասարդությանը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու մասին։

Կուսակցական, կոմերիտական ու պիոներական կազմակերպությունները հետաքրքրական աշխատանք են կատարում սովորողների շրջանում։ Համարյա բոլոր դպրոցներում ստեղծվել են լուսանկարային ալբոմներ, «փոքրիկ թանգարաններ»։ Ցուցադրական պարզ միջոցներով յուրաքանչյուր դպրոցական յուրացնում է այն գաղափարը, որ աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծման համար մղվող պատմական պայքարին մասնակցել են մեր երկրի տարբեր ազգերի առաջավոր մարտիկները, սոցիալիստական հասարակարգը կառուցվել է եղբայր ժողովուրդների միասնական ջանքերով։ Սոցիալիստական հայրենիքը, մեծ Հոկտեմբերի նվաճումները պաշտպանվել են մեր ժողովուրդների համառ պայքարով ու կամքով։ Շրջանի դպրոցականները նամակագրական կապեր են հաստատել ինչպես մեր երկրի, այնպես էլ սոցիալիստական մի շարք այլ երկրների դպրոցականների հետ։ Շրջկենտրոնի, Գյուլլիբուլաղի, Բանդիվանի, Օխչօղլու, Թափաքյոյի դպրոցներում պիոներներն ու կոմերիտականները պատրաստում են հատուկ վահանակներ, ալբոմներ՝ նվիրված եղբայրական հանրապետությունների և սոցիալիստական երկրների տարեդարձերին։ Շրջանի դպրոցներում զեկուցումներ ու զրույցներ են կազմակերպվել «Ժողովուրդների բարեկամությունը», «Հայկական ՍՍՀ 50 տարում», «Ադրբեջանական ՍՍՀ 50 տարում», «Ժողովրդական դեմոկրատիայի երկրների նվաճումները», «Ամասիան երեկ ու այսօր» և տասնյակ այլ թեմաներով։ Ուշադրության արժանի է նաև այն, որ բոլոր միջոցառումների ժամանակ օգտագործվում են հենց իրենց՝ դպրոցականների, ստեղծած ալբոմները, վահանակները և ցուցադրական մյուս նյութերը։

Մի շարք դպրոցներում վերջերս ստեղծվել են նաև բարեկամության ակումբներ, որոնք բավականաչափ լուրջ գործ են կատարում մատաղ սերնդին հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու ասպարեզում։ Հաճախակի են կազմակերպվում հանդիպումներ հարևան դպրոցների կոլեկտիվների միջև։ Անշուշտ, դրանք նույնպես նպաստում են նոր սերնդի բարեկամական ու եղբայրական կապերի ամրապնդմանը։ Մեր հանրապետության մի շարք արդյունաբերական ձեռնարկություններում ձեռք-ձեռքի տված, միասնական մի ընտանիքի անդամների պես, աշխատում են հայերը, ռուսները, ադրբեջանցիները, վրացիները, ուկրաինացիները և այլ ժողովուրդների ներկայացուցիչներ։ Կուսկազմակերպությունների նախաձեռնությամբ շրջանի դպրոցականները՝ կոմերիտականներն ու պիոներները, կազմակերպված ձևով հաճախ են այցելում նման ձեռնարկությունները, հանդիպում տարբեր ազգերի ներկայացուցիչների հետ, ծանոթանում նրանց լավ գործերին։ Ինչ խոսք, այդ միջոցառումը մեծապես նպաստում է դպրոցականներին ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելուն։

Կուսակցական և հասարակական կազմակերպությունները քիչ բան չեն անում նաև երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության

գործը հաջող կազմակերպելու համար։ Դասախոսություններ ու զեկուցումներ, ռադիոհաղորդումներ են կազմակերպվում այդ նպատակով։ Տեղական մամուլն իր էջերում լայն տեղ է հատկացնում այս թեմային։ Մի շարք գյուղերում ու դպրոցներում գործում են ռազմական ու աշխատանքային փառքի սենյակներ, հայրենասերների ակումբներ։ Վերջին ժամանակներս շրջկենտրոնում հուշարձան կանգնեցվեց Հայրենական մեծ պատերազմում զոհվածների հիշատակին։

Սովետական մարդը մանուկ հասակից դաստիարակվում է հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների լենինյան եղբայրության ու բարեկամության ոգով։ Մեր կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ևս անում են ամեն ինչ, որպեսզի ընտանիքում և նախադպրոցական հիմնարկություններում, դպրոցում և աշխատանքային կոլեկտիվներում, կոմերիտական ու պիոներական կազմակերպություններում, ամենուրեք կոմունիզմի կառուցողները դաստիարակվեն պրոլետարական ինտերնացիոնալիզմի, սոցիալիստական հայրենասիրության ոգով, որպեսզի անշեղորեն կենսագործվեն մեր կուսակցության XXIV համագումարի որոշումներն այս բնագավառում։

Մեր պարտքն է հիշել ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի արտահայտած հետևյալ միտքը. «Կուսակցությունն այսուհետև ևս կամրապնդի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, հետևողականորեն վարելով սոցիալիստական ազգերի ծաղկման և նրանց աստիճանական մերձեցման լենինյան կուրսը։ Կուսակցությունն այսուհետև ևս բոլոր աշխատավորներին կդաստիարակի սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի ու շովինիզմի, ազգային սահմանափակության ու սնապարծության դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով՝ ինչ ձևով էլ որ դրանք արտահայտվեն, բոլոր ազգերի և ազգությունների հանդեպ խոր հարգանքի ոգով» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը, Երևան, 1971 թ., էջ 118—119)։

**Մ. Բ. ԲԱՅՐԱՄՈՎ**

ՀԿԿ Ամասիայի շրջկոմի առաջին քարտուղար



# ԺԱՄԱՆԱԿԻ ՊԱՀԱՆՋՆԵՐՈՎ

Մեր հասարակության կյանքի ղեկավարման և մասսաների շրջանում տարվող քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացումն անխզելիորեն կապված է կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության բարելավման հետ։ Կուսակցությունը մեծ կարևորություն է տալիս այն բանին, որ կուսակցական, պետական, տնտեսական, կուլտուր-դաստիարակչական և հասարակական աշխատանքի բոլոր տեղամասերը գլխավորեն քաղաքականապես հասուն, գործիմաց, ունակ կազմակերպիչներ։

Ղեկավարվելով կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության լենինյան սկզբունքներով, Արտաշատի շրջանային կուսկազմակերպությունը որոշակի աշխատանք է կատարել կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառները բարձրորակ և գործունյա կադրերով ամրապնդելու, նրանց գաղափարական կոփվածության և դաստիարակության գործն ամուր հիմքերի վրա դնելու ասպարեզում։ Նկատելիորեն բարձրացել է բոլոր օղակների ղեկավար կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։

Կուսկազմակերպությունների ամենօրյա հոգատարության շնորհիվ շրջանի կոլտնտեսություններում, արդյունաբերական ձեռնարկություններում ու հիմնարկություններում աճել է ղեկավար կադրերի և մասնագետների մի ստվար ջոկատ, որն իրականացնում է կուսակցության ու կառավարության կանխագծումները, հաջողությամբ լուծում տնտեսությունների առջև ծառացած խնդիրները։ Այժմ մեր շրջանի ժողովրդական տնտեսության բնագավառում աշխատում են բարձրագույն կրթությամբ ավելի քան 80 գյուղատնտես, 73 բժիշկ, 35 ինժեներ-մեխանիկ, 42 անասնաբույժ, 39 անասնաբույժ, 490 ուսուցիչ, 15 տնտեսագետ, 19 տեխնոլոգ և մեծ թվով միջնակարգ կրթությամբ տարբեր բնագավառների մասնագետներ։ Կասկածից վեր է, որ մասնագետ կադրերի այս հեղինակավոր ջոկատն ի վիճակի է հայտաբերելու և կյանքի կոչելու շրջանի բոլոր բնագավառների ռեզերվներն ու հնարավորությունները, բարձրացնելու աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված գործի կատարման նկատմամբ։

Շրջանի ղեկավար բազմաթիվ կադրեր, ՍՄԿԿ քաղաքականությունն իրագործելու բնագավառում ցույց են տալիս գործարարություն և կազմակերպվածություն։ Պատասխանատվությամբ են աշխատում Դալար գյուղի կոլտնտեսության ղեկավար և միջին օղակի կադրերը։ Այստեղ առանձնակի ուշադրություն է նվիրվում գյուղատնտեսության հիմնական ճյուղի՝ խաղողագործության, զարգացմանը։ Մինչև 1966 թվականը կոլտնտեսությունը չուներ հենասյունային այգիներ, իսկ թմբային այգիները մշակելու և բարձր բերք ստանալու համար պահանջվում էին հսկայական ծախսեր և ֆիզիկական ծանր աշխատանք։ Խաղողագործության զարգացման և դրա աշխատատար պրոցեսների մեքենայացման հարցերը դրվեցին առաջին պլանի վրա։ Կադրերը ծավալեցին դժվարին և որոնումներով լի գործունեություն։ Խելամիտ որոնումներից հետո նրանք անցան կոնկրետ գործի և հասան որոշակի արդյունքի։ Անցած հինգ տարիների ընթացքում հիմնվեց 72 հեկտար հենասյունային մեքենահարմար այգի։ Նոր այգիների միջին բերքատվությունն անցյալ տարի կազմեց 140 ցենտներ, մինչդեռ նախկինում հեկտարից ստացվում էր 90 ցենտներ բերք։

Կոլտնտեսության կադրերի խելամիտ գործունեության շնորհիվ մեքենայացվեցին այգիների տնկման ու մշակության բոլոր պրոցեսները։ Խաղողի այգիների աշխատատար պրոցեսների

մեքենայացումը և Թմբային այգիների վերակառուցումը հնարավորություն ընձեռեցին անցած հնգամյակում կրկնապատկել տնտեսության եկամուտները: Այդ նվաճումների մեջ անուրանալի է կոլտնտեսության նախագահ Տ. Հուսիկյանի, կուսկազմակերպության քարտուղար Ա. Սարգսյանի, գյուղատնտես Կ. Մանուկյանի, բրիգադավարներ Գ. Մեչլումյանի, Պ. Պետրոսյանի, Գ. Եղիազարյանի և մյուս կադրերի ներդրումը: Պատահական չէր, որ կուսշրջկոմի բյուրոն վերջերս ուսումնասիրեց Դալարի խաղողագործների աշխատանքի դրական փորձը և հանձնարարեց սկզբնական կուսկազմակերպություններին՝ այն լայնորեն արմատավորել շրջանի տնտեսություններում:

Դալարի օրինակը եզակի չէ: Շրջանի տնտեսություններում, հիմնարկություններում ու ձեռնարկություններում քիչ չեն նախապատրաստված, գաղափարապես կոփված, փորձառու կադրերը, որոնք բարեխղճորեն ու հմտորեն են կատարում իրենց հանձնարարված գործը: Խորին ակնածանքով ու հպարտությամբ կարելի է արտահայտվել Այգեզարդի կոլտնտեսության նախագահ, Սոցիալիստական աշխատանքի հերոս Հ. Սարգսյանի, Վերին Արտաշատի կոլտնտեսության նախագահ, Լենինի շքանշանակիր Պ. Պետրոսյանի, Ջրաշենի կոլտնտեսության նախագահ Ջ. Նիկողոսյանի, գործիքաշինական գործարանի դիրեկտոր Վ. Իվանյանի և շատ ուրիշների մասին:

Կուսակցությունը պահանջում է ղեկավար կադրերի ընտրության ու տեղաբաշխման ժամանակ առաջին հերթին հաշվի առնել նրանց բանիմացությունը, քաղաքական և գործնական հատկանիշները: Կուսշրջկոմը կադրերին գնահատում է ըստ իրենց գործունեության արդյունքի, ձգտում, որպեսզի պատասխանատու տեղամասերում գտնվեն գործունյա, կազմակերպական ունակություններով օժտված, կուսակցության և կառավարության դիրեկտիվները, վերադաս կուսկազմակերպությունների ու սեփական որոշումները կյանքում անշեղորեն կատարելու համար ունակ մարդիկ: Անցած երկու տարվա ընթացքում հարկ է եղել գործից ազատել կոլտնտեսությունների, գյուղական սովետների որոշ նախագահների, բրիգադավարների, ֆերմաների վարիչների և մի շարք այլ ղեկավար աշխատողների: Այս փաստերի ետևում չպետք է վարչարարություն փնտրել. այստեղ խոսքը վերաբերում է կուսակցական սկզբունքայնությանը: Օրինակ, երկար տարիներ Բաղրամյանի և Բերքանուշի կոլտնտեսությունների գործերի վիճակը չէր գոհացնում մեր պահանջները. Թույլ էր աշխատանքային կարգապահությունը, ցանքի, մշակության ու բերքահավաքի ագրոտեխնիկական ժամկետները խախտելու պատճառով ստացվում էր ցածր բերք, տնտեսությունները տարին փակում էին վնասով: Նախկին ղեկավարներին արված նախազգուշացումներն էական փոփոխություններ չմտցրին վիճակի մեջ: Ավելին, նրանք ամեն կերպ փորձում էին արդարանալ, Թերությունները բացատրել նրանով, որ իրենց հողերը նվազ բերքատու են և ոչ մի կերպ հնարավոր չէ հասնել լավ արդյունքի: Բայց, իրականում, այդ տնտեսությունների նախագահները՝ Գ. Եղիազարյանը և Ի. Սարգըսյանը, բռնել էին գործը մի կերպ յոլա տանելու ուղին:

Պարզ է, որ հարկավոր էր կտրուկ միջոցների դիմել: Անցյալ տարվա սկզբին Բաղրամյանի կոլտնտեսության նախագահ ընտրվեց Ռ. Աղայանը, իսկ Բերքանուշի՝ Ֆ. Արզումանյանը, որոնք ունեն ղեկավար աշխատանքի փորձ, պարտքի և պատասխանատվության բարձր ըմբռնում: Իսկ դա չէր կարող բարերար ազդեցություն չթողնել գործերի ընդհանուր վիճակի վրա: Կարճ ժամկետում այս տնտեսություններում ամրապնդվեց աշխատանքային կարգապահությունը, հատուկ ուշադրություն նվիրվեց գյուղատնտեսական տեխնիկայի ճիշտ օգտագործմանը, գյուղատնտեսական բոլոր գործերը կատարվեցին ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում: Եվ ահա արդյունքը. անցավ ընդամենը մեկ և կես տարի, ու այդ տնտեսությունները քայլեցին վերելքի ճանապարհով:

Պետք է խոստովանել, սակայն, որ մեր ղեկավար կադրերի շարքերում մինչև օրս էլ կան մարդիկ, որոնք չեն գտնվում իրենց կոչման բարձրության վրա: Նովլլուի, Ներքին Ղամարլուի, Բուրաստանի, Նշավանի, Դիտակի, Այգավանի, Նորաշենի, Վարդաշենի կոլտնտեսությունների նախագահները չեն բավարարում այսօրվա մեր պահանջները, աշխատում են իրենց հնարավորություններից շատ ցածր, չեն գտնում իրենց վստահված տնտեսությունների ետ մնալը հաղթահարելու միջոցը: Վերոհիշյալ կոլտնտեսությունների, մանվածքայինտրիկոտաժ կոմբինատի, № 16 շարժական մեքենայացված շարասյան ղեկավարների սովորույթն ու բնավորությունն են դարձել սեփական անձեռնհասությունը վերագրել այս կամ այն սուբյեկտիվ և օբյեկտիվ պատճառներին:

Կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ ապահովել տնտեսությունների և կազմակերպությունների ղեկավարների այնպիսի ընտրություն, որպեսզի արտադրական տեղամասերում գտնվեն քաղաքականապես հասուն, արտադրության կազմակերպման և կառավարման հիմունքները կատարելապես իմացող և ղեկավարման տնտեսագիտական մեթոդները տիրապետող մարդիկ:



Շրջանի ընդհանուր վերելքի գործում մեծ դեր են խաղում միջին օղակի կադրերը և մասնագետները: Մեզ մոտ աճել են այդ օղակի կարող կադրեր: Բրիգադավարներ Մ. Աբրահամյանը (Այգեզարդ), Ս. Սարգսյանը (Քաղցրաշեն), Տ. Շմավոնյանը (Վ. Արտաշատ), Ստ. Խուդոյանը (Ն. Դվին), ֆերմայի վարիչ Մ. Ավետիսյանը (Ն. Ջրաշեն), աշխղեկ Ա. Հովհաննիսյանը (№ 2 շինվարչություն) և շատ ուրիշներ արտադրության հմուտ կազմակերպիչներ են, իրենց գործի գիտակներ: Հենց նրանք են կազմակերպում գործը, մոբիլիզացնում աշխատավորների ջանքերը՝ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու համար:

Այժմ, երբ խնդիր է դրվում գյուղատնտեսությունը զարգացնել գիտական հիմունքներով, ամրապնդել գիտության ու գյուղատնտեսության սերտ կապը, ավելի է բարձրանում այս բնագավառի մասնագետների դերը: Շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ ավելի քան 200 մասնագետներ: Նրանցից շատերն ունեն նորի զգացում, պայքարում են գյուղատնտեսական գիտության նվաճումների և արտադրության առաջավոր փորձի արմատավորման համար: Եվ որտեղ մասնագետներն ընթանում են ժամանակի պահանջներին համաքայլ, այնտեղ գործերը միշտ էլ բարեհաջող են լինում: Այս տեսակետից ուսանելի է Այգեզարդի կոլտնտեսության գյուղատնտեսության մասնագետների գործունեությունը: Կադրերի ստեղծագործական որոնումների, նրանց կողմից արտադրության ճիշտ կազմակերպման ու ղեկավարման շնորհիվ կոլտնտեսությունը դաշտավարության և անասնապահության բնագավառում տարեցտարի ձեռք է բերում նորանոր հաջողություններ: Այստեղ խաղողի 260 հեկտար այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 165—175 ցենտներ միջին բերք կամ 60—70 ցենտներով ավելի, քան շրջանի միջին ցուցանիշն է: Բարձր է նաև անասնապահության մթերատվությունը: Կովերի միջին կաթնատվությունը կազմում է 2550—2600 կգ, որը 700 կգ-ով գերազանցում է շրջանի միջին մակարդակը:

Սակայն մի շարք կոլտնտեսություններում գյուղատնտեսական մասնագետներն անբավարար են աշխատում, որի հետևանքով ցածր է դաշտավարության և անասնապահության վարման կուլտուրան, լիովին չեն իրականացվում ագրոտեխնիկական և զոո-անասնաբուժական միջոցառումները: Այսպես, Ներքին Ղամարլուի կոլտնտեսության գյուղատնտես Ս. Սամվելյանը, ճիշտ է, ունի 37 տարվա աշխատանքային փորձ, սակայն վատ է կատարում իր մասնագիտական պարտականությունները, չի հետևում ագրոտեխնիկական կանոնների կիրառմանը, որի պատճառով ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, տնտեսությունը տևականորեն ետ է մնում: Ազատավանի կոլտնտեսության գյուղատնտես Հմ. Դանիելյանը երկար տարիներ աշխատել է նաև Ջրահովտի, Այգեստանի, Ոստանի և այլ կոլտնտեսություններում, սակայն բնավ իրեն չի արդարացրել: Նրա համար բնավորության գիծ է դարձել անպատասխանատվությունը: Զարմանալին այն է, որ Ազատավանի կոլտնտեսության վարչությունն ու սկզբնական կուսկազմակերպությունը հաշտվում են Դանիելյանի անբավարար աշխատանքի հետ կամ չեն օգնում նրան՝ վերակառուցելու իր գործունեությունը:

1947 թվականից Մրգավանի կոլտնտեսությունում տարբեր պաշտոններ է վարում Կ. Ավետիսյանը: Այդ տարիներին, հիմնականում աշխատելով որպես դաշտավարական բրիգադայի բրիգադավոր, նա իրեն չի արդարացրել, ստացել է ցածր բերք: Մինչդեռ, կոլտնտեսության կուսկազմակերպությունն ու վարչությունը, բրիգադայի գործերը ձախողելու համար, փոխանակ աշխատանքից ազատելու, նրան փոխադրել են մի բրիգադայից մյուսը՝ կարծելով այդպիսով անբանին կարելի է գործունյա դարձնել: Իսկ Ավետիսյանը, օգտվելով ղեկավարների թողտվությունից, չի մտածել փոխելու իր աշխատանքի ոճը, ձևն ու մեթոդը: Նույն բանը կարելի է ասել նաև Մխչյանի կոլտնտեսության բրիգադավար Ա. Մաթևոսյանի մասին:

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, ելնելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներից, ջանում են բարձրացնել պահանջկոտությունը միջին օղակի կադրերի նկատմամբ, նրանց դաստիարակել կուսակցական ու պետական բարձր պատասխանատվության ոգով, հասնել այն բանին, որպեսզի կադրերն անթերի կատարեն հանձնարարված գործը, իրենց գործունեությունը վերակառուցեն այսօրվա պահանջներին համապատասխան: Մենք միաժամանակ ներողամտություն հանդես չենք բերում այն կադրերի նկատմամբ, որոնք սիստեմատիկաբար ձախողում են. իրենց հանձնարարված բնագավառների գործը, չեն կենսագործում առաջադրված խնդիրները:

ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը մարդկանց բարձր գիտակցականության և պատասխանատվության վրա հիմնված կարգապահությունը համարեց մեր կարևորագույն խնդիրնե-

## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ



# ՌՈՒՍ ՀԱՆՃԱՐԵՂ ՎԻՊԱՍԱՆԸ

(Ֆ. Մ. ԴՈՍՏՈԵՎՍԿՈՒ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Դոստոևսկու հանճարեղությունն անվիճելի է, նրա տաղանդն իր պատկերման ուժով թերևս հավասար է միայն Շեքսպիրին,— ասել է Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկին: Օժտված լինելով ստեղծագործական մեծ ունակություններով, Դոստոևսկին, սակայն, իր երկասիրություններում հանդես բերեց արտասովոր հակասություններ, դրանց հաղորդեց օրինակը չունեցող երկվություն: Մարդու, նվաստացածների ու վիրավորվածների հանդեպ տածած իր բուռն սերը պաճուճեց կյանքի տերերի և ուժեղների առաջ խոնարհվելու, հնազանդվելու հետադիմական քարոզով:

Նրա ստեղծագործության մեջ ակնբախ այդ հակասությունները ո՛չ միայն անձնական կյանքի արդյունք են, այլ, առաջին հերթին՝ պայմանավորված են պատմական ժամանակաշրջանով և ունեն սոցիալ-գաղափարական խոր պատճառներ: Հանճարեղ գրողն ապրել ու ստեղծագործել է այնպիսի մի ժամանակաշրջանում, երբ զարգացող կապիտալիզմի հարվածների տակ խորտակվում էին նահապետական հին սովորություններն ու բարքերը, ֆեոդալական ու ճորտատիրական հարաբերություններին փոխարինելու էր գալիս նորը, կապիտալիստականը՝ հակամարդկային ու գիշատիչ իր հատկություններով: Դոստոևսկին ատում էր ճորտատիրությունը, գտնելով, որ դրա հետևանքն են քաղցը, աղքատությունը, գոյության դաժան պայքարը, որոնք, ըստ նրա, մարդկային բոլոր արատների աղբյուրն էին, միաժամանակ նա սարսափում էր կապիտալիզմից, համարելով այն դժբախտություն Ռուսաստանի համար: Լինելով քաղքենիության, ռազնոչին մտավորականության ներկայացուցիչը՝ սոցիալական հակասությունների լուծման միջոցը նա համարում էր ոչ թե պայքարը, այլ տնտեսական ռեֆորմները: Ճորտատիրական-ֆեոդալական կարգերին սպառնացող այդ ճգնաժամային շրջանում Դոստոևսկին արտացոլեց քաղաքային մանր բուրժուական, արհեստավորական, խեղճ ու մոռացված մարդկանց, մանր չինովնիկների, տարատիճան մտավորականության ապրումները: Նրանք ցավագին էին կրում զարգացող կապիտալիզմի քայքայիչ ազդեցությունը և տանջվելով, հուսահատվելով, ելք չգտնելով հակասությունների փակուղուց, ի վերջո, խոնարհվում էին ուժեղների, կյանքի տերերի առաջ: Դոստոևսկին իր ստեղծագործություններում արտահայտեց այդ մարդկանց տանջանքներն ու ապրումները, ջղաձգությունները, հուսահատությունը, որոնք նրա ստեղծագործություններին հաղորդեցին խոր ողբերգականություն: Դոստոևսկու կյանքի ուղին մատնում է նրա հայացքների էվոլյուցիան, դրսևորում նրա խոր հակասություններն ու որոնումները և՛ որպես մտածողի, և՛ որպես խոշոր արվեստագետի:

I

Ֆյոդոր Միխայլովիչ Դոստոևսկին ծնվել է 1821 թ. նոյեմբերի 11-ին, Մոսկվայում: Նրա հայրը բժիշկ էր Մոսկվայի չքավորների հիվանդանոցում: Մռայլ, դաժան ու ժլատ, հարբեցող այդ մարդն անկարող էր բարեկեցիկ կյանք ստեղծելու իր մեծ ընտանիքի համար: Մանկության մռայլ տարիները ջերմացրել է քնքուշ, արվեստասեր մոր գուրգուրանքը, որից այնպես վաղ են զրկվել Դոստոևսկիները: Դոստոևսկու մանկությունն ու պատանեկությունն անցել են կարիքի մեջ. դեռևս պատանեկան տարիներից նա զգացել է անապահով կյանքի ծանրությունը, դառնությունները: 1834 թ. նա ընդունվում է Մոսկվայի մասնավոր մի պանսիոն՝ սովորելու: Այդ շրջանից էլ նրա մեջ զարգանում է հետաքրքրասիրությունը կրթության, գրականության նկատմամբ: Երեք տարի սովորելուց հետո Դոստոևսկին մեկնում է Պետերբուրգ և շարունակում ուսումը ռազմաինժեներական ուսումնարանում: Այստեղ նա հափշտակվում է գրականությամբ, շատ է կարդում ռուս, եվրոպական հեղինակների երկերը: Պուշկինը դառնում է նրա ամենասիրելի հեղինակը: Նա մեծ հափշտակությամբ է կարդում Լերմոնտովի, Գոգոլի, Գյոթեի, Շիլլերի, Բալզակի, Ժորժ Սանդի ստեղծագործությունները: Ինժեներական ուսումնարանում, ինչպես պատմում են ժամանակակիցները, Դոստոևսկին արտաքուստ հնազանդ էր, խաղաղ, համակերպվող, սակայն երբեք իր համոզմունքը չէր զիջում ու մեկուսացած էր, մռայլ և ինքնուրույն ստեղծագործության փորձեր էր անում: Եվ դեռ այդ տարիներին նա գրել է. ուսումնասիրել մարդկանց կյանքը— այս է իր առաջին նպատակն ու խնդիրը:

1843 թվականին, ավարտելով ռազմա-ինժեներական ուսումնարանը, Դոստոևսկին աշխատանքի է անցնում ինժեներական գծագրության գլխավոր վարչությունում. այստեղ նա երկար չի մնում: Մի տարի անց թողնում է ծառայությունը և ամբողջովին նվիրվում գրականությանը: Սկզբում զբաղվում է թարգմանություններով: Թարգմանական գործերից նրա համար վճռական նշանակություն է ունեցել Բալզակի ռեալիստական ստեղծագործության գլուխ-գործոցի՝ Էժենի Գրանդեի թարգմանությունը, որը նրա համար վիպական արվեստի դպրոց է եղել: Թարգմանություններին հաջորդել են ինքնուրույն ստեղծագործությունները. չգրելը նրա համար հավասար է եղել մահվան: Թեկուզ բանտարկված,— ասել է նա հետագայում, — բայց միայն գրիչը ձեռքիս:

Ապրելով Պետերբուրգում, Դոստոևսկին տեսնում է մեծ քաղաքի սոցիալական բախումները, այն, ինչպես փողի իշխանությունն իրեն է ենթարկում ամեն ինչ, և խեղճ ու աղքատ մարդու համար դժվար է ապրել այդ պայմաններում, առավել ևս՝ հայտնի դառնալ: Այդ շրջանի իր ապրումներն է արտացոլել նա Խեղճ մարդիկ վիպակում, որը տպագրվել է 1846 թ. Նեկրասովի խմբագրությամբ հրատարակվող Պետերբուրգյան ժողովածու ալմանախում. այն անմիջապես գրավել է գրական շրջանների ուշադրությունը: Կյանքի կողմից հալածված, վիրավորված ու տրորված մարդու ողբերգությունն է պատկերված այստեղ այնպիսի ցնցող խորությամբ, որ երբ հիանալի ասմունքող հեղինակն իր թավ բասով կարդացել է այն իր ընկերներին, շատերը հեկեկացել են, Նեկրասովի դեմքը ողողվել է արցունքներով... Իսկ ի՞նչ կասի ժամանակի ամենաանաչառ, խստաշունչ քննադատը՝ Վ. Գ. Բելինսկին: Երիտասարդ Նեկրասովը, ձեռագիրն առած, ներկայանում է քննադատին, ավետելով նրան «նոր Գոգոլի» մուտքը ռուս գրականության անդաստանը:

Հեղափոխական դեմոկրատիայի առաջնորդ մեծ քննադատը, որն այնպես կասկածամտորեն էր ընդունել Նեկրասովի հիացական հայտարարությունը, գործը կարդալուց հետո ոգևորված, տենդագին վիճակում էր: Նրան հիացրել ու զարմացրել էր գրողի՝ մի քանի բառով այնպես կենդանի տիպեր կերտելու մեծ վարպետությունը: «Ինչպիսի՜ խոր, ջերմ կարեկցանք աղքատության, տառապանքի հանդեպ:

Ասացե՛ք, անշուշտ հեղինակն աղքատ է և շատ է տառապել: Քսան տարեկան հասակում այսպիսի բան կարող է գրել միայն այնպիսի հանճարը, որն ընկալման ուժով մի վայրկյանում ընդգրկում է այն, ինչ սովորական մարդուն կհաջողվի երկար տարիների փորձով»:

Խեղճ մարդիկը համարելով սոցիալական վեպի առաջին փորձը՝ մեծ քննադատը գրել է. «Փառք ու պատիվ երիտասարդ պոետին, որի մուսան սիրում է սարայներում ու նկուղներում ապրող մարդկանց և նրանց մասին ասում է. «ոսկեզօծ ապարանքների» բնակիչներին՝ չէ՞ որ սրանք էլ են մարդիկ, ձեր եղբայրները»: Պոե՛տ... ինչպես այս, նույնպես և իր լավագույն գործերն այնքան հոգեբանական են, այնպիսի պոետականությամբ է արտացոլել մարդկային հոգու ողբերգությունը, որ ժամանակակիցները նրան պոետ են համարել. մտքերը նրա մոտ ժայթքել, հեղեղվել են ջրվեժի պես. նա միայն համբերություն չուներ չափավորելու իր գրվածքները,— ասում էին նրա մասին: Միշտ էլ իրեն պոետ է համարել և ինքը՝ Դոստոևսկին— պոետների մեծ երկրպագուն:

Խեղճ մարդիկ վիպակում պատկերված են խեղճ ու մոռացված չինովնիկ Մակար Դևուշկինի կերպարը, նրա ապրումները, մարդկային վիրավորված արժանապատվությունը: Նրա և դաժան կյանքից հալածված Վարվառա Դոբրոսելովայի նամակագրությամբ հեղինակը բացահայտել է Պետերբուրգի սոցիալական հակասությունները, ցույց տվել, թե որքան ծանր է կյանքն այն մարդկանց համար, ովքեր տառապում են կարիքի ու զրկանքի մագիլներում, խորապես ապրում սոցիալական ողբերգություն: Քննադատական, հումանիստական այս վիպակը պատկանում է գոգոլյան ուղղությանը, հանդիսանում նրա ռեալիստական տրադիցիաների շարունակությունն ու զարգացումը: Ինքը՝ Դոստոևսկին, ցույց տալով իր ստեղծագործական կապն այդ տրադիցիաների հետ, ասել է. մենք բոլորս դուրս ենք եկել Գոգոլի Շինել վիպակից:

Բայց Դոստոևսկին հավատարիմ չմնաց այդ տրադիցիաներին: Խեղճ մարդկանց հաջորդած Կրկնակը, Տիրուհին գործերում նա հեռացավ քննադատական ռեալիզմից, սկսեց պաշտպանել իր արվեստին անհարիր հայացքներ, հեռացավ Բելինսկու առաջավոր գաղափարներից: Այս վեճում, բացի էսթետիկական հակամարտ հայացքներից, վճռական դեր է խաղացել Դոստոևսկու հասարակական-գաղափարական հայացքների խորթացումը Բելինսկուց, նրա աստվածավախությունը: Նրա կարծիքով բռնի ուժերը, ողջ թշվառությունը կարելի էր վերացնել աղոթքների, խնդրագրերի միջոցով, մինչդեռ Բելինսկին գտնում էր, որ իսկական արվեստն արտացոլում է ժողովրդի կյանքը և չի կարող հեղափոխական չլինել. այն սովորեցնում, ազատագրության ուղի է ցույց տալիս մարդկանց. ուրեմն, գրողն ինքը ևս հեղափոխական պետք է լինի և ոչ թե ապավինի Քրիստոսին: Սակայն Դոստոևսկին չկարողացավ Քրիստոսին զոհել սոցիալիզմի գաղափարներին, և խզվեցին նրա ու Բելինսկու հարաբերությունները: Մեծ քննադատը խիստ խոսքեր ասաց Դոստոևսկու նոր գործերի մասին՝ ցույց տալով դրանց անառողջ տենդենցները:

1846 թ. գարնանը, Նևսկի պողոտայում, Դոստոևսկուն մոտեցավ մի անծանոթ և՝

— Թույլ տվեք հարցնել՝ ինչպիսի՞ն է ձեր ապագա երկի գաղափարը:

40-ական թթ. ազատագրական շարժման ականավոր գործիչ, համոզված ֆուրիեական, Ռուսաստանի առաջին սոցիալիստական խմբակի կազմակերպիչ, հռետոր, պրոպագանդիստ-գիտնական Մ. Վ. Պետրաշևսկին էր անծանոթը: Այսպես ծանոթացան նրանք և 1847 թ. Դոստոևսկին հարեց պետրաշևականների խմբակին, հաճախ մասնակցելով նրանց հավաքույթներին, այսպես կոչված՝ «ուրբաթներին»: Հանձին պետրաշևականների Դոստոևսկին տեսավ ժամանակի առաջադեմ հերոսներին և միացավ նրանց: Պետրաշևականները սոցիալական ու գաղափարական տեսակետից միատարր չէին, բայց հակառակ էին Ռուսաստանում իշխող սոցիալ-քաղաքական պայմաններին, միապետությանը, նորտատիրական կարգերին: Դոստոևսկին այդ խմբակի պարապմունքներից մեկում կարդում է Բելինսկու նշանավոր նամակը Գոգոլին, որտեղ բացարձակ արտահայտված էր ատելությունը տիրող կարգերի նկատմամբ. նա մասնակցում էր խմբակի՝ գաղտնի տպարանի կազմակերպման փորձին:

Պետրաշևսկու խմբակում ուսումնասիրում և մասսայականացնում էին ուտոպիական սոցիալիզմի գաղափարները. մենք մահվան ենք դատապարտել ներկա հասարակական կենցաղը, — հայտարարում էր Պետրաշևսկին,— անհրաժեշտ է արդեն դատավճիռն ի կատար ածել: Երբ Ապոլոն Մայկովին Դոստոևսկին առաջարկում է միանալ իրենց միությանը, որը պատրաստվում էր հեղաշրջել Ռուսաստանը, մերժելով այդ առաջարկը՝ Մայկովն ասում է. «Ձեզ ևս խորհուրդ չեմ տալիս այդպիսի բան անել. ի՞նչ քաղաքական գործիչներ ենք մենք, մենք պոետներ ենք, գեղագետներ... մի՞թե մենք պիտանի ենք հեղափոխությանը»: Դոստոևսկին երբեմն այնպիսի կրակոտ ելույթներ էր ունենում, որ թվում էր, թե պատրաստ է կարմիր դրոշը ձեռքին դուրս գալ հրապարակ, առաջնորդել մասսաներին:



Մատնության պատճառով Պետրաշևսկու խմբակի 39 անդամների հետ 1849 թ. ձերբակալվում է և Դոստոևսկին: Նրա կենսագրության ամենափայլուն էջերից են գրավոր ցուցմունքները չորսամսյա դատավարության ժամանակ: Ցուցմունքներում նա ջանում է պաշտպանել իր ընկերներին, հանձն առնելով այնպիսի արարքներ, որոնք սպառնում էին կախաղան: Նա դատապարտում է տիրող կարգերը, մերկացնում միտքն ու խոսքը կաշկանդողներին, իր դժգոհությունը հայտնում նիկոլայան ռեժիմից: Դոստոևսկին ևս դատապարտվում է մահապատժի և միայն մահվան հրապարակում է հայտարարվում, որ մահապատիժը փոխարինվել է չորս տարվա տաժանակրությամբ:

1845 թ. դեկտեմբերի 25-ի գիշերը շղթայակապ Դոստոևսկուն ուղարկում են Սիբիր: Օմսկի տաժանակրության բերդում չորս տարի մնալուց հետո նրան փոխադրում են Սեմիպալատինսկի դիսցիպլինար ջոկատը՝ որպես շարքային զինվոր. հինգ տարի անց, սպայական աստիճան ստանալով, նա թողնում է զինվորական ծառայությունը և թույլտվություն ստանում փոխադրվելու կենտրոնական Ռուսաստան: Սկզբում նա ապրում է Տվերում, իսկ հետո՝ Պետերբուրգում: Տասը տարիների սիբիրյան կյանքը, տաժանակիր աշխատանքը, շարքային զինվորի դառը վիճակը քայքայում են Դոստոևսկու առանց այն էլ թույլ առողջությունը, ուժեղացնում նրա սոսկալի հիվանդությունը (ընկնավորությունը): Նրա մռայլ ու մելամաղձոտ տրամադրությունը վկայում էր, որ կրած ծանր պատիժն անջնջելի հետք է թողել երազներով ապրող գրողի աշխարհայացքի վրա, խորացրել նրա հետադիմական հայացքները: Դոստոևսկին դադարում է հավատալ սոցիալիզմի ու հեղափոխության հաղթանակին, այն գաղափարներին, որոնցով նա տարվել էր պատանեկան տարիներին. բայց այդ դաժանությունները անկարող էին մեռցնելու նրա մեջ ստեղծագործական ոգին:

Դոստոևսկու վերադարձը Պետերբուրգ 1860 թ. զուգադիպում է Ռուսաստանում ծավալվող հեղափոխական դեմոկրատական շարժմանը, որի նկատմամբ խիստ թշնամական վերաբերմունք ուներ նա: Իր եղբոր՝ Միխայիլ Դոստոևսկու հետ միասին 1861—1865 թթ. նա հրատարակում է «Время», ապա «Эпоха» պարբերականները, որոնց մեջ նա հանդես է գալիս ընդդեմ նորտատիրական կարգերի ճգնաժամը հեղափոխական ճանապարհով լուծելու ծրագրի և բանակռիվ վարում Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի ղեկավարած «Современник» ամսագրի դեմ, պաշտպանում տիրող կարգերը: Այդ պարբերականներում նա տպագրում է մի շարք ստեղծագործություններ, վեպեր ու վիպակներ: Ուշագրավ է, հատկապես, դեռևս Սիբիրում հղացած Նոթեր մեռյալ տնից գրվածքը: Այստեղ Դոստոևսկին մեծ տաղանդով նկարագրել է ցարական տաժանակրությունն իր վայրագ դաժանությամբ, բերդի բնակիչների կյանքն ու կենցաղը, տանջանքներն ու ապրումները, նրանց տարբեր բնավորությունները: Այս բոլորը կատարված են այնպիսի ռեալիստական մերկացմամբ ու հոգեբանական խոր նկարագրություններով, որ օբյեկտիվորեն այդ գործը դառնում է ցայտուն մի մեղադրական տիրող միապետական կարգերի դեմ: Քարոզելով հեզություն և մարդկանց մեղքերի թողություն, բողոքելով մարմնական պատիժների ու դաժանությունների դեմ, Դոստոևսկին միաժամանակ արտահայտում է իր սերը մարդու, ժողովրդի նկատմամբ, համակրանքն ու վշտակցությունը նրա տանջանքներին:

«Որքա՜ն երիտասարդություն է անտեղի թաղված այս պատերի մեջ,— բացականչում է Դոստոևսկին,— չէ՞ որ պետք է ամեն ինչ ասել, կարող է պատահել, որ դա ամենատաղանդավոր, ամենաուժեղ մասն է մեր ողջ ժողովրդի... Անտեղի են խորտակվել հսկա ուժերը, խորտակվել են աննորմալ-ապօրինի, անդառնալի կերպով: Իսկ ո՞վ է մեղավոր, իրոք, ո՞վ է մեղավոր»,— տարակուսանքով հարցնում է Դոստոևսկին և չի կարողանում պատասխանել իր առաջադրած հարցին: Այդ շրջանի մյուս նշանավոր գործում՝ Նվաստացածներն ու վիրավորվածները վեպում, Դոստոևսկին վերստին առաջադրում է սոցիալական հակասության հարցը, ցույց տալիս թե ինչպես ուժեղները, տերերը անպատվում, հալածում են թույլերին, չքավորներին: Սակայն Դոստոևսկին անկարող է այդ հակասություններից դուրս գալու ուղիներ նշել:

Մեծ արվեստագետի հայացքով Դոստոևսկին դիտում է կյանքի հակասությունները, սոցիալական անարդարությունները, երկրային ողջ չարիքը, բայց այդ ամենի դեմ պայքարելու փոխարեն նա քարոզում է քրիստոնեական հեզություն, հնազանդություն... Այդ հետադիմական տրամադրությունները նրա մեջ ավելի խորանում, ցայտուն են արտացոլվում հետագա տարիների ստեղծագործություններում:

## II

Դոստոևսկին արդեն ճանաչված գրող էր, բայց նյութական կարիքը հաճախ ստիպում էր

նրան շտապել, առանց համապատասխան գրական մշակման տպագրության հանձնել իր գրվածքները՝ կանխավ ստացած ավանսների դիմաց: Ահա թե ինչու նա այնպես հաճախ գանգատվել էր իր նամակներում. «Ո՛չ, անկարելի է այդպես գրել գեղարվեստական գործը— վերցրած պատվերի դագանակային ճնշման տակ, և ոչ թե այլ՝ ազատ ժամանակ»: Ձնաշած նյութական ծանր պայմաններին, 1866 թ. Դոստոևսկին հրատարակում է իր լավագույն գրվածքը՝ Ոճիր և պատիժ, որը համակված է տառապող մարդկության հանդեպ խոր վշտակցությամբ, տիրող կյանքի նկատմամբ բուռն զայրույթով: Այդ վեպը համաշխարհային գրականության լավագույն գործերից է, որտեղ հեղինակը բացահայտել է կապիտալիստական հասարակության հակամարդկային էությունը, ստեղծել սոցիալական անհավասարության ցնցող պատկերներ: Վեպի գլխավոր հերոսը՝ ուսանող Ռոդիոն Ռասկոլնիկովը, աղքատության, կարիքի ազդեցության տակ ստեղծում է անարխիստական տեսություն— ուժեղ անհատը, որն իրավունք ունի հանցանք գործելու, հանցանքը համարում է բողոք տիրող անարդարության դեմ: Ռասկոլնիկովն սպանում է պառավ վաշխառուին և նրա քրոջը, հափշտակում նրանց հարստությունը, բայց տանջալից ապրումներ է ունենում իր գաղափարական մոլորությունների համար և, ի վերջո, քրիստոնեական մորալի ազդեցությամբ խոստովանում է իր հանցանքը, դատապարտվում աքսորի, ուր նա բարոյական վերածնունդ է ապրում:

Ռասկոլնիկովին ուղեկցում է Սոնյա Մարմելադովան, որը վաճառում է իր մարմինը, փոքր եղբայրների ու քույրերի կյանքը փրկելու, նրանց գոյությունը պահպանելու համար. զոհողության քրիստոնեական մորալի մարմնացումն է նա: Դոստոևսկին աշխատել է Ռասկոլնիկովին ներկայացնել իբրև արմատական երիտասարդության ներկայացուցիչ, «նիհիլիստ», սակայն այդ նրան չի հաջողվել: Ռասկոլնիկովը բուրժուական սկզբունքի արտահայտիչ է, և վեպի ուժը բուրժուական բարքերի մերկացումն է: Կապիտալիստական հասարակության սոցիալական անարդարության մերկացմամբ էլ պայմանավորվում է վեպի նշանակությունը ռուս գրականության մեջ:

Պարտատերերից խուսափելու նպատակով 1867 թ. Դոստոևսկին մեկնում է արտասահման, ուր մնում է չորս տարի: Այդ տարիներին նա մոտիկից ծանոթանում է բուրժուական Եվրոպային, նրա հոգում խորանում են կապիտալիզմի հանդեպ տածած ատելությունն ու զայրույթը: Միաժամանակ նա տեսնում է այստեղ արվեստի հրաշալիքներ, հիանում դրանցով, հոտալական վերածնության վարպետների գործերով, ավելի հանգամանորեն ծանոթանում արևմտաեվրոպական գրականությանը: Ինչպես ռուսական արվեստում, արևմտականում ևս, Դոստոևսկու համար ամենաարժեքավորն ու կարևորը գեղեցկով հագեցած ու ոգեշունչ աշխարհն է. գեղեցիկը մարդկային կյանքի ու գործունեության հիմքն է, նրա կարծիքով նույնիսկ գիտությունն առանց գեղեցկի չի կարող գոյատևել:

Արտասահմանում Դոստոևսկին գրում է Ապուշը, Դևեր վեպերը. առաջինում հեղինակի նպատակն է ստեղծել «դրական, գեղեցիկ» մարդու կերպարը՝ հանձին իշխան Միշկինի, որը մարմնավորում է քրիստոնեական հեզությունն ու մեղքերի թողության գաղափարը: Իսկ Դևերը քաղաքական պասկվիլ է ռուս ազատագրական շարժման հասցեին: Օգտագործելով ռուս հայտնի անարխիստ Բակունինի կողմնակից Նեչաևի դավադրական գործի քննչական պրոցեսի նյութերը՝ Դոստոևսկին միտումնավոր կերպով նույնացրել է նեչաևականությունը հեղափոխական շարժման հետ և հեղափոխականներին ու դեմոկրատներին ներկայացրել որպես քրեական տիպեր, երկերեսանիներ, մատնիչներ ու եսամոլներ: Պատահական չէ, որ Դոստոևսկու այդ վեպը դարձավ քաղաքական ռեակցիայի դրոշ, երկար ժամանակ օգտագործվեց ազատագրական շարժման ու նրա ներկայացուցիչների դեմ:

Երբ 1871 թ. կեսերին Դոստոևսկին վերադարձավ արտասահմանից և հաստատվեց Պետերբուրգում, արդեն ճանաչված գրական մեծություն էր ո՛չ միայն Ռուսաստանում, այլև նրա սահմաններից դուրս: Նրա աշխատակցությանն էին ձգտում մայրաքաղաքի շատ պարբերական հրատարակչություններ, համեմատաբար բարելավվել էր և գրողի նյութական վիճակը: Նա շարունակում է ստեղծագործել: Հրատարակվում են Ձմեռային դիտողություններ ամառային տպավորությունների մասին գրվածքը, ուր Դոստոևսկին քննադատում է Արևմուտքի բուրժուական կարգերը. նա ձեռնարկում է Գրողի հիշատակարանի տպագրությունը, այնուհետև ստեղծում Նոթեր ընդհատակից հետադիմական գրվածքը, որտեղ հարձակվում է գործում սոցիալիզմի և Չերնիշևսկու դեմ: Ապա նա հրատարակում է Դեռահասը վեպը, վերջապես, գրում իր վերջին ծավալուն երկը՝ Կարամազով եղբայրները: Այս վեպ-սինթեզը հրատարակվել է 1879—1880 թթ., այն բազմազան է իր ընդգրկումներով: Խոստովանանքաչ գրողը գրում է. «Ձնայած երեք տարի գրի եմ առել, բայց երբ որևէ գլուխ ավարտելուց հետո գտել եմ անհաջող, նորից ու նորից եմ



գրել»: Այստեղ հեղինակը մեծ տաղանդով նկարագրել է ֆեոդալական հասարակության անկումը և ազնվական ընտանիքի այլասերումը փողի, կապիտալիստական հարաբերությունների քայքայիչ ներգործությամբ: Սոցիալհոգեբանական գրականության այդ գլուխ-գործոցում հանրագումարի է բերվել Դոստոևսկու՝ որպես գրողի, ողջ գործունեությունը, առավել չափով արտահայտվել են նրա բոլոր նվիրական, հուզող մտքերը: Կարամազովների հայրը՝ Ֆյոդորը, ցինիկ, այլասերված ծերուկ է. նա սպանվում է իր ապօրինի որդու՝ լակեյ Սմերդյակովի ձեռքով, որը մարմնավորում է բուրժուական այլասերվածությունն ու ապականությունը: Այդ սպանության բարոյական պատասխանատվությունն ընկնում է ավագ որդու՝ Իվան Կարամազովի վրա, որը Սմերդյակովին մղել էր այդ սպանությանը: Մինչդեռ սպանության մեջ մեղավոր է ճանաչվում Դմիտրի Կարամազովը. նրան են դատում հոր սպանության համար: Հայրասպանության այս պատմությամբ հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես փողը, շահույթը այլասերում են մարդկանց, դարձնում ցինիկ, զրկում բարոյական հիմքերից: Իվան Կարամազովի կերպարի միջոցով Դոստոևսկին արտահայտում է իր ներքին կասկածանքներն ու որոնումները և այն ռեակցիոն միտքը, թե մատերիալիզմն ու աթեիզմն են զրկում մարդուն բարոյական հիմքից, մղում հանցագործության: Մինչդեռ Իվանը ոչ թե մատերիալիստ է, առաջավոր երիտասարդության ներկայացուցիչ, այլ Ռասկոլնիկովի նման՝ բուրժուական եսասիրության ներկայացուցիչ և ոչ մի առնչություն չունի առաջադեմ երիտասարդության հետ:

Վեպում, Դոստոևսկու բարոյական գաղափարակիրներն են Կարամազովների կրտսեր եղբայրը՝ Ալյոշան, որ դաստիարակվում է վանքում, և նրա հոգևոր ուսուցիչ վանահայր Զոսիմը, որը երազում է հասարակության մեջ ուղղափառ եկեղեցու իշխող դերի մասին: Կարամազով եղբայրները նշանակալից է ոչ թե այդ կրոնաբարոյական քարոզներով, այլ կյանքից առնված պատկերներով, սատծու գոյության դեմ ընդվզումով, ըմբոստացմամբ և սոցիալական հակասությունների, կապիտալիստական հարաբերությունների անողոք մերկացմամբ: Այս տեսակետից ուշագրավ են վեպի երկու գլուխները— Խռովություն և Մեծ ինկվիզիտորը: Այս հատվածներում Դոստոևսկին բացահայտում է Իվան Կարամազովի էությունը, նրա ըմբոստացումը մարդկային դաժանության ու բռնության, ազգային ու սոցիալական կեղեքման դեմ, սատծու գոյության վրա կասկածելը: Իր կրտսեր եղբորը՝ Ալյոշային, նա պատմում է, թե ինչպես թուրքերը Բուլղարիայում համատարած խժդժություններ, գազանություններ են անում, վախենալով սլավոնների ընդհանուր ապստամբությունից— այրում են, կոտորում, բռնաբարում... նա հիշում է և հայրենի կալվածատեր գեներալի անասելի դաժանությունը յոթ տարեկան ճորտ երեխայի հետ, որը պատահմամբ քարով խփել է գեներալի բազմաթիվ շներից մեկի ոտքին: «Գեներալը,— պատմում է Իվան Կարամազովը,— հրամայում է հանել տղայի հագուստները, և երեխային լրիվ մերկացնում են... «Քշե՛լ նրան,— հրամայում է գեներալը. «Վազի՛ր, վազի՛ր»,— գոռում են շնապահները, տղան վազում է... շները հասնում են, բռնում և մոր աչքերի առաջ բզիկ-բզիկ հոշոտում են մանչուկին»:— Ի՞նչ պատիժ տալ գեներալին,— հարցնում է եղբայրը Ալյոշային,— գնդակահարե՞լ, բարոյական զգացումը բավարարելու համար:

—Գնդակահարել,— շշնջաց Ալյոշան՝ բարձրացնելով հայացքը և դժգույն-այլայլված ժպիտով նայելով եղբորը»:

Այստեղ արդեն տառապանքի ու տանջանքի այդ ահավոր փաստերի առաջ կրոնա-բարոյական քարոզները սնանկանում են, և հաղթում է կյանքի ճշմարտությունը, Դոստոևսկու ռեալիստական արվեստը: Մեծ գրողի երկերի ներքին հակասությունների ու երկվության պայքարը շատ հաճախ ավարտվում է ռեալիստական մեծ արվեստի հաղթանակով: Բայց մեծ գրողն ու մտածողն այս ամենից հետո էլ չի դադարում կասկածել մարդու ազատագրության հնարավորությանը: Այո՛, նա կորցրել է հավատը սոցիալիզմի ու հեղափոխության հաղթանակի նկատմամբ, բայց չի կորցրել հավատը մարդու նկատմամբ և իր գեղարվեստական երկերով ընթերցողների լայն շրջաններում հարուցում է սեր ու համակրանք, ցավակցություն շահագործողական հասարակության զոհերի, մոռացված ու տառապող մարդկության նկատմամբ, չտեսնելով փրկության ելքը. ելք, որն այնպես պայծառ տեսնում և խոր համոզվածությամբ ու վճռականությամբ պաշտպանում էին Դոստոևսկու ժամանակակից նշանավոր հեղափոխական-դեմոկրատները՝ Բելինսկին, Չերնիշևսկին, Դոբրոլյուբովն ու Շչեդրինը: Նրանք էլ ասել են իրենց ճշմարտացի խոսքը Դոստոևսկու տաղանդի ուժի ու թուլության մասին:

Դոստոևսկու կարապի երգը հանդիսացավ 1880 թ. Պուշկինի արձանի բացման առթիվ արտասանած հայտնի ճառը, որը նա վերջացրեց բացականչելով. «Հնազանդի՛ր, հպարտ մարդ»: Դոստոևսկու այս ճառը թեև ուժեղ տպավորություն է թողնում ունկնդիրների վրա,

բայց իր հիմքում պարունակում է հետադիմական հայացքներ, որոնք ժամանակին խիստ քննադատվել են Գլեբ Ուսպենսկու և առաջադեմ այլ մտածողների կողմից: Սակայն տաղանդավոր հռետորը կոնկրետ անմիջականությամբ վեր է հանում Պուշկինի մեծությունը, գնահատում նրան.

«Պուշկինը լուսավորեց ռուսական պատմության ճանապարհը նոր, ուղենիշ լույսով և մարգարեաբար ցույց տվեց նրա հետագա զարգացումը և գրականության միակ փրկարար ճանապարհը— կապը ժողովրդի հետ»:

Դոստոևսկու այդ ճառից հիացած ունկնդիրները դափնեպսակ են նվիրում նրան, որը մեծ սիրով ու երկյուղածությամբ նա դնում է իր ուսուցչի հուշարձանի ոտքերի մոտ: Ռուս մեծագույն բանաստեղծը «ղի էր պլաններով ու նորանոր մտահղացումներով, նա մեռավ ուժերի լրիվ ծաղկման շրջանում և, անշուշտ, իր հետ գերեզման տարավ մի մեծ գաղտնիք». սրանք են Դոստոևսկու՝ Պուշկինին նվիրված ճառի վերջին խոսքերը, որոնք նույնությամբ կարելի է վերագրել և հանճարեղ վիպասանին:

Այդ ելույթից մի քանի ամիս անց նա անկողին ընկավ: Թույլ, հիվանդ թոքերն այնքան էին քայքայվել, որ ամենափոքր հուզումն իսկ ճակատագրական կարող էր լինել: 1881 թ. ձմեռային մի ցուրտ առավոտ նա կնոջն ասաց, որ այդ օրն ինքը պետք է մեռնի. մխիթարեց լացող կնոջը, շնորհակալություն հայտնեց իրեն պարգևած երջանկության համար, իսկ երեկոյան սկսվեց նոր արյունահոսությունը, և նա մեռավ: 70—80 հազարանոց մահվան թափորն ուղեկցեց նրան գերեզմանատուն, ուր նա թաղվեց իր սիրած պոետներից մեկի՝ Ժուկովսկու կողքին:

## III

Բարդ ու հակասական են եղել մեծ գրողի կյանքն ու ստեղծագործական ուղին: Սկսելով ուտոպիական սոցիալիզմի պաշտպանությունից և հեղափոխական գործունեությունից՝ Դոստոևսկին անցավ սոցիալիզմի ու դեմոկրատիայի թշնամիների բանակը, դավաճանեց իր վաղեմի հայացքներին ու համոզմունքներին: Այդ մասին կա նրա ինքնախոստովանությունը: Երբ Դոստոևսկուն հայտնի է դառնում, որ իր՝ արտասահմանում եղած ժամանակ գտնվել է ոստիկանության հսկողության տակ և, հատկապես, այդ տարիներին բաց են արել նրա նամակները և սպառնացել վերադարձին խիստ խուզարկել, ռեժիմի հավատարիմ հպատակը գրել է իր նամակներից մեկում. «Մաքուր մի մարդու, մի հայրենասերի համար մի՞թե հեշտ է տանել այս բանը: Մարդ, որ անձնատուր է եղել նրան (թագավորին— Ա. Ռ.), իր նախկին համոզմունքներին դավաճանելու աստիճան»:

Իրոք, իր քաղաքական ըմբռնումներով ու հայացքներով Դոստոևսկին գտնվում էր ռեակցիայի դիրքերում, բայց, որպես արվեստագետ, որպես ռեալիստ հեղինակ, իր լավագույն գործերում օբյեկտիվորեն հակադրվել է իր ռեակցիոն հայացքներին: Արվեստի մեծ ուժով նա արտացոլել է կապիտալիստական քաղաքի ներվաստացած, վիրավորված, մոռացված ու խեղճ մարդկանց, հացի համար իրենց վաճառող կանանց կյանքը, նրանց ապրումներն ու տանջանքները: Այդ ամենը նա նկարագրել է այնպիսի ուժով ու պատկերներով, որ դրանք դարձել են ազդեցիկ բողոք բուրժուա-կալվածատիրական հասարակության դեմ: Բայց, ելք չգտնելով սոցիալական անարդարությունից, նա կորցրեց հույսը, հավատը մարդու նկատմամբ և անօրինակելի ուժով նկարագրեց մարդկային հոգեբանության մթին խորշերը, ընդգծեց նրանց մեջ հիվանդագինը, սարսափելին:

Նրա ստեղծագործություններում, իր իսկ խոստովանությամբ, ոչինչ հնարված չէ. նրա հերոսների նախատիպերը ապրել են, գործել իր հետ, իր շրջապատում. ողջ նկարագրվածն իրականություն է, բայց նորովի իմաստավորված, խորապես մարդկայնացված տաղանդավոր գրողի գրչով: Նրա հերոսներից շատերն անմիջական արտահայտիչն են հեղինակի մտքերի, ապրումների ու ցանկությունների: Ինքը գրեթե միշտ նրանց հետ գործում է, վերապրում. իր հերոսին ոճրագործության ուղարկելիս կարծես թե ինքն էլ գնում է նրա հետ. գերազանց հանճարի լույսով լուսավորելով իր հերոսների հոգու խորխորատները՝ նա չի սարսում և իր հոգին մերկացնելուց: Ռուս հրապարակախոսության մեջ Դոստոևսկուն անվանել են դաժան տաղանդ. նրա վեպերը սարսռազդեցիկ են, նա ինքը տանջվում է և տանջում իր ընթերցողներին: Մաքսիմ Գորկին, բարձր գնահատելով Դոստոևսկու գեղարվեստական տաղանդը, ասել է. «Նա մեր հիվանդ խիղճն է»:

Ապուշ վեպի առիթով Սալտիկով Շչեդրինը տվել է Դոստոևսկու ստեղծագործության զարմանալիորեն դիպուկ ու խոր բնութագիրը. նա գրել է.

«Մի կողմից նա կերտում է կյանքով ու ճշմարտությամբ լի դեմքեր, մյուս կողմից՝ հանելուկային, ասես երազում դեգերող ինչ-որ մարիոնետներ, որոնք ստեղծված են զայրույթից դողացող ձեռքերով»:



## IV

Մեծ է Դոստոևսկու ազդեցությունն արտասահմանյան և ռուսական գրականության վրա. բայց այդ ազդեցությունը եղել է երկակի. առաջադեմ գրական գործիչները նրանից սովորել են սոցիալական կյանքի խոր, ռեալիստական պատկերում, իսկ հետադեմ գրողները՝ պահպանողականները, ընդօրինակել են կյանքում, լոկ մարդկային հոգեբանության մեջ սարսափելին տեսնելու նրա ունակությունը, տանջանքի իդեալականացումը:

Դոստոևսկու ազդեցությունն արտահայտվել է նաև հայ գրականության վրա: Նար-Դոսը խոստովանել է Դոստոևսկու ազդեցությունն իր ստեղծագործությունների վրա. նրա դրական ազդեցությունն զգալի է եղել մեր որոշ գրողների մի քանի գործերում:

Դոստոևսկու նկատմամբ ջերմ վերաբերմունքի արգասիք են նրա ստեղծագործությունների հայերեն թարգմանությունները: Նրա մի շարք երկեր թարգմանվել են դեռևս հեղափոխությունից առաջ... այսպես՝ Նար-Դոսը թարգմանել է նրա առաջին և լավագույն գործերից մեկը՝ Խեղճ մարդիկը, Ծիրվանզադեն՝ ռեալիստական գրվածքներից երկուսը— Սպիտակ գիշերներ սենտիմենտալ վեպը և Գեշ անեկդոտ պատմվածքը, Պողոս Մակինցյանը՝ Խաղամոլը վիպակը: Այս բոլորը սովետական տարիներին լույս են տեսել մեկ հատորով՝ Եղիշե Չարենցի խմբագրությամբ: Բացի այդ գործերից, արևմտահայերեն թարգմանվել է Ոճիր և պատիժ վեպը և այլ գործեր: Վերջին տարիներս հայերեն լույս են տեսել նրա Ոճիր և պատիժ, Ապուշը և Կարամազով եղբայրները վեպերը:

Դոստոևսկին ծանոթ է եղել հայ ընթերցողներին ո՛չ միայն հայերեն թարգմանությունների միջոցով. մեծ գրողի շուրջը եղած վեճերն արձագանքվել են նաև հայ պարբերականներում: Այսպես. Վրթանես Փափազյանը, արձագանքելով Մաքսիմ Գորկու՝ կարամազովականության, Դոստոևսկու ռեակցիոն հայացքների իդեալականացման ու մասսայականացման փորձերի դեմ ուղղված ելույթներին, պահանջել է պայքարել ընդդեմ հայ գրականության մեջ անկումային ու հետադեմ տրամադրությունների: Իրոք, ռեակցիայի տարիներին Դոստոևսկու ազդեցությունն ուժեղ էր դեկադենտների, անկումային գրականության ներկայացուցիչների վրա:

Սովետական գրականագիտությունը բացահայտում է Դոստոևսկու ստեղծագործական էվոլյուցիան, նրա ստեղծագործությունների ուժն ու թուլությունը, այն դրականը, ռեալիստականը, որ այնպես հատուկ են նրա գեղարվեստական երկերին և այդ ամենը հակադրում գրողի աշխարհայացքին, ռեակցիոն կողմերին, միստիցիզմին, կրոնա-բարոյական քարոզներին, կյանքի տերերի, ուժեղների առաջ խոնարհվելու քարոզներին:

Հանճարեղ վիպասանը մեզ համար մեծ է կյանքի ճշմարտացի արտացոլման, իր անդուլ որոնումների, ռեալիստական վարպետության վիթխարի ուժի, ռուս մարդկանց հավերժ կենդանի, անմեռ կերպարների կերտման համար: Նրա վեպերում տեղ են գտնում հետադիմական հայացքները, բայց դրանք սովորաբար հաղթահարվում են գրչի տաղանդավոր մի հարվածով և մարդկային տառապանքների հանդեպ տածած ջերմ վշտակցությամբ:

«Միջազգային ռեակցիան,— գրված է «Правда»-ի՝ Դոստոևսկու մահվան 75-ամյակին նվիրված խմբագրական հոդվածում,— աշխատում է իր նպատակների համար օգտագործել Դոստոևսկու աշխարհայացքի ու ստեղծագործության թույլ, հետադիմական կողմերը: Գրողի խորապես հակասական, ստեղծագործական ժառանգության շուրջ միշտ ծավալվել և մեր օրերում էլ ծավալվում է կատաղի գաղափարական պայքարը... Խավարամոլները և առաջադիմության խեղդիչները հաճույքով դիմում են գրողի հետադիմական կողմերին...

Իրենց դասակարգային նպատակների համար ժամանակակից ռեակցիոներները միտումնավոր կերպով աղավաղում են գրողի ստեղծագործական դիմանկարը, լռության մատնելով նրա կրքոտ բողոքը ընդդեմ բուրժուական հասարակության, նրա ջերմ ձգտումը՝ հանդես գալ ի պաշտպանություն մարդկանց, որոնք շնչահեղձ էին լինում շահագործման ճնշումից, անսահման տանջվում այն բանի համար, որ մարդու մեջ խեղվում է մարդկային ամեն բան: Դոստոևսկու ստեղծագործության իմաստը ու նշանակությունն աղավաղելու ամեն մի փորձի մերկացումը պայքար է հանուն իսկական Դոստոևսկու, նրա կրքոտ, գեղարվեստական խոսքի մնայուն արժեքի»:

Ա. Կ. ՈՍԿԵՐՉՅԱՆ
Բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր



# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԵՐԿՈՒ ԽԹԱՆՆԵՐԸ

Ա. Ս. ՄԽԻԹԱՐՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

*Մարդկանց աշխատանքի դրդող հիմնական պատճառը նյութական շահերն են։ Դրանք ծնունդ են առնում նյութական պահանջմունքների ամբողջությունից և արտացոլում այդ պահանջմունքները լիովին բավարարելու ձգտումը։ Շահերը երևան են գալիս մարդկային հասարակության առաջացման հետ մեկտեղ. և, անկախ հասարակական-տնտեսական ֆորմացիայից, արտադրության կատարելագործման խթան են՝ նրա զարգացման բոլոր ստադիաներում։ Վ. Ի. Լենինն այդ հարցին հսկայական նշանակություն էր տալիս։ Նա ընդգծում էր, որ «շահերն են առաջ մղում ժողովուրդների կյանքը»։ Շահերի բնույթն ու դրանց դրսևորումը արմատապես կախված են արտադրաուժերի զարգացման մակարդակից և հատկապես տիրող արտադրահարաբերություններից։ Ֆ. Էնգելսը նշում էր, որ հենց շահերն են արտացոլում նյութական արտադրապրոցեսում մարդկանց միջև առաջացող փոխադարձ կապերի ամբողջ բարդ սիստեմը, այս կամ այն հասարակարգի յուրահատկությունը։ Սոցիալիստական արտադրահարաբերություններին հատուկ են որոշակի նյութական շահեր։ Դրանց ամբողջությունից առավել կարևորներն են՝ հասարակական, արտադրական կոլեկտիվի և աշխատավորի անձնական նյութական շահը, ընդ որում, պետք է ընդգծել, որ կոլեկտիվի շահերը կապակցող օղակ են հասարակության և անհատի միջև։*

*Սոցիալիզմի ժամանակ հասարակական և կոլեկտիվ շահերի առաջացումն ու զարգացումը չեն նվազեցնում անձնական շահերի նշանակությունը, որոնք ստանում են որակապես նոր բովանդակություն։*

*Կապիտալիստական արտադրաեղանակի հանդեպ սոցիալիստականի առավելություններից մեկն այն է, որ սոցիալիստական հասարակության մեջ մարդն աշխատում է իր և իր ժողովրդի համար։ Եվ դա հայտնի է ամեն մի աշխատողի։ Սակայն հասարակության ու նրա առանձին անդամների տնտեսական շահերի միասնությունն այդ շահերի նույնություն չի նշանակում և չի բացառում դրանց հարաբերական ինքնուրույնությունը. անձնական շահերը չեն կարող լիովին բավարարվել առանց ողջ հասարակական արտադրության աճի, որը, իր հերթին, ապահովվում է աշխատավորների անձնական շահագրգռվածության և արտադրության պլանաչափ կազմակերպման շնորհիվ։*

*Լինելով զարգացման սկզբնապատճառը, շահերը դրսևորվում են միջնորդարար խթանների միջոցով։ Եթե շահը չի ամրապնդվում համապատասխան խթանով, ապա աշխատավորը շահագրգռված չէ հասնելու կոնկրետ արդյունքի, և ընդհակառակը։*



*ՍՄԿԿ-ն, բացահայտելով ու հաղթահարելով աշխատանքի խթանման գործում եղած թերությունները, սիստեմատիկաբար կատարելագործում է այն, դրանով իսկ անհրաժեշտ նախադրյալներ ու պայմաններ ստեղծում աշխատանքի ստեղծարար ուժի առավել դրսևորման համար հանուն ողջ հասարակության և նրա յուրաքանչյուր անդամի։*

*Աշխատանքում ստեղծագործական նախաձեռնության զարգացման նոր հնարավորություններ ընձեռեց տնտեսական ռեֆորմը։ Այդ ռեֆորմի խնդիրներից մեկը հենց խթանման սիստեմի կատարելագործման համար նպաստավոր պայմանների ստեղծումն է, հասարակական, կոլեկտիվ և անձնական շահերի միասնության ամրապնդումը՝ պահպանելով համաժողովրդական շահերի առաջատար դերը։ Սակայն ռեֆորմի նշանակությունը չի սահմանափակվում միայն արտադրության շրջանակներով։ Պլանավորման և տնտեսական խթանման նոր մեթոդները ներգործում են ո՛չ միայն հասարակության, արտադրական կոլեկտիվի և առանձին մարդու կապերի բնույթի, այլև մարդկանց գիտակցության, հոգեբանության ու սովորույթների վրա. յուրաքանչյուր աշխատող ավելի է համոզվում, թե այն, ինչ օգտակար է հասարակությանը, օգտակար է նաև կոլեկտիվին և անձամբ իրեն։*

*Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ թեև սոցիալիստական հասարակության մեջ չկան անտագոնիստական դասակարգեր, սակայն այնտեղ պահպանվում են սոցիալ-տնտեսական տարբերությունները և ոչ-անտագոնիստական հակասությունները աշխատանքի տարբեր տեսակների միջև։ Աշխատանքի բուն բնույթով, նրա բաժանմամբ, ինչպես նաև աշխատավորների տարբեր խմբերի աշխատանքի հանգամանքներով պայմանավորված հենց այդ տեսակների առկայությունից է բխում ըստ աշխատանքի բաշխման և անձնական նյութական շահագրգռվածության օբյեկտիվ անհրաժեշտությունը։ Այդ գործում մեծ դեր կարող են խաղալ աշխատավարձի ճիշտ կազմակերպումը և արտադրության կոնկրետ տեղամասերում դրա ձևերի ու սիստեմների կիրառման գիտականորեն հիմնավորված ընտրությունը։*

*Աշխատավարձի՝ որպես աշխատանքի հատուցման ձևի էությունից է բխում աշխատավարձի այնպիսի կազմակերպումը, որ դրա մեծությունն ուղղակի կախված լինի աշխատանքային ներդրումից և արդյունքներից։ Դա հստատակամորեն ընդգծված է 1921 թ. սեպտեմբերի 10-ի «Հիմնական դրույթներ տարիֆային հարցի վերաբերյալ» լենինյան դեկրետում։ Այնտեղ, մասնավորապես, ասված է, որ տարիֆային դրույթներ սահմանելիս «ամեն մի միտք հավասարության մասին պետք է դեն նետվի», որ «աշխատավարձը պետք է կապված լինի միայն արտադրության արդյունքների բարձրացման հետ», և այն ամենը, «որ կրում է սոցիալական ապահովության բնույթ... ոչ մի չափով չպետք է կապված լինի աշխատավարձի հետ»։ Նույն փաստաթղթում նշված է, որ աշխատավարձի խթանող դերն այնքան ավելի արդյունավետ կլինի, որքան յուրաքանչյուր աշխատողի համար ավելի պարզ ու մատչելի կլինի վարձատրության չափի կախումը նրա աշխատանքային ներդրումից։*

*Կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը, խոսելով տնտեսական խթանների ուժեղացման մասին, ընդգծեց. «Տնտեսական գործունեության կարևոր կողմը, որից մեծ չափով կախված է արտադրության արդյունավետությունը, ըստ աշխատանքի վարձատրման կատարելագործումն է։ Լարված, բարձր արտադրողական աշխատանքը պետք է խրախուսվի և ավելի բարձր չափով վարձատրվի»։*

*Աշխատանքի վարձատրման կատարելագործման հարցերը շատ բանով պայմանավորված են արտադրության կառավարման և աշխատանքի կազմակերպման մակարդակով։ Արտադրության և աշխատանքի կազմակերպման կատարելագործման նոր հեռանկարներ է բացում աննախընթաց մասշտաբներով ծավալված գիտա-տեխնիկական հեղափոխությունը։*

*Ջնայած աշխատավարձի կազմակերպման ձևերի բարելավման գործում*

եղած մեծ տեղաշարժերին և աշխատանքի ավելի բարձր արդյունքների համար աշխատողների նյութական խրախուսման տնտեսական լծակների ուժեղացմանը, նյութական խթանման սիստեմի կատարելագործման հարցը մնում է օրակարգի մեջ։

Արտադրության և աշխատանքի կազմակերպման ցածր մակարդակի հետևանքով երկրի արդյունաբերական ձեռնարկություններում տեղի են ունենում աշխատաժամանակի զգալի կորուստներ, որոնք տարեկան կազմում են մոտ 450 միլիոն մարդ-օր։ Դա նշանակում է, որ արդյունաբերության ավելի քան 1,6 միլիոն աշխատող տարվա ընթացքում չի աշխատել։ Դրան պետք է ավելացնել այն, որ անգործության են մատնվել նաև համապատասխան սարքավորումը, արտադրական տարածությունները, տրանսպորտի միջոցները և այլն։

Ներկայումս առանձնապես այժմեական է դառնում աշխատավարձի գործարքային և ժամանակավարձային ձևերի կիրառման զուգորդման և համամասնությունների հարցը։ Գործարքային ձևը, ժամանակավարձի համեմատությամբ, զգալիորեն խթանում է աշխատանքի արտադրողականության աճը, բայց, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, բացասաբար է անդրադառնում թողարկվող արտադրանքի որակի վրա։ Ժամանակավարձը, ընդհակառակը, զգալիորեն բարձրացնում է արտադրանքի որակային ցուցանիշները, բայց ինչ-որ չափով կասեցնում է աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը։ Սակայն այստեղ անհրաժեշտ է ընդգծել, որ, նախ, արտադրանքի որակի բարձրացումը, վերջին հաշվով, հավասարազոր է թողարկվող արտադրանքի ծավալի ավելացմանը և, երկրորդ, ժամանակավարձի ձևերի կիրառումը բարձրացնում է աշխատողների բարեխղճությունը, գիտակցականությունը և պատասխանատվությունը՝ կոմունիստական հասարակարգի մարդու այդ անհրաժեշտ հատկությունները։

ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1965 թ. հոկտեմբերի 4-ի որոշմամբ հաստատված սոցիալիստական պետական ձեռնարկության կանոնադրության մեջ մեծ իրավունքներ են տրված ձեռնարկություններին։ Մասնավորապես, աշխատանքի և աշխատավարձի բնագավառում նրանց իրավունք է վերապահված բանվորների առանձին խմբերի համար սահմանելու գործավարձ, ժամանակավարձ կամ ակորդավարձ։

Տնտեսագիտական գրականության մեջ և պրակտիկայում ժամանակավարձը երկար ժամանակ դիտվում էր որպես աշխատանքի հատուցման մի ձև, որը լիովին չի համապատասխանում ըստ աշխատանքի բաշխման սկզբունքին։ Եվ դա պատահական չէր։ Ինչպես հայտնի է, ժամանակավարձի դեպքում աշխատանքը չափվում է արտադրության մեջ աշխատողի ծախսած ժամանակով։ Դա շատ լուրջ պահանջ է դնում՝ ճշտորեն սահմանելու աշխատանքի արդյունքների և նրա վարձատրման չափերի միջև եղած կախումը։ Միանգամայն ակներև է, որ հենց արտադրության մեջ բանվորի գտնվելը նրա աշխատանքը բնութագրում է որպես էքստենսիվ մեծություն, այսինքն՝ անկախ նրա ինտենսիվությունից։ Ուստի, հնարավոր են աշխատանքի փաստական ծախսումների և դրա վարձատրության չափի ուղղակի կապերի խախտումներ, քանի որ աշխատանքի նորման միայն արտադրության մեջ բանվորի գտնվելու ժամանակով (օրացուցային ժամանակով) արտահայտելը հաշվի չի առնում աշխատանքի մի կարևոր կողմը՝ դրա քանակական արդյունքները։ Ժամանակավարձի պայմաններում աշխատանքի արդյունքների և դրա վարձատրության չափի միջև եղած կախումն իրագործվում է աշխատավարձի կազմակերպման կարևորագույն գործիքների՝ աշխատանքի նորմավորման, տարիֆային, նյութական խթանման սիստեմի օգտագործման միջոցով։ Սակայն մինչև վերջերս բանվորների աշխատավարձի կազմակերպման այդ տարրերը չափազանց անբավարար էին օգտագործվում ժամանակավարձի պայմաններում։ Ժամանակավարձով հատուցվող աշխատանքները, որպես կանոն, չէին նորմավորվում, և ընդհակառակը, որտեղ աշխատանքի ծախսումների նորմավորումը բարդ էր, կիրառվում էր ժամանակավարձի ձևը։ Դրանով իսկ գրեթե չէր խթանվում բանվորների շահագրգռվածությունն իրենց աշխատանքի արդյունքները բարելավելու գործում։



Դրա հիմնական պատճառը բանվորների աշխատավարձի կազմակերպման թերություններն էին։

Այս բոլորի հետևանքով ստեղծվեցին այնպիսի պայմաններ, որոնցում ժամանակավարձը չէր կարող լիովին համապատասխանել ըստ աշխատանքի բաշխման օրենքի պահանջներին։ Սակայն տեխնիկական առաջադիմության զարգացման (աշխատանքի մեքենայացման և ավտոմատացման մակարդակի բարձրացումը ժողովրդական տնտեսության ճյուղերում նախադրյալներ է ստեղծում ժամանակավարձ ստացող բանվորների տեսակարար կշիռը աստիճանաբար ավելացնելու համար), արտադրության տնտեսական լծակների ընդհանուր կատարելագործման համեմատ ժամանակավարձը հետզհետե ձևափոխվում էր, ստանալով նոր բովանդակություն։ Վերջին ժամանակներս լայն տարածում է ստացել ժամանակավարձային-պարգևային սիստեմը՝ սահմանելով նորմավորված առաջադրանքներ։

Աշխատողների վարձատրման այդպիսի ձևն իր բովանդակությամբ դառնում է վարձատրություն ըստ աշխատանքի արդյունքների, քանի որ այդ կերպ վարձատրվող բանվորների աշխատավարձը հաշվելիս հաշվի է առնվում ո՛չ միայն ծախսված ժամանակը և աշխատողի որակավորումը, այլև արտադրանքի քանակն ու որակը, հումքի, նյութերի, էլեկտրաէներգիայի խնայողությունը և այլն։ Աշխատանքի հատուցման այդպիսի ժամանակավարձային ձևը զգալիորեն նպաստում է աշխատանքի արտադրողականության և թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը։

Աշխատանքի վարձատրությունն իր արդյունքների քանակին ու որակին համապատասխան կատարելագործելու հարցին հատուկ տեղ է հատկացված ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի դիրեկտիվներում, որտեղ ասված է. «Բարձրացնել տարիֆային սիստեմի դերը, ուժեղացնել աշխատողների շահագրգռվածությունն աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրության ծախքերն իջեցնելու և արտադրանքի որակը բարելավելու գործում»։

Իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ աշխատողների նյութական խթանման ուժեղացման հարցում մեծ տեղ է հատկացված աշխատանքի վարձատրման պարգևային և նյութական խրախուսման ֆոնդերից վճարելու սիստեմների կիրառմանը։ Եթե մինչև աշխատավարձի կարգավորումը (1959 թ.) պարգևային սիստեմը ոչ մի տեղ չէր կիրառվում, ապա ներկայումս հանրապետության մեքենաշինության մեջ ժամանակավարձ ստացող գրեթե բոլոր բանվորները վարձատրվում են պարգևային սիստեմներով։ Վատ է գործարքով աշխատող բանվորների վարձատրման գործը։ Հայաստանի մեքենաշինական և թեթև արդյունաբերության մեջ հիմնականում կիրառվում է աշխատանքի ուղղակի գործարքային վարձատրությունը։ Այդ ճյուղերում գործարքով աշխատողների ընդամենը 20 տոկոսն է վարձատրվում պարգևային սիստեմով։ Հայտնի է, որ աշխատանքի գործարքային-պարգևային վարձատրման կիրառումը հեշտ է այն ձեռնարկություններում, որտեղ գերակշռում են ժամանակի տեխնիկապես հիմնավորված նորմաները և բանվորներն ընդգրկված են աշխատանքի կազմակերպման կոլեկտիվ ձևի մեջ։ Այդպիսի հնարավորություններ կան հանրապետության մի շարք գործարաններում, որոնց թվին են պատկանում, առաջին հերթին, էլեկտրաճշգրիտ սարքերի, Երևանի ժամացույցի, ավտոպահեստամասերի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական և այլ գործարանները։

Աշխատանքի վարձատրման պարգևային սիստեմի կիրառման հարցը լավ է լուծված (70—100 տոկոս) Երևանի էլեկտրալամպերի, էլեկտրաշարժիչների, հիդրոպոմպերի և այլ գործարանների գործարքով աշխատող բանվորների համար։

Աշխատողների նյութական խրախուսման գործում մեծ խթան հանդիսացավ նյութական խրախուսման ֆոնդի ստեղծումը (տնտեսական ռեֆորմի իրագործումից հետո)։

Այդպիսի ֆոնդի ստեղծման շնորհիվ շահում է ձեռնարկության յուրաքան-

րոյական խթանների ընդլայնման հետ»: Սոցիալիստական հասարակարգում բարոյական խթանները չափազանց բազմազան են: Դրանք առաջ են գալիս գոյություն ունեցող տնտեսական հարաբերությունների ազդեցության տակ: Բարոյական խթանների զարգացումը ենթադրում է սոցիալիստական հասարակության աշխատողների շահերի իրացման կոնկրետ ձևերի սիստեմի գործողություն: Բարոյական խթանման խելացի կազմակերպումը պակաս դժվարին գործ չէ, քան նյութական խթանման կազմակերպումը:

Վ. Ի. Լենինը սովորեցնում է մարդկանց նյութական շահագրգռվածությունը հմտորեն զուգակցել հեղափոխական խանդավառության, գաղափարական խոր համոզվածության հետ: Կուսակցությունն այդպիսի միասնության ոգով է դաստիարակում սովետական աշխատավորներին: Դաստիարակելով նոր, կոմունիստական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ, կուսակցությունը բարոյական խթանների օգտագործման հիման վրա պայքարում է, ինչպես Վ. Ի. Լենինն է նշում, այն տարրի դեմ, «որն ամեն ինչի վրա նայում է իր նեղ շահերի տեսակետից»: Կուսակցության Մոսկվայի քաղաքային կազմակերպության XIX կոնֆերանսում Լ. Ի. Բրեժնևն ընդգծել է. «Մշտապես ամրապնդելով կոմունիստական գիտակցությունը, հարկավոր է ճիշտ զուգակցել աշխատանքի նյութական ու բարոյական խթանները: Սոցիալիզմի ժամանակ դրանք չեն հակադրվում, այլ լրացնում են միմյանց: Մեզանում աշխատանքը միայն կյանքի միջոց չէ: Այն դառնում է սովետական մարդկանց հոգևոր պահանջմունքը, նրանց բարձր պարտքը հասարակության հանդեպ»:

1958 թ. այդ շարժման սկիզբը դրեց Մոսկվայի տեսակավորող դեպոյի կոլեկտիվը: Այդ նպատակով մեծ աշխատանք ծավալվեց նաև մեր հանրապետությունում: 1970 թվականին այդ շարժմանը մասնակցում էր 530 հազար մարդ: Ավելի քան 37,4 հազար մարդ արդեն արժանացել է կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման, իսկ 2757 բրիգադա, 602 արտադրատեղամաս և 14 ձեռնարկություն կրում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի պատվավոր կոչումը:

Բարոյական խթանի արդյունավետությունը շատ բանով կախված է այն ժամանակին խրախուսելուց, նրան հրապարակային և հանդիսավոր բնույթ տալուց: Այդ գործում առանձնապես կործանարար ու անթույլատրելի է ամեն տեսակ ֆորմալիզմը: Օրինակ, դաստիարակչական ի՞նչ արդյունք կարող է ունենալ արտադրամասին գործարանի փոխանցիկ դրոշը հանձնելը, երբ այդ դրոշն ի ցույց չի դրվում, այլ պահվում է պահեստում: Կարո՞ղ է բարոյական բավականություն պատճառել խրախուսանքը, երբ այն հայտնի չէ կոլեկտիվին:

Բարոյական խրախուսման գործը լավ է կազմակերպված Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանում: Այստեղ օպերատիվ հանրագումարի են բերվում արտադրամասերի, հերթափոխերի, ագրեգատների միջև ծավալված մրցության արդյունքները: Հանդիսավոր իրադրության մեջ հաղթողներին հանձնվում է փոխանցիկ դրոշը, շնորհվում լավագույն հերթափոխի կոչում: Ագիտատորները նրանց նվաճումներին ու փորձին են նվիրում իրենց զրույցները: Նրանց մասին գրում է գործարանի բազմատիրաժը:

Այդ նպատակով մեծ աշխատանք է կատարվում նաև Երևանի ավտոդողերի գործարանում: Այստեղ ավանդական է դարձել «Բանվորի օր» ներգործարանային տոնի նշումը: Այդ օրը հանրագումարի են բերվում կոլեկտիվի աշխատանքի արդյունքները, խրախուսվում նրանք, ովքեր իրենց ստեղծագործ աշխատանքով վայելել են ընկերների հարգանքը, մեծարվում են արտադրության էնտուզիաստները:

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման համար մղվող պայքարում կուսակցական ու հասարակական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ բարոյական ու նյութական խթանների ամբողջ ուժն օգտագործել սովետական մարդկանց ակտիվության և ստեղծագործական նախաձեռնության հետագա բարձրացման համար:

# ՊԼԱՆԸ ԵՎ ՇՈՒԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅՈՒՄ

Ս. Մ. ՀՅՈՒՍՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

Սոցիալիստական էկոնոմիկայի անընդհատ աճի և որակական տեղաշարժերի, արտադրակապերի ընդլայնման ու կատարելագործման պայմաններում սկզբունքային նշանակություն ունի պլանի և շուկայի փոխհարաբերության հարցը:

Հայտնի է, որ սոցիալիստական տնտեսության վարման վճռական ազդակը պլանավորումն է: Սակայն պլանավորման արդյունավետության շահերը թելադրում են պլանավորումը հմտորեն զուգորդել շուկայի, ապրանքա-դրամական հարաբերությունների առավել լիակատար օգտագործման հետ:

* * *

Մինչև տնտեսական ռեֆորմը գերակշռում էր այն պատկերացումը, թե սոցիալիստական պլանային սիստեմում արտադրանքի իրացման պրոբլեմ գոյություն չունի: Սակայն կյանքը հերքեց դա, որի լավագույն ապացույցը մեր երկրում իրականացվող տնտեսական ռեֆորմն է:

Տնտեսավարման նոր սիստեմը համախառն արտադրանքի ցուցանիշը փոխարինեց արտադրանքի իրացման ցուցանիշով: 1971—1975 թթ. ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի մասին ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները պարտավորեցնում են միջոցառումներ ձեռնարկել արտադրանքի իրացման պրոցեսն արագացնելու համար: Հասկանալի է, որ այս պայմաններում իրացման պրոբլեմն ստանում է հսկայական գործնական ու տնտեսական նշանակություն:

Սոցիալիստական վերարտադրության անխափան պրոցեսի անհրաժեշտ պայմանը հասարակական ամբողջական արդյունքի որոշակի բաշխումն է, որը ներառում է դրա բոլոր մասերի փոխհատուցման անհրաժեշտությունը թե՛ արժեքային և թե բնաձևային արտահայտությամբ: Հետևապես, տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում իրացման պրոբլեմի էությունը հանգում է արդյունքի լիակատար իրացմանը:

Սոցիալիստական վերարտադրության բնականոն ընթացքն ապահովելու

համար ժողովրդատնտեսական կարևորագույն համամասնությունները սահմանվում են պլանային կարգով, և դա տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունն է։ Այդուհանդերձ, սոցիալիստական պլանավորումը հաշվի է առնում շուկայի առկայությունը։

Բուրժուական գաղափարախոսները պնդում են, թե պլանը և շուկան անհամատեղելի, անհարիր հասկացություններ են, թե իբր պլանային սոցիալիստական էկոնոմիկան ենթադրում է շուկայի վերացում, իսկ շուկայի առկայությամբ հերքվում է սոցիալիստական պլանավորումը։ Այս հարցադրումը, սակայն, անհիմն է։

Վ. Ի. Լենինի հանրահայտ սահմանմամբ, շուկան ապրանքային տնտեսության կատեգորիա է, իսկ վերջինիս հիմքը աշխատանքի հասարակական բաժանումն է։ Այս դրույթները կիրառելի են նաև սոցիալիստական արտադրության նկատմամբ։ Սակայն, ինքնին հասկանալի է, որ սոցիալիստական երկրի շուկայում հանդես են գալիս ո՛չ թե կապիտալիստները, մասնավոր սեփականատերերը, այլ միավորված արտադրողները— պետական արդյունաբերական ձեռնարկությունները, կոլտնտեսությունները և սովխոզները, որոնք աշխատում են ժողովրդատնտեսական հիմնական համամասնությունները սահմանող միասնական պետական պլանի առկայության պայմաններում։ Խոսքը, այսպիսով, ո՛չ թե ընդհանրապես շուկայի, այլ կոնկրետ, սոցիալիստական շուկայի մասին է։

Ռեալ իրականությունն այն է, որ սոցիալիզմի ժամանակ ապրանքային արտադրության գոյությունը ենթադրում է շուկայի առկայությունը, ուրեմն, և պլանի ու շուկայի որոշակի զուգորդման անհրաժեշտությունը։ Շուկան թեև գոյություն ունի ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման պայմաններում, բայց բոլորովին պլանի հասարակ կցորդը չէ. այն կարևոր դեր է խաղում պլանային էկոնոմիկայի զարգացման գործում։ Հետևապես, սոցիալիստական էկոնոմիկայում պլանը շուկային և շուկան պլանին հակադրելու բուրժուական գաղափարախոսների ճիգերն ապարդյուն են։

Շուկայի դերը սոցիալիստական էկոնոմիկայում պայմանավորված է ապրանքային արտադրության ու արժեքի օրենքի գործողությամբ։ Այսպես, արտադրված ապրանքներն ունեն սպառարժեք և արժեք։ Տնտեսության սոցիալիստական սիստեմում բացակայում է հակամարտ հակասությունը դրանց միջև։ Բայց ոչ-հակամարտ հակասություն է դրսևորվում վերջինների միջև, երբ արտադրված ապրանքները չեն իրացվում։ Դա նշանակում է, որ դրանց վրա ծախսված աշխատանքը հասարակական ճանաչում չի ստացել։

Մարքսիստական տնտեսագիտական գրականության մեջ առավել հայտնի է այն տեսակետը, ըստ որի, տնտեսության սոցիալիստական սիստեմում ապրանքի իրացումը, այսինքն դրա փոխարկումը փողի, ամենևին էլ հասարակ ձևական ակտ չէ։ Արտադրանքի իրացումը պատկերացում է տալիս այն մասին, թե ինչքանով են աշխատանքի ծախսումները համապատասխանում հասարակական նորմաներին, ճի՞շտ են հաշվի առնված սպառողների պահանջներն ըստ ասորտիմենտի, ապահովվա՞ծ է, արդյոք, արտադրանքի պահանջվող որակը։ Այս դեպքում շուկայի ուսումնասիրումն ու հաշվառումն արդյունավետ պլանավորման անհրաժեշտ պայմանն են։

Սակայն ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունը և ապ-



րանքա-դրամական հարաբերությունների զարգացումը չի նշանակում, թե պետք է պասսիվ հետևել շուկայի պահանջներին։ Շուկան պետք է կազմակերպել, գիտականորեն կանխատեսել դրա լինելությունը, այլ կերպ ասած՝ պլանավորել։ Սա նոր հարցադրում չէ։ Սովետական պետության գոյության առաջին տարիներին արդեն, ՌԿ(բ)Կ Համառուսաստանյան XI կոնֆերենցիայում խնդիր դրվեց՝ «ելնելով շուկայի առկայությունից և հաշվի առնելով նրա օրենքները, տիրապետել նրանց և սիստեմատիկ, խստորեն մտածված և շուկայի պրոցեսի ճիշտ հաշվառման վրա կառուցված տնտեսական միջոցառումների միջոցով իր ձեռքն առնել շուկայի ու դրամական շրջանառության կարգավորումը» (ՍՄԿԿ-ն... բանաձևերում և որոշումներում..., մաս I, 1954, էջ 751)։

Կես դար է անցել այդ ժամանակներից։ Այժմ սոցիալիստական տնտեսավարման ավելի կատարյալ մեթոդներին անցնելու և գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումներն էկոնոմիկայում կիրառելու պայմաններում շուկայի կարգավորումը «մեր ձեռքն առնելու» համար, անկասկած, անհամեմատ ավելի շատ հնարավորություններ կան։

Այսպես կոչված, «շուկայական սոցիալիզմի» տեսության ջատագովները «ազատ շուկայական էկոնոմիկայի» գովքն անելիս «մոռանում են», որ արտադրության ու սպառման հարաբերությունների բարդացման պայմաններում, պետական մոնոպոլիստական կապիտալիզմն անգամ փորձում է հայտնագործել շուկայի կարգավորման նոր մեթոդներ, որոնք, սակայն, չեն կարող վերացնել կապիտալիստական տնտեսության անարխիան, տնտեսական ճգնաժամերը։

Սոցիալիստական տնտեսության մեջ արտադրվող ապրանքներն ունեն արժեք, որի մեծությունը որոշվում է հասարակականորեն անհրաժեշտ այն աշխատանքի քանակով, որ ծախսվում է դրանց արտադրության վրա։ Սակայն, թեև սոցիալիզմի ժամանակ աշխատանքն ունի անմիջական հասարակական բնույթ, այն դեռևս չի ենթարկվում ուղղակի հաշվառման և պահանջում է անուղղակի, այսինքն՝ արժեքային, դրամական հաշվառում։ Համախառն արտադրանքի ցուցանիշից իրացված արտադրանքի ցուցանիշին անցնելն ակնառու կերպով այդ է հաստատում։

Սոցիալիզմի ժամանակ կոնկրետ և աբստրակտ աշխատանքի միջև գոյություն ունի տարբերություն, որը պայմանավորված է ապրանքի մեջ մարմնացած աշխատանքի երկակի բնույթով։ Այդ իսկ պատճառով, չի կարելի շփոթել ապրանքի արժեքը, որը աբստրակտ հասարակական աշխատանքի մարմնացումն է՝ տվյալ ապրանքի արտադրության համար անհրաժեշտ կոնկրետ աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ նորմատիվ ծախսերի վիճակագրական հաշվառման հետ։ Իհարկե, այս կամ այն ապրանքի արտադրության համար անհրաժեշտ փաստական աշխատանքային ծախքերի, կամ արտադրության աշխատատարության հաշվարկումն էական նշանակություն ունի պլանային ղեկավարման որոշակի խնդիրների լուծման համար։ Սակայն բանն այն է, որ սոցիալիզմի օրոք ևս հասարակականորեն անհրաժեշտ կոնկրետ աշխատանքի ծախսերի հաշվարկումը պատկերացում չի տալիս արժեքի մասին։ Ապրանքի արժեքը դրսևորվում և չափվում է միայն ուրիշ ապրանքի փոխանակային արժեքի հետ համադրվելով և, վերջին հաշվով, իր արտահայտությունն է գտնում փողի մեջ։ Աշխատանքի ծախսումները պետք է

ճանաչվեն հասարակական պրոցեսում, երբ ապրանքները համադրվում են իրար, այսինքն՝ իրացման պրոցեսում։

Մարքսիստական այս դրույթի կիրառումը սոցիալիստական հասարակարգում որոշ տնտեսագետներ գնահատում են որպես «արժեքի անճանաչելիության» դիրքավորում։ Մինչդեռ այն մերժում է պարզունակ պատկերացումներն արժեքի մասին և հնարավորություն է ընձեռում գիտականորեն այն դիտել ո՛չ թե որպես աշխատանքի քանակային չափ, այլ միայն հասարակական հարաբերությունների մեջ գոյություն ունեցող աշխատանքի իրական ծախսեր, այսինքն՝ որպես հասարակական հարաբերությունների արտահայտման որոշակի ձև։

Պլանի և շուկայի փոխադարձ կապի ամրապնդումը ենթադրում է պահանջարկի և առաջարկի համապատասխանության, ինչպես նաև գների կարգավորման անհրաժեշտություն։

Սոցիալիզմը արտադրության նպատակը դարձնելով ժողովրդական զանգվածների նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարումը, վերացրեց արտադրության և սպառման միջև կապիտալիզմին հատուկ հակասությունը։ Սակայն դա չի նշանակում, թե սոցիալիզմի ժամանակ արտադրության ու սպառման միջև համապատասխանությունը իրականացվում է ինքնաբերաբար, ավտոմատիկորեն։

Ինչպես հայտնի է, տարիներ առաջ տարածված էր այն կարծիքը, թե սոցիալիստական տնտեսության մեջ վճարունակ պահանջարկի աճը պետք է առաջ անցնի արտադրության աճից։ Այդ առաջանցիկ աճը ներկայացվում էր որպես սոցիալիստական արտադրության աճի յուրահատուկ խթանիչ ուժ։ Այս տեսակետի կողմնակիցները, ըստ էության, ոչ միայն անտեսում էին արտադրության ու սպառման միջև գոյություն ունեցող փոխադարձ կապը, այլև պատմական որոշ օբյեկտիվ պայմաններում ծագած ապրանքային դեֆիցիտը դիտում էին իբրև սոցիալիստական տնտեսության բնորոշ գիծ։ Սակայն այդ պատկերացումը բացարձակապես անհիմն է։

Տնտեսության սոցիալիստական սիստեմում վճարունակ պահանջարկի և ապրանքային զանգվածի միջև պետք է համապատասխանություն լինի, հակառակ դեպքում կխանգարվի վերարտադրության նորմալ ընթացքը։

Պահանջարկի և առաջարկի հարաբերակցությանը ներկայացվող հիմնական պահանջը կատարելու համար պետք է ապրանքաշրջանառությունն այնպես պլանավորել, որպեսզի յուրաքանչյուր հանրապետություն, մարզ և շրջան ուղարկվող ապրանքների մասսան համապատասխանի պահանջարկին ո՛չ միայն ընդհանուր գումարով, այսինքն՝ արժեքային արտահայտությամբ, այլև կոնկրետ ասորտիմենտով՝ իր սպառողական արժեքով։ Միայն այդ դեպքում հնարավոր կլինի բացառել սոցիալիստական էկոնոմիկայի համար այնպիսի անցանկալի երևույթի գոյությունը, ինչպիսին ապրանքակուտակումն է։

Անհրաժեշտ է ավելի շատ հաշվի առնել այն փաստը, որ սովետական ժողովրդի բարեկեցության աճն ավելի բազմակողմանի է դարձնում նրա պահանջմունքները, բարձրացնում է սպառողների պահանջները ապրանքների որակի նկատմամբ։ Այս պայմաններում շուկայի ուսումնասիրումը, դրա փոփոխությունների հաշվառումը և կանխատեսումը պլանավորող օրգանների ձեռքում դառնում է առաջարկի և պահանջարկի միջև անհրաժեշտ համապատասխանություն սահմանելու կարևորագույն միջոցներից մեկը։



Շուկայի այսպիսի հաշվառման անհրաժեշտության մասին են վկայում, մասնավորապես, արդյունաբերական արտադրանքի իրացման դժվարությունները Հայաստանում։ Մենք ունենք շատ արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք տարեցտարի չեն կատարում արտադրանքի իրացման պլանները։ 1970 թ. հունվարի 13-ին կայացած Հայաստանի կուսկազմակերպության ակտիվի ժողովում ՀԿԿ Կենտկոմի քարտուղար Ա. Ե. Քոչինյանը նշեց. «Անցյալ տարի, օրինակ, արտադրանքի իրացման պլանները թերակատարեցին քիմիական արդյունաբերության վարչության սիստեմի ձեռնարկությունները՝ մի քանի միլիոն ռուբլով, թեթև արդյունաբերության մինիստրությունը՝ 9 մլն, արդյունաբերական շինարարության մինիստրության տրեստները՝ 2 մլն 800 հազար ռուբլով և այլն։ Եթե միայն թվարկված կազմակերպությունները կատարեին արտադրանքի իրացման առաջադրանքները, ապա պարզ է, որ արտապլանային արտադրանքը մոտավորապես կկրկնապատկվեր։ Բայց պետք է նկատի ունենալ, որ ուրիշ շատ ձեռնարկություններ էլ չեն կատարել իրացման առաջադրանքները, ուրեմն այդ ցուցանիշն էլ ավելի բարձր կլիներ»։

Պահանջարկի և առաջարկի միջև համապատասխանություն ապահովելու գործում էական դեր են խաղում գների մակարդակն ու հարաբերակցությունը։ Պետությունը ապրանքա-դրամական հարաբերությունների ողջ կոմպլեքսի օգտագործման միջոցով գներ սահմանելիս ելնում է արտադրության ու շրջանառության ծախքերը հատուցելու և յուրաքանչյուր նորմալ աշխատող ձեռնարկության եկամտաբերությունն ապահովելու անհրաժեշտությունից։ Գների օգնությամբ նա խթանում է ապրանքների արտադրությունը, կարգավորում դրանց նկատմամբ եղած պահանջը։

Անհրաժեշտ է պահպանել գների այնպիսի մակարդակ ու հարաբերակցություն, որպեսզի ձեռնարկություններին ձեռնտու լինի այս կամ այն ապրանքների արտադրությունը, իսկ սպառողներին՝ դրանց օգտագործումը։

Ինչպես հայտնի է, տնտեսական նոր ռեֆորմը ձեռնարկությունների ինքնուրույնությունը խթանելու համար որոշ դեպքերում նրանց տալիս է իրենց արտադրանքի գներ սահմանելու իրավունք։ Այդ դեպքում ձեռնարկությունների եկամտաբերության չափը չպետք է անցնի 20 տոկոսից։ Գտնվեցին, սակայն, ձեռնարկություններ, որոնք հեշտ ճանապարհով շատ շահույթ ստանալու համար բռնեցին իրենց արտադրանքի գներն արհեստականորեն բարձրացնելու ուղին։ Այս կապակցությամբ ՍՍՀՄ Մինիստրների սովետի գների պետական կոմիտեի նախագահ ընկ. Սիտնինը «Правда» թերթում հրապարակած իր հոդվածում գրում է. «Նման փաստերը, չնայած տիպական չեն մեր արդյունաբերության համար, այնուամենայնիվ, տեղ են գտել։ Առաջին հայացքից դրանք ժողովրդական տնտեսությանը մեծ վնաս չեն հասցնում, սակայն, ըստ էության, ձեռնարկությունների ղեկավարները կոլեկտիվներին հրում են պետությանը խաբելու ուղին։ Նոր տեխնիկա արմատավորելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և արտադրանքի թողարկումը ավելացնելու համար պայքար ծավալելու փոխարեն, գործը հանգում է հասարակ օպերացիայի— բարձրացված գներով պատրաստի արտադրանքի հաշվետարկի։ Այս դեպքում չի կարելի արդարացնել նաև գնորդներին, որոնք մատակարարողներին չստուգելով, շռայլորեն ծախսում են պետության միջոցները» («Правда», 10 հուլիսի 1970 թ.)։

Գների տնտեսապես չհիմնավորված փոփոխությունները կարող են խախ-

տել պահանջարկի և առաջարկի հավասարակշռությունը, թուլացնել արտադրողների ու սպառողների միջև գոյություն ունեցող կապը։

Սակայն պահանջարկի ու առաջարկի միջև համապատասխանության խախտման առանձին փաստերը միայն գների մակարդակով ու հարաբերակցությամբ չի կարելի բացատրել։ Հավանաբար, հասունացել է հարցը, որպեսզի որոշ դեպքերում մատակարարողների ու սպառողների, նախագծողների, շինարարների ու կառուցվող ձեռնարկությունների շահերի շաղկապման համար ապահովվի նրանց՝ որպես տնտեսական ընդհանուր գործունեության կողմերի, մասնակցությունը շահույթին։ Դա թույլ կտա զգալիորեն բարձրացնելու պլանավորման ու նյութական խրախուսման մակարդակը, էժանացնելու ապրանքների արտադրությունը և արագացնելու դրանց իրացման պրոցեսը։

Այսպիսով, ժողովրդական տնտեսության կառավարումը կատարելագործելու անհրաժեշտությունը պահանջում է հմտորեն օգտագործել արտադրության վրա ներգործելու տնտեսական բոլոր լծակները, կատարելագործել ապրանքա-դրամական հարաբերությունները։

Արտադրամիջոցների հասարակական սեփականությունը միավորում է բոլոր ապրանքարտադրողներին և սովետական պետությանը հնարավորություն է ընձեռում ո՛չ միայն վերահսկողություն սահմանելու շուկայի նկատմամբ, այլև այն ծառայեցնելու մեր էկոնոմիկայի կարևորագույն խնդրի կատարմանը՝ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Այդ հնարավորությունների իրականացման մասին են վկայում, մասնավորապես, Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների վերջին հինգ տարիների արդյունքները։

Մեր կուսակցությունը, իրականացնելով տնտեսական ռեֆորմը, ժողովրդական տնտեսության կառավարումը կատարելագործելու բնագավառում ճիշտ կուրս վերցրեց։ Դրա հետ միասին դեռևս չի հաջողվել լուծել բոլոր հարցերը։ Այդ կապակցությամբ կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ նշեց. «Կուսակցական կազմակերպությունները, մեր տնտեսական մարմինները և աշխատավորական կոլեկտիվները պետք է լրջորեն աշխատեն տնտեսավարման տնտեսական մեթոդները կատարելագործելու ուղղությամբ։

Այդ առնչությամբ հարկավոր է խոսել նաև այն պատասխանատվության մասին, որն ընկնում է սովետական տնտեսագիտության վրա։ Վերջին տարիներս նա որոշակի հաջողությունների է հասել։ Բայց ժողովրդական տնտեսության արագ զարգացումը, մեր էկոնոմիկայի լուծելիք նոր խնդիրները առաջ են քաշում տեսական ու գործնական ոչ քիչ բարդ պրոբլեմներ, որոնք ինչպես տնտեսական մարմինների, այնպես էլ գիտնականների սևեռուն ուշադրությունն են պահանջում» (էջ 109)։

ՍՄԿԿ XXIV համագումարի այս պահանջը, որը լիովին համապատասխանում է տնտեսական ռեֆորմի ոգուն, պետք է կատարվի անվերապահորեն։ Սովետական տնտեսագետները, անկասկած, իրենց արժանի ավանդը կներդնեն մեր երկրում իրականացվող տնտեսական ռեֆորմի կատարելագործման մեջ, դրանով իսկ կօգնեն ավելի ճիշտ պատկերացնելու տնտեսագիտական շատ հարցեր, այդ թվում նաև պլանի և շուկայի փոխհարաբերության հարցը։

# ԲԱՐԵԿԱՐԳ ՊԱՅՄԱՆՆԵՐ ՆՈՐԱԲՆԱԿՆԵՐԻՆ

ԷԴ. Պ. ՇԱՀԻՆՅԱՆ

*Հայաստանի ԿԿ Երևանի քաղկոմի շինարարության և քաղաքային տնտեսության բաժնի վարիչ*

Երևանի կուսակցական կազմակերպությունները վերջին տարիներս անդադրում ուշադրություն են նվիրում աշխատավորների բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը։ Միայն անցած հնգամյակում քաղաքի սահմաններն զգալի չափով ընդլայնվել են Զեյթունի, Շահումյանի, Նորքի և Արարատի բնակելի կանգվածներում, «Էրեբունի» թաղամասում, աերացիայի (օդահագեցման) կայանի մոտ և այլուր կառուցված բնակելի մի շարք նոր թաղամասերի հաշվին։

Արմատապես վերակառուցվել է քաղաքի կենտրոնական մասը, ուր հին տների փոխարեն խոյացել են ավելի նոր տիպի բնակելի, ինչպես և բազմահարկ տներ ու վարչական շենքեր։

1966—1970 թթ. Երևանում կառուցվել և շահագործման են հանձնվել բնակելի տներ 1,85 *մլն քմ* օգտակար ընդհանուր տարածությամբ, այսինքն՝ այդ տարիներին նոր բնակարաններ են տեղափոխվել մոտ 40 հազար ընտանիքներ։

Անցած հնգամյակում նոր շենքերի կառուցման շնորհիվ աշակերտական տեղերի թիվը դպրոցներում աճել է 48, մանկապարտեզներում ու մանկամսուրներում՝ 10,5 հազարով, մահճակալների թիվը հիվանդանոցներում՝ 1,3, պոլիկլինիկաների թողունակությունն ընդլայնվել է 2,5 հազարով։ Կառուցվել են նաև կուլտուր-կենցաղային տասնյակ նոր այլ օբյեկտներ։

Զգալիորեն աճել է Երևանի (որի բնակչությունն այժմ 800 հազար է) բազմաճյուղ քաղաքային տնտեսությունը։ Բավական է նշել, որ մայրաքաղաքն այսօր մի վայրկյանում ստանում է 8.000 լիտր խմելու ջուր, 1965 թ. 2.900 լիտրի դիմաց։ Կապույտ լճից, Գառնիից բերված նոր ջրատարների շինարարության և Գյումուշ—Արզնի—Արզականից ու Կաթնաղբյուրից կատարվող ջրամատակարարման ավելացման հետ մեկտեղ զգալիորեն ընդլայնվել է ստորերկրյա քաղաքային տնտեսությունը։ Քաղաքի գազամատակարարման ու ջերմամատակարարման ինժեներական կոմունիկացիաների երկարությունն անցած հնգամյակում ավելացել է ավելի քան 480 *կմ*։ Այդ ընթացքում գազիֆիկացվել է 45 հազար բնակարան։ Ավարտվել է քաղաքի բազմաթիվ փողոցների վերակառուցումը, բացվել են նոր թաղամասեր ու մայրուղիներ, ասֆալտապատվել է ավելի

քան 4,5 *մլն քմ* տարածություն: Քաղաքի տարբեր շրջաններում աշխատավորների համար ստեղծվել են հանգստի նոր գոտիներ: Կառուցվել են մի շարք կոմունալ օբյեկտներ, այդ թվում՝ հարմարավետ բազմահարկ «Անի» հյուրանոցը, «Հրազդան» ստադիոնի կոմպլեքսը և մի շարք այլ մոնումենտալ շենքեր ու կառուցվածքներ:

Որոշ աշխատանք է կատարվել քաղաքային տրանսպորտի, կապի և բնակչության կենցաղային ծառայությունների բարելավման նպատակով:

Բայց Երևանի քաղաքային տնտեսության զարգացման շատ ավելի մեծ ծրագիր է նախատեսվում ընթացիկ հնգամյակում: Վերջերս հաստատված նոր գլխավոր հատակագծին համապատասխան (ըստ որի մինչև 1980 թվականը քաղաքի բնակչությունը կհասնի ավելի քան մեկ միլիոնի) իններորդ հնգամյակում նախատեսվում է Երևանում կառուցել ավելի քան 3 *մլն քմ* բնակելի տարածություն, գրեթե 1,8 անգամ ավելի դպրոցներ, նախադպրոցական շենքեր և կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներ, քան անցած հնգամյակում:

Հաջողությամբ կլուծվեն քաղաքաշինական բազմապիսի պրոբլեմներ, որպեսզի ավելի գեղեցիկ ու բարեկարգ դառնա մեր հանրապետության մայրաքաղաքը: Ընթացիկ հնգամյակում Երևանի քարտեզում կհայտնվեն բնակելի նոր թաղամասեր ու միկրոշրջաններ՝ հարավ-արևմտյան կանգվածում, Շահումյանի շրջանում, Ավանում, Նորքի նոր միկրոշրջաններում, Ջրվեժում, Վարդաշենում, Քանաքեռում, Երևանի ջրամբարի մոտ և այլուր: Նախատեսվում է վերակառուցել քաղաքի կենտրոնական մասը՝ այն կառուցապատելով տիպային նոր ու անհատական բնակելի տներով և քաղաքացիական շինարարության այլ օբյեկտներով, այդ թվում նաև քաղաքի նոր բացված գլխավոր պողոտայի երկայնքով, դրանք հարմարեցնելով կառուցված թաղամասերի ստեղծված ճարտարապետական անսամբլներին և պահպանելով ազգային ոճն ու ներդաշնակությունը:

Առաջիկա հնգամյակում Երևանի համար նախատեսվող ամենամյա կապիտալ ներդրումների տեսակարար կշիռը կկազմի հանրապետությունում իրականացվող կապիտալ ներդրումների ծավալի 40—42 տոկոսը:

Քաղաքի արդյունաբերական արտադրանքի ծավալի պլանավորված աճը (60—63 տոկոս) ապահովելու նպատակով բնակարանա-քաղաքացիական շինարարության հետ մեկտեղ 1971—1975 թթ. համար նախատեսված է արդյունաբերական շինարարության մեծ ծրագիր՝ գոյություն ունեցող ձեռնարկությունների վերկառուցման և նոր ձեռնարկությունների շինարարության հաշվին:

ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումներին համապատասխան մայրաքաղաքի կուսկազմակերպությունների ջանքերը ներկայումս ուղղված են աշխատավորների կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի, բնակչության բարեկեցության հետագա բարձրացման նպատակին:

Այս կապակցությամբ քաղաքի շրջգործկոմների, քաղաքային սովետի և համապատասխան կուսկազմակերպությունների համար կարևոր պրոբլեմ են Երևանի, մանավանդ կենտրոնից հեռու գտնվող և նոր բնակեցվող բնակելի թաղամասերի ու միկրոշրջանների բնակչության բնակարանային պայմանների և կոմունալ-կենցաղային սպասարկման ըստ ամենայնի բարելավման հետ առնչվող հարցերը:

Այդ պահանջներից ելնելով, կուսակցության Երևանի քաղկոմը վերջերս անհրաժեշտ գտավ (անցյալ տարվա իր որոշման կատարման ստուգման առնչությամբ) մի անգամ ևս անդրադառնալ բնակչության բնակարանա-կենցաղային պայմանների և կոմունալ սպասարկման վիճակին: Զեկուցելով կուսակցության քաղկոմի բյուրոյի անցյալ տարվա մարտին ընդունված որոշման կատարման ընթացքի մասին, Մյասնիկյանի կուսշրջկոմի առաջին քարտուղար ընկ. Մուրադյանն ընդգծեց, որ այդ որոշման ընդունումից հետո անցած մեկուկես տարվա ընթացքում որոշ աշխատանք է կատարվել Նորքի կանգվածի միկրոշրջանների մոտ 50 հազարի հասնող բնակչության բնակարանա-կենցաղային պայմանների, կոմունալ սպասարկման բարելավման համար:

Քաղկոմի բյուրոյի որոշումից հետո Նորքի բնակելի կանգվածի հինգ միկրոշրջաններում շահագործման են հանձնվել ավելի քան 180 հազար *քմ* ընդհանուր տարածությամբ բնակելի տներ: Կառուցվել են 3 դպրոց, 4 մանկապարտեզ-մանկամսուր, ուսանողական հանրակացարանի 2 խոշոր կորպուսներ, կոմունալ-կենցաղային ու առևտրի մի շարք այլ օբյեկտներ: Բարեկարգվել են առաջին ու երկրորդ միկրոշրջանների մի շարք թաղամասեր, ասֆալտապատվել միջթաղամասային փողոցներ, գազիֆիկացվել են վաղուց շահագործման հանձնըված 17 բնակելի տներ: Որոշ քայլեր են արվել տրանսպորտի աշխատանքի բարելավման նպատակով: Մի տարուց ավելի է, ինչ գործում է տրոլեյբուսի երթուղին մինչև չորրորդ միկրոշրջան: Շահագործման է հանձնվել ավտոբուսի նոր պարկ Նորքում, որն զգալիորեն բարելավել է մարդատար տրանսպորտի աշխատանքը, մանավանդ առավոտվա ու գիշերվա ժամերին: Երկարացվել են նաև ավտոբուսների ու տաքսիների երթուղիները, որոշակի գործ է կատարված բնակելի կանգվածի մայրուղիներում տրանսպորտի երթևեկության անվտանգությունն ապահովելու համար:

Շահագործման է հանձնվել ավտոմատ հեռախոսակայան, որն սպասարկում է Նորքի բնակելի կանգվածի առաջին երեք միկրոշրջաններին. միջոցներ են ձեռնարկվում մինչև ընթացիկ տարվա վերջը մնացած երկու միկրոշրջանները ևս հեռախոսացանցով ապահովելու համար:

Դրա հետ մեկտեղ պետք է խոստովանել, որ ինչպես Նորքի կանգվածում, այնպես էլ քաղաքի կենտրոնից հեռու մյուս բնակելի թաղամասերում ու կոմպլեքսներում, դեռևս չեն ստեղծվել բնակարանա-կենցաղային կոմունալ սպասարկման նորմալ պայմաններ:

Նորքի բնակելի կանգվածում և, առաջին հերթին, երրորդ, չորրորդ ու հինգերորդ միկրոշրջաններում, չկան անհրաժեշտ թվով առևտրի, կոմունալ-կենցաղային սպասարկման, առողջապահության, կուլտուրայի և այլ օբյեկտներ: Այդպիսի իրավիճակի հիմնական պատճառը նախ այն է, որ շարունակվում է միկրոշրջանների ոչ կոմպլեքսային կառուցապատման վնասակար պրակտիկան, երբ բնակելի տներին զուգահեռ չեն կառուցվում խանութներ, ճաշարաններ, կապի ծառայության, առողջապահության ու կոմունալ սպասարկման ձեռնարկություններ: Այսպես, Նորքի բնակելի կանգվածի առաջին չորս միկրոշրջաններում, որտեղ հիմնականում ավարտվել է բնակելի տների շինարարությունը, կառուցապատման նախագծի մեջ մտցված կոմունալ-կենցաղային, առևտրի, առողջապահության, կուլտուրայի ու հասարակական սննդի 35 օբյեկտներից առ այսօր կառուցվել և գործում են միայն 14-ը: Նոր, հինգերորդ միկրոշրջանում, որտեղ շահագործման են հանձնվել 11 բնակելի տներ և մինչև տարեվերջը կհանձնվեն ևս 10-ը, վերջերս էլ դեռևս չի սկսվել կուլտուր-կենցաղային, առևտրի, առողջապահության ոչ մի օբյեկտի շինարարություն, իսկ միակ

դպրոցը, որի շինարարությունն սկսվել է այս տարի, պլանով չի նախատեսված շահագործման հանձնել:

Նորքի բնակելի զանգվածի կենցաղային, առևտրի ու սպասարկման այլ ոլորտների օբյեկտների տեղաբաշխումը չի ապահովում զանգվածի բնակիչների հարաճուն պահանջմունքների բավարարումը: 50 հազար բնակիչ ունեցող բնակավայրի կենցաղային կարիքներն ու հասարակական սնունդն ապահովելու համար անհրաժեշտ է ունենալ կենցաղային սպասարկման 4 կոմբինատ, յուրաքանչյուրը 25—30 բանվորական տեղով, 2—3 լվացքատուն, 2 բաղնիք, նորաձևությունների 3 սալոն, հասարակական սննդի 4 ճաշարան և 3 սրճարան՝ 1,3 հազար տեղով, ինչպես նաև արդյունաբերական ապրանքների և պարենային առնվազն 10—12 խանութ ու վաճառակետ:

Ինչպես վերն ասվեց, Նորքի միկրոշրջանի բնակչության համար չեն ստեղծված այդ նվազագույն պայմանները: Ավելին, բնակելի զանգվածում գրեթե չկան առողջապահության օբյեկտներ, միակ պոլիկլինիկան տեղավորված է առաջին միկրոշրջանի բնակելի տներից մեկի ներքնահարկում: Նման վիճակը, մեր կարծիքով, ստեղծվել է, առաջին հերթին, այն պատճառով, որ միկրոշրջանների կառուցապատման կոմպլեքսայնությանը խանգարում է միկրոշրջանների շինարարության ֆինանսավորման հին կարգը: Կառուցվող օբյեկտները ֆինանսավորում են իրար հետ կապ չունեցող տարբեր մինիստրություններ ու գերատեսչություններ: Օրինակ, գրադարանը կառուցվում է կուլտուրայի մինիստրության, փոստը՝ կապի, պոլիկլինիկան կամ ամբուլատորիան՝ առողջապահության, կենցաղի և առևտրի օբյեկտները՝ համապատասխան մինիստրությունների միջոցներով և այլն:

Լրացուցիչ բազմաթիվ հոգսեր են ծառանում միկրոշրջաններից մեկում նոր բնակարան ստացած մարդու առաջ, երբ ամիսներ, նույնիսկ տարիներ շարունակ նա զանազան անհարմարությունների է հանդիպում. մանկապարտեզը այլ միկրոշրջանում է, հաց ու կաթ գնելու համար հարկավոր է մեծ տարածություն անցնել, վարսավիրանոց նույնպես չկա մոտակայքում, լվացքատներ առհասարակ չկան, բացակայում են նաև կենցաղային սպասարկման մյուս ոլորտների օբյեկտները:

Իսկ որքան դժվար է Նորքի միկրոշրջանների նորաբնակների համար, երբ անբավարար է ջրամատակարարումը: Վատ են ջեռուցվում բնակարանները, տաք ջուր առհասարակ չկա:

Երքաղսովետի, № 3 տրեստի ու նրա ենթակապալառուների մեղքով արդեն չորրորդ տարին է, ինչ ձգձգվում է Նորքի կենտրոնական կաթսայատան գործարկումը, որի հետևանքով հարկ եղավ կառուցել ժամանակավոր 15 կաթսայատներ, որոնք չեն ապահովում տաք ջրի մատակարարումը բնակչությանը: Կենտրոնական կաթսայատան գործարկումը վտանգի տակ է նաև այս տարի՝ պատվիրատուի հետ կապված մի քանի հարցերի լուծումը ձգձգվելու պատճառով: Դա այժմ ստիպում է զգալի միջոցներ ծախսել և դարձյալ ավելացնել ժամանակավոր կաթսայատների թիվը՝ այս տարի Նորքի երեք միկրոշրջաններում շահագործման հանձնվող բնակելի նոր տների ջեռուցումն ապահովելու նպատակով:

Չափազանց դանդաղ տեմպերով է իրականացվում Կաթնաղբյուրից Նորքի բնակելի զանգվածի ջրատարի շինարարությունը: Մյասնիկյանի շրջսովետի գործկոմը և ջրմուղ-կոյուղի տրեստը գործուն միջոցներ չեն ձեռնարկում վերացնելու խմելու ջրի զգալի կորուստներն ու արտահոսքը միկրոշրջանների բնակելի տների սանհանգույցներում և ջրմուղի ցանցերում:



Նորքի զանգվածի երրորդ, չորրորդ ու հինգերորդ միկրոշրջանների բնակելի տները շահագործման են հանձնվում առանց թաղամասերի հարթագծման, բակերում խաղահրապարակների կառուցման, միջթաղամասային փողոցների ասֆալտապատման և կանաչապատման: Դրա համար առաջին հերթին մեղավոր են շինարարները, որոնք հանձն են առնում ստեղծել բնակելի գեղեցիկ թաղամաս կամ միկրոշրջան, բայց առանց բարեկարգման հեռանում են, թողնելով քարերով ու շինարարական աղբով ծածկված չհարթագծված տեղամասեր:

Ներկայումս նման տեսք ունեն Նորքի երկրորդ միկրոշրջանի կոոպերատիվ թաղամասի մեծ մասը, չորրորդ միկրոշրջանի առաջին ու երկրորդ բնակելի թաղամասերը, երրորդ միկրոշրջանի մի մասը և ողջ հինգերորդ միկրոշրջանը: Այս բանում մեղավոր են ո՛չ միայն շինարարները, այլև պատվիրատուները և, առաջին հերթին, քաղպլանը և Երքաղսովետի կապիտալ շինարարության վարչությունը, որոնք տարեցտարի բավարար միջոցներ չեն հատկացնում բարեկարգման աշխատանքներին: Այսպես, Նորքի առաջին չորս միկրոշրջանների բարեկարգման աշխատանքների համար 4,1 *մլն* ռուբլու նախահաշվային արժեքի դիմաց (1965—1970 թթ. համար) պլանավորված էր 1,3 *մլն* ռուբլու աշխատանք, որի դիմաց փաստորեն կատարվել են 1,78 *մլն* ռուբլու: Բարեկարգման նախահաշվային զգալի մասշտաբների պայմաններում 1971 թ. Նորքի հինգ միկրոշրջաններում շինարարական կազմակերպությունների պլանի մեջ են մտցվել բարեկարգման 260 հազար ռուբլու աշխատանքներ, մինչդեռ անցած 7 ամիսներում կատարվել են 370 հազար ռուբլու: Անբավարար պլանավորման ու ֆինանսավորման այդպիսի պրակտիկան հանգեցնում է բարեկարգման անավարտ աշխատանքների ծավալի ամենամյա խիստ ավելացման, ինչպես Նորքի զանգվածում, այնպես և քաղաքի կառուցապատվող մյուս թաղամասերում ու միկրոշրջաններում:

Բաղկոմի բյուրոյի որոշման կատարման ստուգումը միաժամանակ ցույց տվեց, որ Երքաղսովետը, նրա վարչությունները, բաժինները և Մյասնիկյանի շրջսովետը հարկ եղած միջոցները չեն ձեռնարկել Նորքի բնակչության համար բնակարանային նորմալ պայմաններ ստեղծելու, կոմունալ սպասարկումը բարելավելու և մյուս կարիքները բավարարելու նպատակով:

Շարունակվում է թերավարտ և մեծ թերություններով բնակելի տներն ընդունելու վնասակար պրակտիկան: Անցյալ և այս տարի № 3 տրեստի (կառավարիչ՝ Մ. Բաղալյան), Երևանի տնաշինական կոմբինատի (դիրեկտոր՝ Ռ. Մելիքյան), «Բարձրաբերձշին» տրեստի (կառավարիչ՝ Ռ. Կանեցյան) կառուցած տների մեծամասնությունը շահագործման է հանձնվել առանց գազիֆիկացման ու ջերմաֆիկացման, ժամանակավոր կազմակերպված էլեկտրամատակարարմամբ, առանց լիֆտերի մոնտաժման, բարեկարգման և նախագծով նախատեսված մյուս աշխատանքների ավարտման: Շրջսովետը (նախագահ՝ Գ. Բարսեղյան) միջոցներ չի ձեռնարկում պետական բնակելի ֆոնդերի պատշաճ խնամքն ու պահպանումն ապահովելու համար:

Մյասնիկյանի շրջանի բնակշահագործման գրասենյակների, տնային կառավարչությունների անպատասխանատվության պատճառով, բազմաթիվ օրինակաց բնակիչներ մասսայական կարգով կատարել են բնակելի տների ապօրի-

նի վերակառուցումներ, որոնք հաճախ թուլացնում են շենքերի կոնստրուկցիաները: Հսկողության շրջանային մարմինների թողտվությամբ Նորքի միկրոշրջանների տասնյակ բնակելի տների ճակատային պատշգամբները սենյակներ են դարձվել կամ կոպիտ բետոնապատվել ու ցանկապատվել են, աղճատելով թաղամասի ու շրջանի ճարտարապետական ողջ տեսքը:

Երքաղսովետի Երևանշին գլխավոր վարչության կողմից (պետ՝ Զ. Վարդանյան) աշխատանքները ցածր տեմպերով կատարելու պատճառով մի շարք միկրոշրջաններում չի ավարտվել ֆեկալային կոյուղու ստորերկրյա ցանցերի շինարարությունը, չեն սկսվել չորրորդ միկրոշրջանը եկերող տրոլեյբուսի գծի կառուցման աշխատանքները, չափազանց անբավարար է կատարվում Նորքի բնակելի կանգվածի քարշային ենթակայանի, տրոլեյբուսի պարկի և միջթաղամասային մի շարք փողոցների շինարարությունը: Բոլոր միկրոշրջաններում չէ, որ ավարտվել ու նորմալ է արտաքին լուսավորությունը: Ոռոգման ջրատարի, դրա ցանցերի կառուցման աշխատանքները չավարտվելու ու վերահսկողության բացակայության պատճառով ջրելու համար հաճախ օգտագործվում է խմելու ջուրը: Բնակելի կանգվածում լավ վիճակում չէ սանիտարական ծառայությունը. հակասանիտարական բարձիթողի վիճակում են գտնվում բազմաթիվ բակեր ու թաղամասեր:

Նույնն է գործերի վիճակը նաև քաղաքի նորաստեղծ մի շարք այլ թաղամասերում, մասնավորապես՝ Շահումյանի XI—XV թաղամասերում, Արարատյան կանգվածում, աերացիայի կայանի մոտ և այլուր:

Այս ամենը վկայում են, որ մենք դեռ բազմաթիվ չլուծված պրոբլեմներ և թերություններ ունենք քաղաքային տնտեսության այդ կարևոր ճյուղի կազմակերպման գործում: Դա նշանակում է, որ բնակչության, և առաջին հերթին, քաղաքի կենտրոնից հեռու միկրոշրջանների ու թաղամասերի բնակչության բնակարանային և կոմունալ-կենցաղային պայմանների բարելավման հարցերը չեն լուծվում ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջների լույսի տակ:

Մարդու նկատմամբ հոգատարությամբ էր համակված մեր կուսակցության վերջին համագումարի ողջ աշխատանքը: Եվ դա հասկանալի է. անճանաչելիորեն փոխվել է կյանքը. մարդն իրավամբ պետք է առավել լավ կազմակերպի իր կենցաղը, ունենա բնակարանային ավելի լավ պայմաններ:

Գիտակցելով, որ այդ նպատակով դեռ շատ բան կա անելու, կուսակցության Երևանի քաղկոմը, Նորքի բնակելի կանգվածի բնակչության բնակարանային և կոմունալ-կենցաղային պայմանների բարելավման վերաբերյալ կոնկրետ որոշում ընդունելու հետ մեկտեղ, Երքաղսովետի գործկոմին, կուսակցության շրջկոմներին պարտավորեցրել է կոնկրետ միջոցներ իրականացնել քաղաքի բնակչության կոմունալ-կենցաղային, առևտրական, տրանսպորտային սպասարկումը բարելավելու համար:

Քաղաքի կուսակցական կազմակերպությունների, շրջսովետների գործկոմների և բնակչության սպասարկման ճյուղերն ու ոլորտներն իրականացնող մյուս գերատեսչությունների և կազմակերպությունների խնդիրն է՝ բարձր պատասխանատվությամբ, խելամտորեն, տնտեսավար կազմակերպել կենցաղային ծառայությունը, որակյալ կոմունալ սպասարկմամբ օժտված բնակարանային ավելի լավ պայմաններ ստեղծել, դրանով իսկ ամեն կերպ նպաստել բնակչության պահանջմունքների լրիվ բավարարմանը, մեր մայրաքաղաքի աշխատավորների կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի վերելքին:

# Գիտության աշխարհում

## ԼԱԶԵՐՆԵՐԸ ԵՎ ԳԻՏԱ-ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. Մ. ՊՐՈԽՈՐՈՎ**— ֆիզիկոս, ակադեմիկոս: Էլեկտրամագնիսական տատանումների ուժեղացման և գեներացիայի նոր սկզբունքի մշակման համար 1959-ին Ա. Մ. Պրոխորովին (Ն. Գ. Բասովի հետ մեկտեղ) շնորհվել է լենինյան, իսկ 1964-ին՝ նոբելյան մրցանակ (Ն. Գ. Բասովի և Չ. Թաունսի (ԱՄՆ) հետ մեկտեղ) ֆիզիկայի մարզում քվանտային էլեկտրոնիկայի մեջ կատարած հիմնարար ուսումնասիրությունների համար:

**Ն. Վ. ԿԱՐԼՈՎ**— ֆիզիկոս, ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների դոկտոր, ՍՍՀՄ ԳԱ Պ. Ն. Լեբեդևի անվան ֆիզիկայի ինստիտուտի տատանումների լաբորատորիայի վարիչ: Հետազոտությունների հիմնական բնագավառը քվանտային էլեկտրոնիկան է:

Քվանտային էլեկտրոնիկան կամ, այլ կերպ ասած, մազերների և լազերների վերաբերյալ գիտությունը, որն ստեղծվել է 1954—1955 թթ., իսկական հեղափոխություն էր գերբարձր հաճախականության էլեկտրոնիկայում և օպտիկայում[1]: Քվանտային էլեկտրոնիկան առավել խոր հեղափոխական վերափոխումներ մտցրեց օպտիկայի մեջ: Բանն այն է, որ թեև ռադիոդիապազոնի (մազերների) և օպտիկական դիապազոնի (լազերների) քվանտային էլեկտրոնիկայի սարքերի գործողության սկզբունքը նույնն է, բայց դրանց միջև էական տարբերություն կա:

Մազերների ստեղծումը ռադիոդիապազոնում նշանակում էր՝ երևան են եկել սկզբունքորեն նոր, գործողության սկզբունքով քվանտային, միևնույն ժամանակ, ռադիոինժեներների համար միանգամայն սովորական, դասական հատկություններով օժտված ռադիոսարքեր: Անկասկած, մազերները խիստ բարելավեցին ռադիոսարքերի պարամետրերը: Ուժեղարարների զգայունությունը մեծացավ հազարավոր անգամ, գեներատորների հաճախականության կայունությունը՝ տասնյակ հազարավոր: Դա հանգեցրեց էապես նոր հնարավորությունների: Քվանտային էլեկտրոնիկայի այդ նվաճումների նշանակությունը դժվար է գերագնահատել, սակայն սկզբունքով— դա որակական հայտնի հատկությունների քանակական փոփոխությունն է: Մինչև քվանտային էլեկտրոնիկայի երևան գալն էլ ռադիոտեխնիկայում կային կոհերենտ ուժեղարարներ և էլեկտրամագնիսական տատանումների միագույն գեներատորներ:

Այլ բան է օպտիկան, որում լույսի բոլոր աղբյուրներն իրենց բնույթով քվանտային են: Չէ՞ որ քվանտների վերաբերյալ պատկերացումն իսկ առաջացել է հենց տաքացած մարմինների լուսարձակման հատկությունները լուսաբանելիս: Բայց մինչև քվանտային էլեկտրոնիկայի երևան գալը, լույսի օպտիկական բոլոր աղբյուրները ճառագայթում էին ոչ կոհերենտ, ոչ-միագույն տատանումներ: Օպտիկայում չկային կոհերենտ ուժեղարարներ և միագույն գեներատորներ:

Եվ միայն լազերներն են, որ ի տարբերություն սովորական աղբյուրների, ճառագայթում են լու-

[1] *Քվանտային էլեկտրոնիկայի հիմքում ընկած սկզբունքները, դրա ստեղծման ու ձևավորման պատմությունը շարադրված է հեղինակների* «Квантовая электроника» *հոդվածում, որը տպագրված է* «Наука и человечество, *1968» միջազգային տարեգրքում:*

ալիքներ, որոնց ողջ էներգիան կուտակվում է խիստ նեղ մարմնանկյունում (բարձր ուղղվածություն) և կենտրոնացած է ալիքների երկարության խիստ նեղ ինտերվալում (բարձր միագունություն)։ Այդ պայմանավորված է նրանով, որ լազերներն ինքնատատանողական սիստեմներ են, որոնցում էլեկտրամագնիսական տատանումների գեներացիան կատարվում է տատանումների կոհերենտ ուժեղացման պրոցեսում՝ համապատասխան հետադարձ կապի առկայությամբ։ Ընդ սմին, ուժեղացման կոհերենտությունն ապահովվում է, այսպես կոչված՝ ակտիվ միջավայրում համապատասխանորեն նախապատրաստված ինդուցված ճառագայթման արդյունքով, իսկ հետադարձ կապն իրականացվում է, երբ ակտիվ միջավայրը տեղավորվում է ռեզոնատորում , ամենապարզ դեպքում՝ ինչպես Ֆաբրի-Պերոյի ինտերֆերոմետրը։

Ու թեև քվանտային էլեկտրոնիկայի երևան գալուց դեռ շատ վաղ օպտիկան լայնորեն օգտըվում էր քվանտային մակարդակների և անցումների հասկացություններից, ինքնաբուխ և ինդուցված ճառագայթումից, գործադրում Ֆաբրի-Պերոյի ինտերֆերոմետրերը և այլն, ռադիոմեթոդների փոխադրումը հնարավորություն ընձեռեց օպտիկայում ստեղծելու միագույն և բարձր ուղղվածության ճառագայթման հզոր աղբյուրներ։

Այդ իսկ պատճառով օպտիկայում լազերների ստեղծումը նշանակում էր՝ երևան են եկել ո՛չ միայն գործողության սկզբունքով օպտիկայի համար առավելապես նոր, այլև նոր հատկություններով օժտված սարքեր։ Լազերային ճառագայթումը որակապես տարբերվում է ոչ-լազերային ճառագայթումից։ Քվանտային էլեկտրոնիկան բարենորոգեց օպտիկան, նրան օժտեց նոր հատկություններով։

Ներկայումս լազերները գործում են չափազանց լայն դիապազոնում— ուլտրամանուշակագույն ալիքներից մինչև ենթամիլիմետրային ճառագայթման ալիքները, անընդհատ և իմպուլսային ռեժիմով։ Քվանտային էլեկտրոնիկան վճռեց էլեկտրամագնիսական ճառագայթման սպեկտրի երկու տեղամասերի՝ ռադիոյի և օպտիկայի համակցման հինավուրց հարցը։ Բայց այդ չէ գըլխավորը, գլխավորն այն է, որ լազերների երևան գալն օպտիկայում հնարավորություն ընձեռեց կենտրոնացնելու ճառագայթման էներգիան, որն առաջներում անհնար էր, կենտրոնացնելու ինչպես տարածության, այնպես և հաճախականության ինտերվալում։ Լազերային ճառագայթման նոր հատկություններն առավել ակնհայտ կդառնա սուտակի լազերի և Արեգակի ճառագայթման հատկությունների համադրումից։ Արեգակի ճառագայթած էներգիան վիթխարի է։ Տեսանելի ոլորտում Արեգակը ճառագայթում է $7.10^3$ *վտ/սմ*$^2$ կարողության հոսք։ Սուտակի լազերը ճառագայթում է $10^9 \div 10^{10}$ *վտ/սմ*$^2$։ Արեգակի ճառագայթած կարողությունը բաշխված է 3500 A ալիքների երկարության ինտերվալում, սուտակի լազերի ճառագայթումը սովորաբար պարփակված է 0,1 A ալիքների երկարության ինտերվալում։ Այդ ինտերվալում Արեգակը ճառագայթում է միայն 0,2 *վտ/սմ*$^2$։ Արեգակի պայծառության ջերմաստիճանը՝ 6000° K է, իսկ լազերինն անցնում է միլիարդավոր աստիճաններից։ Արեգակի ճառագայթումը չի կարող որևէ մարմին 6000° K ավելի տաքացնել, մինչ սուտակային լազերի ճառագայթումը մարմինը տաքացնում է մինչև տասնյակ միլիոն աստիճաններ։

Սուտակի լազերի չֆոկուսացված ճառագայթում լուսային ալիքի էլեկտրական դաշտի լարվածությունը (1:3) $10^6$ *վ/սմ* է։ Իսկ արեգակն ալիքների երկարության նույն ինտերվալում իր մակերեսին ստեղծում է միայն 12 *վ/սմ*։

Արեգակնային մակերեսը հավասարապես բոլոր կողմերով է ճառագայթում, լազերը՝ նեղ մարմնանկյունով։ Միագունությունը և լավ ուղղվածությունը հնարավորություն են ընձեռում լազերային ճառագայթման ողջ էներգիան ֆոկուսացնել բծաչափ, ճառագայթման ալիքների երկարությանը մոտիկ։ Այս դեպքում լուսային ալիքի դաշտը գրեթե հասնում է ներատոմային դաշտերի չափին։ Բնական է, որ նյութի հետ այդպիսի դաշտերի փոխազդեցությունից ստեղծվում են միանգամայն նոր հնարավորություններ։ Ու թեև լազերների մեծ մասի օ.գ.գ. ցածր է, ճառագայթման էներգիայի քանակի կորուստն առավել չափով փոխհատուցվում է ճառագայթման որակով։

Մեր հոդվածի նպատակն է քննարկել այն հնարավորությունները, որոնք ընձեռում են այդ նոր որակները— լազերային ճառագայթման միագունությունը և ուղղվածությունը։ Լազերներն ինքնըստինքյան հետաքրքրական ու սկզբունքային են, ինչպես ֆիզիկայի ու տեխնիկայի, այնպես և նոր գործադրումների համար։ Լազերների օրինակից պարզ երևում է, թե ինչպես է գիտությունը հանդես գալիս արտադրանքի ուղղակի տեսքով։ Սպառողական առումով լազերները կարող են պատկերացվել որպես փոքր-ինչ ունիկալ, էկզոտիկ բնույթի, զուտ հետազոտությունների համար կոչված եզակի սարքեր։ Բայց դա ամենևին այդպես չէ։ Լազերները տարբերվում են հիմնարար հետազոտությունների զարգացման ասպարեզում հասարակության պահանջների բավարարման համար անհրաժեշտ ժամանակակից գիտության այնպիսի սարքերից, ինչպիսիք են՝ մեծ սինխրոֆազոտրոնները կամ ռադիոաստղադիտակները, որոնց կոնկրետ գործադրելիության արդյունքները տակավին անորոշ են։

Լազերներն ավելի շատ նման են տրանզիստորների կամ էլեկտրոնային լամպերի, որոնք լայնորեն կիրառվում են որպես տեխնիկական առաջընթացի բազա։ Ամեն դասակարգում պայմանական է, բայց հարմար է և կարելի է ապացուցել, որ լազերներն այժմ գտնվում են տեխնոլոգիական կամ տեխնոլոգիապես կարևոր ժամանակակից յուրաքանչյուր նվաճման զարգացման երկրորդ՝ կիրառական զարգացման փուլում։ Լազերներն անցել են խիստ գիտական որոնումների փուլը, բայց տակավին չեն թևակոխել համեմատաբար էժան և բարձր հուսալիություն ունեցող սարքերի մեծ չափերի արտադրությանը, կայուն և բազում դասագրքերով ու մասնագետների սիստեմատիկ պատրաստման համար բնորոշ երրորդ փուլը։

Այնպիսի մասնագետների կարծիքով, ինչպիսին Հերման Կանն է, մինչև 2000 թվականը լազերները կդառնան տեխնոլոգիայի առավել կարևոր բնագավառը։

Այստեղ հարկ է նկատել, որ լազերը պետք է կիրառվի ոչ այնտեղ, որտեղ կարող է օգտագործվել, այլ այնտեղ, որտեղ ուրիշ մեթոդներ, սարքեր, գործիքներ կամ անհնար է գործադրել, կամ պակաս արդյունավետ են։ Պետք է ուշադրության առնել, ամենից առաջ, էկոնոմիկայի հարցերը։ Այսօր արդեն նկատվում է ո՛չ թե առանձին լազերների, այլև լազերային կոմպլեքս սիստեմների արտադրություն, ո՛չ թե լազերների, որպես այդպիսինի մշակման, այլ այս կամ այն գիտական, տեխնիկական պրոբլեմների լուծման տենդենց՝ լազերային մեթոդներով։ Եվ ճիշտ այնպես, ինչպես օրգանիզմի հատկությունները գերազանցում են նրա մասերի հատկությունների գումարին, կազմակերպված կոնգլոմերատներում երևան են գալիս նոր հատկություններ։ Ու թեև լազերային սիստեմների զարգացման ճանապարհին, հատկապես տեխնոլոգիական գործադրումների ընթացքում, պետք է հոգեբանական բնույթի դեռևս շատ դժվարություններ հաղթահարել, նրա առաջընթացն անկասելի է։

Այժմ հերթականությամբ քննարկենք լազերների գործադրումների առանձին կողմերն ու դրանց զարգացումը։

Ինչպես միագույն ռադիոգեներատորները, փոխարինելով կայծային հաղորդակներին, դարձան ռադիոկապի տեխնիկայի հիմքը, այնպես և միագույն օպտիկական գեներատորներն օպտիկական կապի ոլորտին նոր կյանք տվին։ Օպտիկական դիապազոնը դարձավ ռադիոտեխնիկայի մասերից մեկը։ Կապի տեխնիկայի համար շատ էական է ինֆորմացիա բերող ալիքի տատանումների հաճախականության ավելացումը։ Երբ 10 *մ* ալիքի երկարության դեպքում դժվարությամբ է կենսագործվում մեկ հեռացուցային կանալը, իսկ 1 *մ* ալիքի երկարության դեպքում կարող է գոյություն ունենալ 5—10 կանալ, ապա 1 *մ* ալիքի երկարությունն ընդարձակում է հաղորդող դիապազոնը մինչև 5—10 *մլն* կանալով։ Այս պոտենցիալ հնարավորությունների իրացումը պահանջում է մոդուլյատորների, դեդեկտորների համապատասխան մշակում, մթնոլորտում լազերային ճառագայթման տարածման պայմանների պարզում։

Բայց այսօր արդեն հելիում-նեոնային լազերի ճառագայթմամբ ներքաղաքային հեռախոսային ցանցը մրցունակ է՝ գծային կապի համեմատ։ Հեռուստատեսությունն այդ լազերի ալիքով (0,63 *մկ*) կարող է տուն բերել համաշխարհային կուլտուրայի գլուխ-գործոցներին։

Իրական է դարձել տիեզերատեսությունը լազերային ճառագայթմամբ։ Մեծ բարձրության վրա գտնվող լազերային վերահաղորդիչ արբանյակները կարող են խիստ էժանացնել և առավել հուսալի դարձնել երկրի վերահաղորդիչ կետերի աշխատանքը։ Թռչող հենահարթակների տարածական կայունացումը կարող է իրականացվել ժամում 0,1° ճշգրտություն ունեցող լազերային հոլակների օգնությամբ. այդ ճշտությունն իր խիստ կայունությամբ, ամփոփությամբ և գոյատևությամբ լավ է, քան մեխանիկական հոլակների ճշտությունը։ Մոտիկ տիեզերքի համար արդեն մշակվել են եռամյա գոյատևություն ունեցող հելիում-նեոնային լազերների կայուն և կոշտ կոնստրուկցիաներ։

Ամերիկյան տիեզերագնացների Լուսնի վրա անկյունավոր անդրադարձիչներ տեղակայելուց հետո, սիստեմատիկաբար, մինչև 1,5 *մ* ճշտությամբ, Երկիր—Լուսին տարածության լազերային-լոկացիոն ծառայություն է անցկացվում։ Սակայն լազերների երևան գալով իրական դարձած օպտիկական լոկացիան կարող է նաև մեծ չափով օգտագործվել երկրային պայմաններում, օրինակ ավտոմոբիլային երթևեկության անվտանգության համար կամ ինքնաթիռների կույր վայրէջքի ժամանակ, երբ տարբեր երկարություններ ունեցող ալիքներով, ինչպես և ինֆրակարմիր, լազերային լուսավորումը հնարավորություն կընձեռի թուլացնելու մառախուղի, անձրևի և այլ ազդեցությունները։

Թեթևաքաշ և փոքրածավալ, բարձր ճշտության օպտիկական ռադարները կարող են խիստ հարմար լինել տիեզերական հարթակների համակցման ժամանակ, $CO_2$-լազերը՝ միջարբանյակային կապի։

Հետաքրքրական է, Արկտիկայում քարավանների անցկացման ժամանակ, ինֆրակարմիր լա-

զերների գործադրումը սառույցների հետախուզման նպատակով:

Հատկապես հրապուրիչ հեռանկարներ են բացվում լազերային կապի համար խոր տիեզերքում: Խիստ բարձր հաճախականության տեխնիկայի զարգացման տասնամյակը հանգեցրեց դրա հնարավորությունների տեսական սահմանին: Վերջին միակ ուղին հանգում է հաղորդակների կարողության և անտենաների տրամագծերի մեծացմանը: Այժմ լրջորեն քննարկվում է տիեզերանավերում մինչև 30 մ տրամագիծ ունեցող անտենաների և մինչև 100 կվտ կարողության անընդհատ գործող հաղորդակների տեղակայման հարցը: Ուստի, տիեզերանավի առավել խոր տիեզերքը թափանցելուն զուգընթաց, լազերային կապն ավելի հրապուրիչ է դառնում: Ճանապարհորդությունը դեպի արտաքին մոլորակներ (Յուպիտեր, Սատուրն, Ուրան, Նեպտուն), 30 աստղագիտական միավորում, պահանջում է վայրկյանում $10^4 \div 10^6$ բիտ ինֆորմացիայի հոսք: Այդպիսի հոսքը կարող է ապահովվել բավականաչափ հզոր, միամոդային, միահաճախականությամբ և դիֆրակցիոն տարամիտմամբ օժտված լազերի ճառագայթման կոդավորման ճիշտ ընտրությամբ: Անհրաժեշտ է վիճակագրական հետազոտություններ կատարել այն լազերների ճառագայթման, որոնք, մի կողմից՝ ճառագայթում են ոչ իբրև սև մարմին, մյուս կողմից՝ լիովին կոհերենտ չեն:

Տիեզերական կապի համար ամենաօպտիմալ լազերը պետք է գործի կազավորելի իմպուլսային ռեժիմով, իմպուլսները պետք է կարճ լինեն, իմպուլսային կարողությունը՝ մեծ, լազերի, օ.գ.գ.՝ բարձր, ճառագայթման տարամիտությունը՝ դիֆրակցիոն և այն չպետք է էներգիա կորցնի իմպուլսների միջև: Այդպիսի լազեր հիմա չկա: Իդեալին ինչ-որ չափով կարող է մոտենալ նեոդիմի իոնների լազերը՝ վերահամակցական կիսահաղորդչավոր ճառագայթիչներով լցվող իտրիում-ալյումինի նռնաքարում:

Հետաքրքրական է հիշատակել, որ լազեր-հաղորդակն արտաքին մոլորակների հեռավորությունից իր ճառագայթով կպատի ողջ երկիրը:

Կասկածից վեր է, որ մոտակա քսան տարում կստեղծվեն հեռավոր տիեզերական կապի լազերային սիստեմներ:

Կապի օպտիկական գծերի զարգացումը, մոդուլացման, դեդեկտավորման, հետերոդինացման և լուսային տատանումների ուղղման խնդիրներով հանդերձ, պահանջեց օպտիկայի ոլորտը լիովին տեղափոխել ոչ-գծային ռադիոֆիզիկայի բոլոր մեթոդները և տատանումների թեորիան: Ստեղծվեց ոչ-գծային օպտիկան: Բառիս լայն իմաստով օպտիկական դիապազոնի ողջ քվանտային էլեկտրոնիկան կարող է համարվել ոչ-գծային օպտիկա, քանի որ լազերների վերաբերյալ բոլոր խնդիրները գործնականում հանգում են ոչ-գծային դիֆերենցիալ հավասարումների:

Բայց նոր օպտիկայի ոչ-գծայնությունը չի սպառվում ռադիոֆիզիկային նրա նմանությամբ: Հզոր լազերների երևան գալով առաջացան նյութի հետ ճառագայթման փոխազդեցության յուրահատուկ պրոցեսներ: Ամենից առաջ, խիստ հետաքրքրական են ճառագայթման ինքնազդման արդյունքները նյութի վրա, երբ նյութի հատկությունները փոխվում են ճառագայթման ազդեցությամբ, իսկ փոփոխված նյութը փոխազդում է ճառագայթման հետ:

Տրադիցիայի համաձայն ոչ-գծային օպտիկային են բառիս նեղ իմաստով վերագրում օպտիկական արդյունքները, որոնց բնույթը պայմանավորված է լույսի ինտենսիվությամբ: Դրանք արդյունքներ են՝ ճառագայթման ինքնաֆոկուսման, օպտիկական հարմոնիկների գեներացիայի, լույսի հարկադրական ցրման, լուսային տատանումների պարամետրական գեներացիայի, լույսի ինքնալուսավորման կամ ինքնախավարման, երբ նյութական միջավայրի այնպես անխախտ թվացող բնութագիրը, ինչպես նրա թափանցիկությունն է, փոփոխվում է վիթխարի լույսի ազդեցության տակ: Իսկ եթե հաշվի առնենք, որ ուժեղ լուսային դաշտում անհետանում է ֆոտոէֆեկտների կարմիր սահմանը և հնարավոր են դառնում բազմաֆոտոն անցումները, ապա դյուրին է նկատել, որ լազերների ստեղծումից հետո հնարավոր դարձած լուսային հոսքի ինտենսիվության $10^{10}$ անգամ մեծացման շնորհիվ երևան եկան նոր արդյունքներ: $10^8 \div 10^{10}$ վտ/սմ$^2$ ինտենսիվություն ունեցող լազերային ճառագայթման դաշտերում ձեռք է բերվում ներատոմային դաշտերի լարվածությանը համեմատելի $10^5 \div 10^6$ վ/սմ դաշտի լարվածություն: Սա հենց հանգեցնում է ոչ-գծային արդյունքների: Լազերային ճառագայթումը փոխում է այն միջավայրը, որով տարածվում է:

Ոչ-գծային օպտիկան ինտենսիվորեն կատարելագործվում է: Այն ինքնին խիստ հետաքրքրական է և արժանի հատուկ հետազոտման: Այժմ մեզ համար կարևոր է, որ ոչ գծային օպտիկան խիստ ընդլայնում է լազերային հնարավորությունների ընդգրկումները: Ոչ գծային օպտիկայի մեթոդներով ստեղծվել է օպտիկական ողջ դիապազոնում կոհերենտ ճառագայթման աղբյուրները վերակարգավորող նոր դաս, որն, անշուշտ, կարևոր է այն գործադրումների համար, որոնց մասին մենք դեռ խոսելու ենք:

Այստեղ հարկ է հատկապես ընդգծել, որ ոչ-գծային օպտիկան գոյություն ունի միայն լազերային ճառագայթման ինտենսիվության բավական նեղ դիապազոնում: Սկզբում ոչ-գծային



օպտիկայի երևույթները թույլ են, այնուհետև ինտենսիվության աճին զուգընթաց դրանք մեծանում են, հստակ երևում, բայց արդեն $10^{14}$ վտ/սմ$^2$ և ավելի ինտենսիվության հոսքի ժամանակ գոյություն ունեցող բոլոր նյութերը պլազմա են դառնում, ու մենք անցնում ենք ըստ էության ֆիզիկայի բարձրջերմային պլազմայի բնագավառը: Լազերների ամենահետաքրքրական և խոստումնալից գործադրումներից մեկն է այդ:

Արդեն իրականացվել է լազերային ճառագայթմամբ սկզբնավորվող և վերահսկվող ջերմամիջուկային սինթեզը: Նեոդիմի ապակու լազերի ($\lambda = 1,06$ մկ, իմպուլսային կարողությունը՝ $5.10^{10}$ վտ է, իմպուլսի տևականությունը՝ $5.10^{-9}$ վրկ), ճառագայթով մինչև 4,2° K սառեցրած դեյտերիումը ճառագայթահարելիս ստացվում են ջերմամիջուկային նեյտրոններ՝ $2,45.10^6$ էվ էներգիայով: Սինթեզի ռեակցիան ընթանում էր մինչև $10^7$ °K, տաքացրած դեյտերիումի պլազմայում ըստ $D+D \rightarrow H^3+n$ սխեմայի: Այս փորձերի նշանակությունը դժվար է գերագնահատել: Հայտնի է, որ ջերմամիջուկային սինթեզը, որպես էներգիայի աղբյուր, միջուկային բաժանումից առավել հետաքրքրական է: Հումքն էժան է ու առատ: Սինթեզի նյութերը պակաս վտանգավոր են, սարքերի օ.գ.գ. բավական բարձր է: Լազերային ճառագայթմամբ սինթեզի վերահսկման հեռանկարները ոգեշնչում են մշակելու առավել հզոր լազերներ և հետազոտելու նյութի հետ հզոր լազերների ճառագայթման փոխազդեցությունը:

Փորձերում, որոնց մասին վերը հիշատակվեց, պլազմա ստացվել է խտացված դեյտերիումի գոլորշիացումից և այդպիսով առաջացած բոցի շիկացումից: Որոշ դեպքերում պլազման ստացվում է գազանման միջավայրի ճեղքումից՝ լուսային ալիքի էլեկտրական դաշտով (օպտիկական ճեղքում), երբ լույսի մեծ ինտենսիվության ժամանակ գազը դառնում է անթափանցիկ (ոչ-գծային կլանում): Այս բոլոր դեպքերում բազմամիլիոն ջերմաստիճան տաքացումը հնարավոր է հենց լազերային ճառագայթի բարձր, պայծառ ջերմաստիճանի զորության շնորհիվ:

Ակնհայտ է, որ այդ ճանապարհին ծառացած են վիթխարի չափերի հասնող ամենաբարդ խնդիրները՝ ինչպես գազադինամիկ ու պլազմային, այնպես և զուտ լազերային բնույթի: Թերևս անհրաժեշտ է զանազան լազերային և ոչ լազերային մեթոդների կոմբինացիա՝ ջերմամիջուկային սինթեզի ռեակցիաների վերահսկողության նպատակով:

Հասկանալի է, որ լազերների զարգացման ու գործադրման այդ ոլորտը կարևորագույն է ու բազմախոստում: Զարգացման ուղին թեև երկար, բայց արգասավոր է և, անշուշտ, չի կարող ընդհատվել:

Մեծ էներգիայով և կարողությամբ օժտված լազերները հնարավորություն կընձեռեն պատասխանելու մի շարք հարցերի, որոնց դրվածքն այսօր արդեն օրինաչափ է, էլ չենք խոսում այն անակնկալների մասին, որոնք հրամցնում է ֆիզիկային վերստին յուրացված էներգիայի յուրաքանչյուր դիապազոնը:

Մեծ էներգիան է տարրական արդյունքների ուղին, և $10^{14}$ վտ/սմ$^2$ ավելի լազերային ճառագայթման խտության դեպքում հնարավոր է ֆոտոն-էլեկտրոնային փոխազդման տիպի խիստ ուշագրավ բազում երևույթներ դիտել:

Հետաքրքրական խնդիր կարող է դառնալ մասնիկների արագացումն ու իզոտոպների տրոհումը ատոմար սիստեմների հետ լազերային հզոր ճառագայթման ռեզոնանսային փոխազդեցության դեպքում: Դրա համար ուլտրամանուշակագույն դաշտում հարկավոր են անընդհատ գործող վերակարգավորվող հզոր լազերներ:

Քննարկելով լազերների գիտական գործադրումները, չի կարելի չհիշատակել մի սքանչելի կապի երևակումը աստղագիտության ու ֆիզիկայի, մակրոտիեզերքի և միկրոտիեզերքի միջև: Դեռևս նախնիների կանխագուշակած այդ կապը հանդես է գալիս այժմ, թեև ոչ այնպես մեխանիկորեն: Դեցիմետրային դիապազոնի հաճախականություններում ռադիոաստղագետները հայտաբերել են ինֆրակարմիր աստղերի շրջակայքում և միգամածություններում կենտրոնացած OH հիդրոքսիլային ռադիկալի ճառագայթում: Այդ ճառագայթման կատարյալ միագունությունը և ուղղվածությունը, ճառագայթման ինտենսիվության զարմանալի բաշխումը բաղադրամասերի՝ այն եզրակացության են հանգեցնում, որ տիեզերքում գործում է լազերին (մազերին) նմանվող գեներացիան գրգռող մեխանիզմ: Կարելի է այդպիսի արդյունքի առկայություն ենթադրել օպտիկական դիապազոնում, թեև այն դեռևս չի հայտնաբերված: Լազերային տիպի միջաստղային ճառագայթումների որոնումները, դրանց կոնկրետ բացատրությունները կարող են զգալի չափով հարստացնել կոսմոգոնիան: Այդ առումով անհրաժեշտ է նկատի ունենալ, որ գիտության համար հետաքրքրականը լազերային մոտեցումն է, և ո՛չ միայն լազերներն իբրև սարքեր: Թեև այսօր դրանք խիստ ուշագրավ են իբրև սարքեր:

Բիոլոգիայում մեծ նշանակություն ունեն միկրոբիոլոգիական օբյեկտների վրա ալիքի երկարության ազդեցության փորձարարական հետազոտությունները: Լազերը հազվագյուտ է մանրէների կլանման ռեզոնանսային կորությունները որոշելու համար: Հնարավոր է մի տիպի մանր-

էների ամլացումը և այլ տիպի մանրէների աճի խթանումը երկակի բակտերիական համակարգերում: Լազերային ներգործությունը կարող է միկրոբակտերիալ աճի կատալիզատոր լինել: Կենդանի բջիջների ընտրական ուլտրամանուշակագույն ֆլյուորեսցենտային միկրոսկոպիան կարող է հանգեցնել կարևոր շատ հայտնագործությունների:

Կենդանության ֆոտոքիմիան, բջջում անհատական քրոմոզոմներ մշակելու կարողությունը, դրանք ընտրողաբար ճառագայթահարելն ու քայքայելը, որը պայմանավորված է տարածության մեջ ու սպեկտրում էներգիայի կուտակմամբ, հնարավորություն է ընձեռում in vivo u in vitro մուտացիայի հետազոտման համար ներգործելու մոլեկուլային մակարդակով:

Ուլտրամանուշակագույն դիապազոնի կադմիում-հելիումի լազերն արդեն պարունակում է քվանտի 3,8 *էվ* էներգիա, իսկ կապի էներգիան **OH** միացություններում 4,35 *էվ* է, **NH**— 3,8 *էվ*, **CH**— 3,47 *էվ*, **AgCl**— 3,1 *էվ* է: Սա ցույց է տալիս, որ մենք մոտեցել ենք կենդանության մոլեկուլի վրա անմիջական ու զորեղ ներգործությանը:

Քիմիայում լազերները սինթեզի, դիսոցացման, կատալիզի հանգեցնող ռեզոնանսային միջամտությունների հնարավորություն են տալիս:

Այդ բոլոր հնարավորություններն իրականացնելու համար հարկավոր են անընդհատ ռեժիմի ուլտրամանուշակագույն դիապազոնի վերակարգավորվող բավական հզոր լազերներ: Ցանկալի է 2000—4000 A$^0$ դիապազոն և ավելի քան 10 *մվտ* կարողություն:

Լազերային ճառագայթումը բացարձակապես մանրէազերծ ներգործություն է: Դա կարևոր է և՛ քիմիայի, և՛ բժշկության համար: Արդեն հայտնի են լազերների հաջող գործադրումները վիրաբուժության, ուռուցքաբանության, ակնաբուժության, ստոմատոլոգիայի բնագավառներում: Կոնկրետ գործադրումները նոր են ընդլայնվում, իսկ առջևում մեծ ապագան է:

Քվանտային էլեկտրոնիկայի նշանակալից նվաճումներից է հոլոգրաֆիան: Այն, անշուշտ, հայտնագործել է Դ. Գաբորը դեռևս 1947 թ.: Բայց մինչ լազերների երևան գալը վերջինս դանդաղ էր զարգանում: Լազերները վերափոխեցին հոլոգրաֆիան: Ինչպես հայտնի է, հոլոգրաֆիան առարկաների ծավալային պատկերն ստանալու մեթոդն է՝ առարկայի անդրադարձրած լուսային ալիքի կառուցվածքի վերականգնմամբ: Բանն այն է, որ հոլոգրամայի գրառումների ընթացքում ֆոտոհարթակի վրա սևեռվում է պատկերը, որն ստացվում է հարթակի վրա առարկայի անդրադարձրած լուսախրձի և հենախրձի ինտերֆերենցիայի ժամանակ: Մշակված ֆոտոհարթակը տարածության մեջ լուսավորելիս, նրա հետևում վերականգնվում է առարկայի մեծածավալ պատկերը: Էմուլսիայի հաստ շերտի ողջ մակերեսով ինտերֆերենցիոն պատկերի գրառումն ընձեռեց մեծածավալ գունավոր պատկերն ստանալու մեթոդը: Ֆոտոհարթակը, որի վրա սևեռվում է լուսային ալիքի ստրուկտուրան, կոչվում է հոլոգրամա: Հոլոգրամայում չկան թեկուզ ինչ-որ չափով նախօրինակը հիշեցնող տարրեր: Միայն հենախրձով լուսավորումն է վերականգնում նախկին պատկերը: Պարզ, հըստակ հոլոգրամները հնարավոր դարձան միայն լազերների՝ սքանչելի ինտերֆերենցիոն պատկերներ տվող միագույն ճառագայթման ինտենսիվ աղբյուրների երևան գալով:

Կասկածից վեր է, որ առավել մեծ տպավորություն է ստացվում ո՛չ թե հոլոգրամայի մասին պատմածից, այլ այն դիտելուց: Դա, իրոք, բառիս բուն իմաստով, օբյեկտի ամբողջական գրառումն է: Հոլոգրաֆիայի* հարցը, իհարկե, արժանի է հատուկ ուշադրության: Այսօր մեզ համար կարևոր է նշել հոլոգրաֆիայի առկայությունը և գնահատել դրա գործադրման հեռանկարները:

Ամենակարևոր ոլորտներից մեկը հիշողության հոլոգրաֆիական սիստեմների զարգացումն է: Ցնցող է հիշողության խտությունը հոլոգրամայում: Այն հասնում է $10^8 \div 10^9$ *բիտ/սմ*$^2$: Ընդ որում, հարթակների պակասությունները չեն ոչնչացնում ու չեն աղավաղում դրանց վրա սևեռվող ինֆորմացիան: Ինֆորմացիայի սևեռումը լոկալ չէ. այն ալիքային ճակատի սևեռման տեսքով սփռված է ողջ հարթակով մեկ և դրա համար էմուլսիայի վրայի առանձին փոշեհատիկները կամ անցքերն այնպես նկատելի չեն, ինչպես սովորական լուսանկարչության ժամանակ:

Հիշողության մեծ տարողականությունը, հաշվելու արագությունը և այն հիշողության մեջ կուտակելը հանգեցնում են այն բանին, որ հոլոգրաֆիական հիշողությունը վերափոխում է հաշվողական տեխնիկան: Ժամանակակից հաշվողական մեքենաները խիստ հզոր են էլեկտրոնային մասի առումով, բայց դրանց զարգացման համար անհրաժեշտ է հաղթահարել ծայրամասային սարքերի դանդաղաշարժությունը: Հիշողության հոլոգրաֆիական սարքերը կփոխարինեն ժապավեններին, սկավառակներին և ինֆորմացիայի պահպանման մեծածավալ արտաքին այլ սարքերին: Հնարավոր կլինի փաստաթղթերի ընթերցումը, պատկերների որոշումը, գըծագրերով և ծավալային գունավոր պատկերներով պրոցեսավորումը, կապի սիստեմների հետ մեքենաների ռեալ միաձուլումը: Տեսանելի պատկերի պաշարը հնարավորություն կտա համակարգային մոտեցում զարգացնելու մեքենաների հանդեպ, կվերանա մեքենաների մեջ անդադար գործառնական ինֆորմացիաներ մտցնելու անհրաժեշտությունը:

Այդ բոլոր հնարավորություններն իրականացնելու համար անհրաժեշտ է մշակել էմուլսիայի հաստ շերտեր ունեցող կատարյալ ֆոտոհարթակներ. հնարավոր է, որ ֆոտոհարթակները փոխարինվեն նույնչափ արագ լուսարձակող, բայց տևական երևակում չպահանջող հուսալի սևեռմամբ ֆոտոզգայուն տարրերով: Անհրաժեշտ է մշակել օպտիկա-էլեկտրոնային կերպափոխիչներ, որոնց լուծողունակությունը մեկ միլիմետրի վրա 100 գծից վար չլինի:

Այդ ամենը, անշուշտ, պետք է ապահովվի լավ միագունություն և տեսանելի դիապազոնի տարբեր ալիքների ուղղվածություն ունեցող հուսալի գազային լազերների կոմպլեկտով: Կասկածից վեր է, որ լուրջ հաջողության կարելի է հասնել միայն լազերային գործի և հոլոգրաֆիայի կոոպերացիայի դեպքում՝ մի շարք տեխնիկական դիսցիպլինների հետ մեկտեղ:

Հոլոգրաֆիան, որպես հետազոտման մեթոդ, սկսում է կիրառվել տեխնիկայի ամենատարբեր բնագավառներում: Բավական է նշել մանրադիսպերս համակարգերի, ապակու և պողպատի մըշակման վերահսկողության, դինամիկ ու ստատիկ բեռնվածքի պայմաններում կոնստրուկտիվ նյութերի հետազոտությունները: Հոլոգրաֆիան սովորական միկրոսկոպիայից ավելի լավ է հնարավորություն տալիս որոշելու նյութերի հոգնածության խախտումները, քանի որ քայքայումից դեռ շատ վաղ խախտվում են կոռելյացիոն հարաբերությունները անդրադարձնող և հենախրձային լուսային հոսքերի միջև: Իմպուլսային լազերների օգնությամբ ստացվող ակնթարթային հոլոգրամները արժեքավոր ինֆորմացիա են տալիս արագընթաց պրոցեսների վերաբերյալ: Գընդակի սուրալը, հարվածող ալիքը, հրթիռային փողելքի բոցը— այս ամենը հետազոտման հոլոգրաֆիական մեթոդների գործադրման ասպարեզ են:

Առավել խոստումնալից գործադրում է տնային հեռուստատեսային կայանքների սիստեմների մշակումը՝ հոլոգրամների վրա գունավոր մեծածավալ հեռուստատեսային ծրագրի գրառմամբ և տնային պայմաններում դրա հետագա կատարմամբ: Ամերիկյան ՅԱՍԱ ֆիրմայի մասնագետների կարծիքով, լազերների, առևտրական տեսակետից առավել կարևոր այդ գործադրումը կապահովի միլիարդաբեր շուկա:

Վերջապես, քննարկելով լազերների օգտագործման հեռանկարները, չի կարելի չանդրադառնալ դրանց գործադրման ամենաառաջին բնագավառին: Մենք նկատի ունենք նյութերի մշակման տեխնոլոգիան: Անկասկած, լազերները, ամենից առաջ, պետք է օգտագործվեն այնտեղ, որտեղ այլ մեթոդներ անհնար է գործադրել կամ պակաս արդյունավետ են: Լազերային ներգործման հիմնական առավելությունները՝ ջերմության տարածման ոլորտի փոքրությունն է, էլեկտրական լիցքերի տեղափոխման և մեխանիկական շփման բացակայությունն է, վակուումային բալոններում և ագրեսիվ գազերի առկայության պայմաններում աշխատելու հնարավորությունը:

Հատկապես արդյունավետ է խիստ պինդ նյութերի մշակումը: Սուտակի լազերն ալմաստի ֆիլիերների պատրաստման աշխատանքային ծախսումները 24 ժամից հասցրեց մի քանի րոպեի: Լավ է ընթանում ռեզիստորների հարմարեցման գործը, ինտեգրալ սխեմաների պատրաստումը, արագ պտտվող մարմինների բալանսավորումն առանց դրանց կանգնեցման և այլն: Իհարկե, լազերային տեխնոլոգիական միջոցների պոտենցիալ ողջ հնարավորությունների իրացումը պահանջում է ծրագրային կառավարմամբ կոմպլեքս կայանքների նախագծում, համակցում այլ մեթոդների հետ:

Չուսումնասիրվածն այս բնագավառում դեռևս շատ է: Այսպես, օրինակ, սկզբում ենթադրվում էր, որ ամենաշահավետ $CO_2$-լազերը կարող է գործադրվել միայն ոչ-մետաղները մշակելիս. նկատի էր առնվում 10-միկրոն ոլորտում մետաղների անդրադարձման մեծ գործակիցը: Այնուամենայնիվ, պարզվեց, որ իմպուլսային մեծ կարողության դեպքում մետաղները շատ լավ հալվում են և $CO_2$—լազերների ճառագայթմամբ ենթարկվում հերմետիկ զոդման:

Վերոհիշյալ շարադրանքում քննարկվեցին գիտության և տեխնիկայի մեջ լազերների գործադրման շատ ոլորտներ: Լուրջ հաջողությունները որոշակի ջանքեր են պահանջում: Նոր տեխնիկայի ստեղծումը միշտ թելադրում է նոր, առավել ժամանակակից տեխնոլոգիայի մշակում: Կիսահաղորդիչների տեխնոլոգիան թեակոխել է այդ փուլը, այն չի կարող շրջանցել քվանտային էլեկտրոնիկան: Տեխնոլոգիական բազում պրոբլեմների— բյուրեղների ավելացման, գերզուտ նյութերի և առաջադրված հատկություններով նյութերի ստացման, նույնական օպտիկական նյութերի մշակման պրոբլեմների լուծումից հետո միայն լազերների գործադրման և արդյունավետության շրջանակն զգալի չափով կընդլայնվի:

Նոր հնարավորություններ կընձեռվեն հենց լազերներով աշխատանքի շնորհիվ: Հետազոտողների համար հրատապ հարց է $CO_2$-լազերների

* *Հոլոգրաֆիա (հունարեն՝ «հոլոս»— լրիվ և «գրաֆո»— գրում եմ) լրիվ գրառում:*

մշակումը գրգռման նոր մեթոդներով: Այդ լազերների պարզությունը, էժանությունը, մեծ չափերի էներգահանումը և բարձր օ.գ.գ. վիթխարի արդյունք են խոստանում: Անհրաժեշտ է ամեն կերպ արագացնել իտրիում-ալյումինի նռնաքարում նեոդիմի իոնների լազերների, հեռավոր ինֆրակարմիր և ուլտրամանուշակագույն դիապազոններում մեծ կարողության գեներատորների հետ կապված աշխատանքները, 15—20 անգամ բարձրացնել կիսահաղորդչավոր լազերների օ.գ.գ. և կարողությունը: Այսօր ևս առավել քան ակտուալ է նեոդիմի ապակու և սուտակի լազերների կարողության ավելացման խնդիրը, կենսականորեն անհրաժեշտ են վերակարգավորվող հզոր լազերները, ռենտգենյան ճառագայթման և այլ լազերներ:

Լազերների գործադրման բնագավառներն անընդհատ ընդլայնվում են: Դրանց կատարելագործման համեմատ նորանոր հնարավորություններ են ընձեռվում: Այսօր արդեն կարելի է երազել այնպիսի խնդիրների շուրջ, ինչպիսին լոկալ եղանակի կառավարումն է, ձյունե հոծ զանգվածակույտերի զսպումը լեռներում, առանց գծերի էներգիայի հաղորդումը մեծ տարածություններ՝ բարձր օ.գ.գ.-ով: Էներգիայի հաղորդումը կարող է հատկապես հեռանկարային լինել քիմիական կամ գազադինամիկ միջոցներով գրգռվող $CO_2$-լազերների օգտագործմամբ, երբ քիմիական կամ ջերմային էներգիան ուղղակի վեր է ածվում բարձր ուղղվածություն ունեցող խիստ միագույն էլեկտրամագնիսական ճառագայթման: Այստեղ կարելի է խոսել նույնիսկ տիեզերական կայանների համար կամ Լուսնի վրա էներգիայի նպատակաուղղված հաղորդման մասին:

Ֆիզիկոսները, համենայն դեպս, առավել լուրջ հույսեր են դնում նյութի հետ լազերային գերհզոր ճառագայթման փոխազդեցության արդյունքների հետազոտման վրա:

Լազերների գոյության առաջին տարիները էական արդյունքներ տվեցին ինչպես գիտության, այնպես և էկոնոմիկային: Դրանց գործադրման բնագավառը տարեցտարի կընդլայնվի:

«Будущее науки», Международный ежегодник, М., 1971 г.



# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

Վ. Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ

## ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՇԱԳՐԱՎ ՓԱՍՏԱԹՈՒՂԹ

*Խոսքը Նյու-Յորքում լույս տեսնող «Նեյշըն» («Ազգություն») շաբաթաթերթի 1922 թվականի մարտի 22-ի համարում հրապարակված ամերիկյան հասարակական գործիչ Փեքստոն Հիբընի* Սովետական Հայաստան *վերնագիրը կրող հոդվածի մասին է[1]: Հոդվածի հեղինակը ամերիկյան "Neur East Rilif„ (Մերձավոր Արևելքի օգնության) կոմիտեի՝ Հայաստանի բաժանմունքի աշխատակիցներից էր: 1920—1921 թթ. գտնվելով Հայաստանում՝ նա քաջատեղյակ էր մեր երկրի իրադարձություններին, դաշնակցական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականությանը, Հայաստանում սովետական կարգերի հաստատման, սովետական իշխանության շինարարական առաջին քայլերի ականատեսն էր, իրազեկ Հայաստանի նկատմամբ Սովետական Ռուսաստանի օգնությանը, ժողովրդական լայն խավերի՝ նոր կարգերի հանդեպ ունեցած վերաբերմունքին:*

*1921 թ. վերջին Փեքստոն Հիբընը Հայաստանից վերադարձավ ԱՄՆ: Երևանից հայրենիք մեկնելուց առաջ նա տեսակցություն խնդրեց Հայկական ՍՍՀ ժողովրդական կոմիսարների սովետի նախագահ Ալ. Մյասնիկյանից: Մյասնիկյանը Հիբընին ընդունեց և զրուցեց նրա հետ: Վերադառնալով ԱՄՆ՝ Հիբընը որոշեց Հայաստանի մասին իր տեսածն ու լսածը պատմել ամերիկյան հասարակությանը: Այդ առավել ևս անհրաժեշտ էր նա համարում նաև այն պատճառով, որ այդ տարիներին ԱՄՆ-ի մամուլը Սովետական Հայաստանի, Սովետական Ռուսաստանի նկատմամբ նրա հարաբերությունների մասին տարածում էր շատ առասպելներ, չարանենգ հերյուրանքներ, որոնք շփոթեցնում էին հասարակական կարծիքը, ատելություն սերմանում սովետների հանդեպ: Բուրժուական մամուլը ձգտում էր հատկապես ցույց տալ, որ Հայաստանը սովետական կարգերի հաստատումից հետո դադարել է սուվերեն ազգային պետություն լինելուց: ԱՄՆ-ի ռեակցիոն մամուլի վայրահաչություններին բուռն կըրքով ձայնակցում էր դաշնակցական մամուլը: Հայաստանից ԱՄՆ և արտասահմանյան այլ երկըրներ փախած դաշնակցական լիդերները հայկական թերթերը ողողում էին հակասովետական, հակակոմունիստական զրպարտիչ նյութերով, ապակողմնորոշում սփյուռքահայությանը:*

*Ամերիկյան մամուլի հակասովետական համատարած ելույթների այդ պայմաններում խիզախություն էր Հիբընի ելույթը Սովետական Հայաստանի մասին: Նրա հոդվածը «Նեյշըն» հանրահայտ շաբաթաթերթում՝ դա ամերիկյան մամուլում Սովետական Հայաստանի մասին ասված դրվատանքի առաջին խոսքն էր, որը լայն արձագանք գտավ ամերիկյան առաջադեմ շրջաններում, և, հատկապես, ամերիկահայ աշխատավորության շարքերում: Որպես օբյեկտիվ և անկաշառ անձ, իրական փաստերի հիման վրա Հիբընը հանգել էր այն եզրակացության, որ սովետական իշխանության հաստատումը Հայաստանում փրկություն էր հայ ժողովրդի համար, իսկ դաշնակների տիրապետությունը՝ կործանարար:*

*Հիբընի հոդվածն անմիջապես թարգմանեց և հրատարակեց ամերիկյան կոմունիստական*

---

*1. Pexton Hibben—Soviet Armenia, "The Nation„ March 22, 1922, vol. c. XIV, № 2959, p.337—339*

է. «Սովետական Հայաստանն ունի միայն մի բարեկամ՝ վիրխարի Ռուսաստանը, որի պաշտպանության ներքո է գտնվում նա՝ սերտորեն միավորված Անդրկովկասյան հանրապետությունների հետ»:

Հիրընը կտրականապես ժխտում է չարամիտների այն հերյուրանքը, թե իբր Սովետական Հայաստանն անկախ չէ, կորցրել է իր ազգային կերպարանքը:

«Ներկայիս Հայաստանը,— գրում էր նա, — սովետական կառավարության ղեկավարությամբ ավելի հայկական է, քան երբևիցե, որ ես գիտեմ նրան»:

Այս միտքը կրկնեց նաև իր բանախոսության մեջ:

«Բանվորական տարրերու ձեռքը կգտնվի այսօր Սովետական Հայաստանի կառավարությունը,— հայտարարեց նա:— Ես անձամբ կճանչնամ այդ կառավարության անդամները և իրենց հետ խոսակցություններ ունեցեր եմ: Ոչ մեկ ուրիշ կառավարություն ավելի հայկական չէր եղել և չէր կրնար ըլլալ, քան ներկա կառավարությունն է: Ես ներկա կառավարությունն ավելի հայկական կհամարեմ շատ որոշ պատճառով մը: Դաշնակցական կառավարությունն իր աչքերն հառած էր դեպի Փարիզ, դեպի Լոնդոն, դեպի Վաշինգտոն, ան կսպասեր, որ դրսեն գա ամեն ինչ, օգնություն, հրահանգ, բելադրություն, նույնիսկ զինվոր, ներկա հայ կառավարությունը, ատոր հակառակ իր ամբողջ ուշադրությունը կենտրոնացուցած է երկրի բուն սրտին մեջ ապրող ժողովրդի վրա: Ան ամեն ջանք կգործածե երկրի տընտեսությունը վերականգնել» («Բանվոր», № 25, 1922 թ., մայիսի 20):

Հիրընը քննադատում է ԱՄՆ-ի կառավարությանն այն բանի համար, որ նա թշնամական դիրք է գրավել Սովետական Հայաստանի նկատմամբ, չի ցանկանում ճանաչել նրա կառավարությունը: Այդ առթիվ ԱՄՆ-ի պետական քարտուղար Հյուզի պատճառաբանություններն անհիմն է համարում և գտնում է, որ ԱՄՆ-ի կառավարությունը պետք է ճանաչի Սովետական Հայաստանը: Իսկ մինչ այդ, նշում է նա, բոլոր հայկական տարրերը «...երկրի ներսը և անկե դուրս պարտավոր են զորավիգ ըլլալ իրենց կառավարությանը և ուրիշներեն բան մը ակնկալելե առաջ իրենց ուժերը լարեն. կենսունակ, առաջ շարժվող տարր մը դարձնելու հայ ժողովուրդը երկրի մեջ»:

Հիրընը հավաստիացրեց իր ընթերցողներին, որ Սովետական Հայաստանի ղեկավարները ժողովրդի արժանավոր զավակներն են հենց և հըմտորեն վարում են պետության գործերը:

«Այն մարդիկ,— գրում էր Հիրընը «Նեյշըն»-ում,— որոնք այժմ մտնում են Հայաստանի սովետական կառավարության կազմում, զերազանց մարդիկ են, ավելի լավը, քան նրանք, որոնց ես տեսել եմ անցյալում, այս երկրի պատասխանատու պոստերում»:

Դիմելով ամերիկահայ աշխատավորներին՝ Հիրընը ասաց, որ նրանք պետք է ամեն կերպ օգնեն Սովետական Հայաստանի կառավարությանը:

«Ձեր ամենուղ պարտականությունն է,— հայտարարեց նա,— օգնության հասնել այդ կառավարությանը, ուժ տալ անոր, որ կըրցեր է մեկ ու կես տարվա ընթացքին խաղաղություն հաստատել երկրի մեջ և ժողովուրդը ֆիզիկական ոչնչացումե փրկել» («Բանվոր», № 25, 1922 թ., մայիսի 20):

Փեքստոն Հիրընն իր բանախոսությունն ավարտեց՝ հայտնելով այն հաստատ համոզմունքը, որ սովետական կարգերը Հայաստանում կանդուն են: Որպես Սովետական Հայաստանի իսկական պրոպագանդիստ, նա, ի պատասխան սովետական կարգերի հակառակորդների ու երերվողների, հայտարարեց.

«Ես հաստատ հավատքով կնայեմ ներկա հայ կառավարության վրա, ան, կհավատամ թե, շատ հաստատուն է և ժողովրդի համակրությունը կվայելե: Իրապաշտ հայ ժողովուրդն ալ, չնայած իր անասելի չարչարանքներու ու զոհաբերումներու, ապագա մը ունի, եթե անոր բոլոր ցաք ու ցրիվ անդամները ռուսի պահանջը լավ հասկանան, ազգայնական մտայնութենե ազատագրվին, իրենց դրացիներու և մանավանդ Ռուսիո հետ լավ բարեկամություն հաստատեն և իրենց կառավարությանն օժանդակեն» (նույն տեղը):

Փեքստոն Հիրընն իր հոդվածով և բանախոսությամբ հսկայական ծառայություն մատուցեց ամերիկահայ աշխատավորությանը սովետական կարգերի հանդեպ ճիշտ կողմնորոշվելու հարցում: Նա, անշուշտ, պատկանում է ամերիկյան գործիչների այն բանակին, որոնց փայլուն ներկայացուցիչներն էին՝ 10 օր, որ ցնցեց աշխարհը գրքի հեղինակ Ջոն Ռիդը, Լենինի մասին գրքի հեղինակ Ալբերտ Վիլյամսը. նրանք, որ Սովետական Հանրապետության, Հոկտեմբերյան հեղափոխության մեծ առաջնորդի գործերի առաջին պրոպագանդիստներն էին ամերիկյան հողում: Փեքստոն Հիրընը կոմունիստ չէր, բայց նա կարողացավ այդ ժամանակաշրջանի միջազգային բարդ պայմաններում, հակառակ տիրող հոսանքին, ճիշտ ըմբռնել սովետական կարգերի պատմական նշանակությունը և իր բարեկամական խոսքն ասել ի պաշտպանություն այդ կարգերի:

---

ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ

ամբիոն

Ի. Ս. ԲԱԼՅԱՆ

## ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՈՒՏՈՊԻՍՏԻ ՀԱՎԱՏԱՄՔԸ

Անցյալ դարի հասարակական-քաղաքական հոսանքների մեջ աչքի ընկնող տեղ են գրավել պետրաշևականները, որոնք հարում էին ուտոպիական սոցիալիզմին: Այդ ձևավորվող հեղափոխական-դեմոկրատական ուղղության ակտիվ գործիչներից էր Դ. Դ. Ախշարումովը:

Դմիտրի Դմիտրևիչ Ախշարումովը ծնվել է 1823 թվականի մայիսի 14-ին Պետերբուրգում, ազնվականի ընտանիքում: Սկզբնական կրթությունն ստացել է պետերբուրգյան առաջին գիմնազիայում: 1842 թվականին նա ընդունվում է Պետերբուրգի համալսարանի նախ բնագիտական, ապա արևելյան լեզուների ֆակուլտետը, որն ավարտում է 1846 թ.: Համալսարանում Ախշարումովը ծանոթանում է այդ ժամանակվա առաջավոր մտավորականության հետ, որոնց շրջանում տիրապետողը Վ. Գ. Բելինսկու և Ա. Ի. Գերցենի հեղափոխական-դեմոկրատական հայացքներն էին: Համալսարանական տարիներին նա ուսումնասիրեց ռուսական գրականությունը, հատկապես Մ. Վ. Լոմոնոսովի և Ա. Ն. Ռադիշչևի ստեղծագործությունները. նրա վրա մեծ ազդեցություն ունեցավ նաև արևմտա-եվրոպական, առանձնապես Շ. Ֆուրյեի ուտոպիական սոցիալիզմը: 1848 թվականից նա հաճախում է Մ. Վ. Բուտաշևիչ-Պետրաշևսկու հայտնի «ուրբաթներին», որտեղ քննարկվում էր առաջավոր մտավորականությանը հուզող սոցիալական մի շարք հարցեր: Հեղափոխական գործունեության համար Ախշարումովը արտաքսվում է Խերսոն:

Պատիժը կրելուց հետո, նա որոշակիորեն հեռանում է քաղաքական ասպարեզից:

1862 թվականին Ախշարումովը արծաթե մեդալով ավարտում է Պետերբուրգի բժշկա-վիրաբուժական ակադեմիան, իսկ երկու տարի հետո կատարելագործման նպատակով մեկնում է արտասահման: 1866 թվականին գերմաներեն լեզվով լույս է տեսնում նրա «Ընձախոտի ազդեցությունը կենդանի օրգանիզմի վրա» մենագրությունը, որի համար արժանանում է բժշկական գիտությունների դոկտորի գիտական աստիճանի:

Դ. Դ. Ախշարումովը XIX դարի 70—80-ական թվականների ռուսական բժշկագիտության ամենակարկառուն ներկայացուցիչներից էր: Նա մինչև խոր ծերություն (մահացել է 1910 թ.) անվարան մնաց իր դավանանքում:

Հայտնի է, որ անհատի ազատության, նրա բազմակողմանի զարգացման հարցերը եղել են ուտոպիստ-սոցիալիստների ուշադրության կենտրոնում: Ելնելով հումանիզմի դիրքերից, նրանք բազմիցս փորձել են լուծել հասարակական և անհատական շահերի միջև եղած անտագոնիզմը: Նրանց մի մասը, հատկապես ռուսական ուտոպիական սոցիալիզմի ներկայացուցիչները, այդ հարցի լուծումը կապում էին գոյություն ունեցող հասարակական-քաղաքական կարգերի վերացման հետ:

Անհատի ներդաշնակ զարգացման հարցը բավականին զբաղեցրել է նաև Դ. Ախշարումովին: Նա անհատի բազմաթիվ կրքերի ներդաշնակ զարգացումը հնարավոր էր համարում միայն այն ժամանակ, երբ կոչնչացվի մասնավոր սեփականությունը և աշխատանքի շահագործումը: «Մարդը,— գրել է Ախշարումովը,— ստեղծված է ձեռ-

քերով, ոտքերով և բանականությամբ, նա աշխատող է և աշխատանքով պետք է իր համար երջանկություն ստեղծի»[1]։ Ուստի, նրա բազմակողմանի զարգացման համար կարևոր նշանակություն ունի աշխատանքային պայմանների բարելավումը։ Ախշարումովը գտնում էր, որ աշխատանքը մեծ նշանակություն ունի մարդկանց ֆիզիկական և մտավոր զարգացման համար։ Միատիպ ու միապաղաղ զբաղմունքը հյուծում է մարդուն, զրկում բավականությունից։ «Մարդը ապրում է վայելքի համար,— գրում է Ախշարումովը,— որի առաջին պայմանը առողջությունն է, իսկ նա առողջություն չի ունենա առանց հոգին ու մարմինը բավականացնող աշխատանքի»[2]։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման և անհատի բազմակողմանի զարգացման համար Ախշարումովը մեծ նշանակություն էր տալիս աշխատանքի բաժանմանը։ Այսպես. «Մարդը աշխատող է, բնությունից նրան տրված են խելք և կիրք, ձեռքեր և բարակ մատներ (աշխատանքը շատ է և տարբեր ընդունակություններով աշխատողները ևս շատ են, դրա համար էլ անհրաժեշտ է աշխատանքի բաժանում)»[3]։ Նա նշում էր, որ մարդն իր գործունեությամբ պասիվ արարած չէ, այլ շատ ակտիվ, նրա աշխատանքի շնորհիվ է ստեղծվում նյութական ու հոգևոր բարիքները։

Ախշարումովը ուշադրություն է դարձրել աշխատանքի հասարակական կազմակերպմանը՝ ըստ մրցակցության, համաձայնության և բազմազանության սկզբունքի, որից հետո աշխատանքը դառնում է հաճույք և զգալիորեն բարձրանում է նրա արտադրողականությունը։ Իսկ դրան հասնելու համար անհրաժեշտ է, որ նախ՝ աշխատավորները կամավոր ու համատեղ ընտրեն իրենց արտադրական գործունեությանը համապատասխան աշխատանքի ճյուղ, երկրորդ, որ աշխատանքային պայմանները հարմար, մաքուր և վայելչագեղ լինեն, և որ մարդիկ կոլեկտիվ կերպով աշխատելու հնարավորություններ ունենան։

Ախշարումովը մարդկանց հասարակական կյանքը նմանեցնում էր բուսական և կենդանական աշխարհի երևույթներին, նա ընդգծում էր, որ մարդկային գիտակցությունն այն աստիճան է զարգացած, որ բնության մանրամասնություններում տեսնում և ճանաչում է իր գործունեությունը, իրեն։ «Հասարակության և բնության օրենքները միմյանց նման են և փոխադարձ կապի մեջ են, մարդն ապրում է,—գրում է Ախշարումովը,— իրագործելով բնության օրենքները»[4]։ Չնայած հասարակության և բնության ոչ բոլոր օրենքներն ու օրինաչափություններն է, որոնք մարդը լրիվ ճանաչում է, բայց, կամա թե ակամա, շփվելով նրանց հետ, կրելով նրանց ազդեցությունը ձգտում է ճանաչել դրանք։

Բնության օրինաչափությունները գիտակցող անհատը ոչ միայն աստիճանաբար տիրապետում է բնությանը, այդ օրինաչափությունները ծառայեցնում իր շահերին, այլև կարող է հասարակական կյանքը վերափոխել նոր եղանակով։ Մարդկանց և կենդանիների կյանքը ենթարկվում է միևնույն օրինաչափություններին, նշում էր Ախշարումովը, սակայն «մեր կյանքը կենդանիների կյանքից տարբերվում է նրանով, որ մենք զգում, գիտակցում, տառապում և ուրախանում ենք»[5]։

Ներդաշնակ հասարակարգին հասնելու համար Ախշարումովը ձգտում էր գտնել մարդկային զարգացման սպեցիֆիկ օրենքները, բացահայտել բնության և հասարակության օրենքների միջև եղած տարբերությունները։ Նա այդ տարբերությունները նրա մեջ էր տեսնում, որ բնությունն իր զարգացման մեջ ենթարկվում է նյութական աշխարհի օրենքներին, իսկ մարդկային հասարակության զարգացման համար որոշիչ նշանակություն ունեն բնությունից մարդուն տրված հատուկ պահանջներն ու բանականությունը։

Ախշարումովը հասարակական զարգացման մեջ մարդու և նրա պահանջմունքներին մեծ տեղ էր հատկացնում, որը բացատրվում է նրա վրա արևմտաեվրոպական մտածողների, հատկապես Շ. Ֆուրյեի, Ժ. Ժ. Ռուսսոյի և Լ. Ֆոյերբախի ազդեցությամբ։ Նա միանգամայն ճիշտ էր պատկերացնում բնության և հասարակության օրենքների միջև եղած ոչ միայն քանակական, այլև որակական տարբերությունները։ Բայց նա չհասկացավ, որ հասարակության օրենքները բնության օրենքներից տարբերվում են իրենց բարդությամբ, որպես մատերիայի շարժման ավելի բարձր ձևի օրենքներ, որ նրանք իրենց հերթին ուժեղ կերպով ազդում են բնության զարգացման վրա, որոշում են բնության վրա հասարակության ներգործության բնույթը։

Ախշարումովը գտնում էր, որ մարդը բնության մի մասնիկն է, տվյալ հասարակությունն էլ մարդկության մի մասնիկն է, իսկ մարդկությունն էլ բնության մի մասնիկն է։ Սակայն նա չկարողացավ տեսնել այն սկզբունքային տարբերությունը, որ գոյություն ունի մարդու և բնության միջև։ Ախշարումովը նշեց, որ մարդն ապրելով իրագործում է բնության օրենքները, նա են-

1 Д. Д. Ахшарумов. Заметки. Дело петрашевцев, т. III, М.-Л., 1951, стр. 90.

2 Նույն տեղը։

3 Նույն տեղը։

4 Архив АН СССР, Московское отделение, ф. 489, опись 1, ед. хр. 777, л. 24.

5 Նույն տեղը, Բ. 7։



թարկվում է բիոլոգիայի, ֆիզիոլոգիայի և այլ օրենքների, սակայն նա չըմբռնեց, որ ոչ թե դրանք, այլ հասարակության սոցիալական օրենքներն են որոշում մարդու հասարակական էությունը։

Ախշարումովը կրքերն ընդհանրապես համարում էր անփոփոխ, իսկ նրանց վնասակար դրսևորումները (ծուլություն, վախ, ժլատություն, նախանձ, վրեժ, հարբեցողություն և այլն) փոխվում են հասարակական կարգի փոփոխման հետ միասին։ Ժամանակակից հասարակարգը, նշում է Ախշարումովը, խափանում է կրքերը, նրանց հրահրում է հավիտենական պայքարի։ Նա գտնում էր, որ յուրաքանչյուր անհատ կարող է երջանիկ լինել միայն այն դեպքում, երբ նրա համար հնարավորություն կստեղծվի կրքերի լրիվ և ազատ զարգացման համար։ Սակայն այդպիսի հնարավորություն մինչև հիմա չի ստեղծվել,— շարունակում է Ախշարումովը,—հետևաբար մարդը չէր կարող երջանիկ լինել և «...վերջապես մեր հասարակարգում, որտեղ նրա կրքերի զարգացման համար միջոցներ չկան, որտեղ նրանք սահմանափակված են կամ անհամաչափ են զարգանում, որտեղ անհատը համբերությամբ է տանում թերությունները, այդպիսի հասակարգում մարդն իր բնավորությամբ դառնում է չար, զըզվելի, անտանելի ու դյուրագրգիռ, որովհետև ամբողջ կյանքում այդ զրկանքները զայրացրել են նրան»[1]։

Ըստ նրա, բնության մեջ ամեն ինչ գտնվում է փոխադարձ կապի մեջ, այդպես է նաև հասարակական կյանքում, որտեղ մարդկանց գործունեությունը պայմանավորված է մեկը մյուսով։ «Մեզնից յուրաքանչյուրի գործունեությունը,— գրում է Ախշարումովը,— իրական կյանքում ունի իր շարժառիթը և հաջորդականությունը, նպատակահարմարությունը, աննպատակ ոչինչ չկա...»[2]։ Ախշարումովը նշում էր, որ հաճույքը և տառապանքը մարդկային հոգու բնածին հատկություններն են, սակայն իրական կյանքում մարդկանց մոտ միայն տառապանքն է դրսևորվում։ Մարդն իր հոգու մեջ միշտ էլ ազատության ու երջանկության իդեալ է ունեցել, բայց միշտ էլ տանջանքն է իշխել։ Ուստի ազատության ու երջանկության իդեալը նրա մոտ արդեն անկենդանացել են, երջանկության գիտակցումը աստիճանաբար վերացել է։

Մարդը աշխատանքի մեջ է փնտրել իր երջանկությունը, սակայն այդ աշխատանքը, շարունակում է Ախշարումովը, նրան երջանկություն չի բերել, որովհետև նրա աշխատանքից օգտվել են բազմաթիվ պորտաբույծ մարդիկ, որոնք մարդկությանը միայն չարիք են պատճառել։ Մարդկային կյանքը սկզբից մինչև հիմա պայքար է եղել և այդ պայքարում աշխատավոր մարդիկ միշտ էլ պարտվել են, ուժասպառ եղել. նրանք աշխատել են անազատ վիճակում, դրա համար էլ աշխատանքը նրանց համար տանջալից է եղել։ Իսկ, երբ կստեղծվի նոր հասարակարգը մարդիկ կազատվեն այս ծանր վիճակից, երբ ընդմիշտ կվերանա շահագործումն ու անարդարությունը, մարդը կդառնա իր աշխատանքի տերը, հնարավորություն կստեղծվի նրա կրքերի ներդաշնակ զարգացման համար։ Այսպիսի վիճակ կստեղծվի փոքր հասարակություններում, երբ մարդիկ կըսկսեն համայնական կյանք վարել, միացյալ արտադրություն կազմակերպել, նրանց միջև կվերանա ահեղ մրցակցությունը և ընդմիշտ բարեկամական ու ներդաշնակ հարաբերություններ կստեղծվեն, մեկի օգուտը կդառնա բոլորի օգուտը։

Բնությունը մարդուն ծնել է երջանկության համար, իսկ երջանկությունը հնարավոր է միայն բոլոր կրքերի ազատ զարգացման ժամանակ, երբ նրանց միջև կստեղծվեն բարձր կարգի հարաբերություններ, երջանիկ կյանք, որի համար էլ բնությունը ծնել է մարդկանց։ Ախշարումովը խոսելով անհատների իրավահավասարության մասին նկատի ուներ սոցիալական հավասարությունը, նա այդ հավասարությունն ամենևին էլ առանձին անհատների ընդունակությունների, նրանց անհատականությունների համահարթեցում չէր պատկերացնում։

«Ես մտածում եմ,— գրում էր Ախշարումովը, — որ յուրաքանչյուր անհատ միակն է ստեղծված ոչ միայն երկրի վրա, այլև ամբողջ տիեզերքում, այլ կերպ բնությունն անտեղի առանձին անհատներ չէր ստեղծի, իսկ նրանք կան այն պատճառով, որ յուրաքանչյուրն օժտված է հատուկ ընդունակություններով, հատուկ բնավորությամբ, որոնք բացի իրենից, ուրիշի մոտ չկա»[3]։ Նա ընդգծում էր, որ մարդիկ ի ծնե հակված են դեպի բարին, սակայն հասարակական հարաբերություններն երբեմն այնպես են դասավորվում, որ մարդիկ հաճախ դառնում են չարագործներ, հետևաբար անհրաժեշտ է փոխել այդ հարաբերությունները, իսկ դրա համար չպետք է պասսիվորեն սպասել, թե ինչ կլինի, այլ ակտիվորեն ձեռնամուխ լինել լավագույն հասարակարգի գաղափարի իրականացմանը։ «Ժամանակն ինքնին

1 Д. Д. Ахшарумов. Автобиографическая записка. Дело петрашевцев, т. III, стр. 100.

2 Архив АН СССР, Москов. отд., ф. 489, опись 1, ед. хр. 777, л. 22.

3 Д. Д. Ахшарумов. Автобиографическая записка. Дело петрашевцев, т. III, стр. 99—100.



# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ

## ԵՐԱԽՏԱԳԻՏԱԿԱՆ ԽԱՆԴԱՂԱՏԱՆՔՈՎ

Ֆրիդրիխ Էնգելսի կյանքի և հեղափոխական գործունեության մասին մինչև օրս տարբեր լեզուներով բազմաթիվ աշխատություններ են գրվել:

Այս տարի «Հայաստան» հրատարակչությունը լույս ընծայեց պրոֆեսոր Զ. Գ. Բաշինջաղյանի *Ֆրիդրիխ Էնգելս. Կյանքը և գործը*[1] հանգամանալի և հաջողված ուսումնասիրությունը: Հանգուցյալ պրոֆեսորի այս վերջին գիրքը կոչված է ընթերցող լայն մասսաներին հաղորդակից դարձնելու հանճարեղ մտածողի ու հեղափոխականի դարակազմիկ գործունեությանը:

Գիրքը բաղկացած է ութ գլուխներից. վերջում տրված են Էնգելսի կյանքի և գործունեության առավել էական տարեթվերը:

Առաջին գլուխն արտացոլում է Մարքսի մեծ զինակցի ուսման և աշխատանքի վաղ տարիները: Այստեղ հեղինակը նկարագրում է Էնգելսի ծննդավայրի՝ Գերմանիայի ամենազարգացած շրջանի՝ Հռենոսյան մարզի Բարմեն քաղաքը, ուր ֆրանսիական հեղափոխության արձագանքները լսվեցին ավելի վաղ, քան նրա հայրենիքի մյուս մարզերում: Նրա բնական հարստությունները, աշխարհագրական դիրքը նպաստում էին արդյունաբերության զարգացմանը, որի արգասիքն էր բուրժուազիայի և պրոլետարիատի արագ ձևավորումն ու դասակարգային հակասությունների աճը: «Այս ամենը հեղաբեկիչ ազդեցություն էր գործում առաջավոր երիտասարդության մտքի վրա, երիտասարդություն, որն ձերբազերծվում էր ֆեոդալական գաղափարների և կրոնական ուսմունքների ազդեցությունից ու ձգտում էր երկրում հասնել «ազատության, հավասարության, եղբայրության»»:

Էնգելսի հայրը տեքստիլ խոշոր ֆաբրիկայի բաժնետեր էր և խիստ պահպանողական. այդ ոգին էր իշխում նաև ընտանիքում: Շրջապատը և արտաքին այլ հանգամանքներ ստիպեցին Էնգելսին զբաղվել իր համար ատելի առևտրով: Բայց նա գիտակցում էր, որ այն գործը, որին Մարքսը և ինքը նվիրել են իրենց կյանքը, նյութական մեծ միջոցներ է պահանջում: Եվ այդ էր պատճառը, որ Էնգելսը չթողեց առևտրական գրասենյակը:

Աշխատանքի հետ զուգընթաց, նա ուսումնասիրում է փիլիսոփայություն: Վաղ է արթնանում նրա ձգտումը գրական գործունեության և ինքնուրույն տպագիր խոսքի նկատմամբ: 1839 թ. տասնիննամյա Էնգելսը հանդես է գալիս *Նամակներ Վուպերթալից* հրապարակախոսական նամակաշարով, ուր նկարագրում է բանվորների, արհեստավոր-միայնակների վատթար դրությունը, մանկական աշխատանքի բարբարոս շահագործումը, գործարանատերերի վայրագ բարքերը: Այդ նամակներում նա մերկացնում է նաև գերմանական բուրժուազիայի և հոգևորականության խավարամտությունը, նրանց կեղծ բարեպաշտությունը, որոնք կործանարար ազդեցություն էին թողնում աճող սերնդի վրա:

Այնուհետև հեղինակն ընթերցողին ծանոթացնում է XIX դարի 30-ական թվականների բանվորական, Անգլիայի չարտիստական շարժումներին և Սիլեզիայի ջուլհակների ապստամբությանը, վկայակոչում Էնգելսի գնահատականը դրանց վերաբերյալ: Էնգելսը, ինչպես և Մարքսը,— գրում է հեղինակը,— սկզբից ևեթ գործուն պաշտպանում էին չարտիստների պայքարի հեղափոխական մեթոդները, դրանց մեջ տեսնելով բանվոր դասակարգի հաղթանակի անհրաժեշտ պայմանը:

Քայլ առ քայլ հետևելով հասարակական զարգացման ընթացքին ու միջազգային բանվորական շարժումներին, հանգամանորեն ուսումնասիրելով դրանք, ընդհանրացնելով Արևմտյան Եվրոպայի, Ամերիկայի և Ռուսաստանի հեղափոխական շարժման փորձը, նրանք գտնում էին, որ անհրաժեշտ է միավորել բանվորներին, ստեղծել միջազգային կազմակերպություն, որն ունակ լինի «բոլոր երկրների բանվորներին համախմբելու կապիտալիզմի դեմ՝ սոցիալիզմի համար մղվող պայքարի դրոշի ներքո»:

Գրքույկի երկրորդ գլխում (*Հանդիպում Կարլ Մարքսի հետ*) պրոֆ. Բաշինջաղյանը նկարագրում է Մարքսի և Էնգելսի առաջին հանդիպումը, անկաշառ, անհաշվենկատ մտերմությունը, որը շարունակվում է մինչև նրանց կյանքի վերջը: Էնգելսը վաղուց լսել էր Մարքսի բացառիկ տաղանդի, նրա բարձր սկզբունքայնության, առաջնորդի և գիտնականի հազվագյուտ հատկանիշների մասին, գրում է հեղինակը: Իսկ Մարքսը գիտեր, որ Էնգելսը հիանալի հրապարակախոս է, ունի փիլիսոփայական, պատմական և քաղաքատնտեսական խոր գիտելիքներ և լավ կազմակերպիչ է:

Մարքսի և Էնգելսի գաղափարական հայացքների ընդհանրությունը միավորեց, ամրապնդեց նրանց ուժերը, հավատ ներշնչեց հեղափոխության հաղթանակի նկատմամբ: «Երկու հսկաների համագործակցությունը դարձավ ո՛չ թե անձնական, այլ հասարակական բնույթի երևույթ, ձեռք բերեց ոչ միայն նյութական, այլև քաղաքական նշանակություն»:

Առաջին հանդիպումը Մարքսի և Էնգելսի համատեղ գործունեության սկիզբը դարձավ: Նրանք իրենց մտահղացումները և գործնական քայլերը մշտապես համաձայնեցնում էին: Ծրագրային մի շարք գործեր գրել են համատեղ:

Մե՜ծ է Էնգելսի դերը Մարքսի *Կապիտալի* թերավարտ երկրորդ և երրորդ հատորների մշակման, հրատարակման գործում: Այդ պատասխանատու աշխատանքը կարող էր կատարել միայն Էնգելսը՝ «մտավոր ու բարոյական ընդունակությունների, ջերմ սրտի, անշահախնդիր հոգու տեր մարդը»:

Հեղինակը հիացմունքով է գրում գիտնական մարտիկների նամակագրական ժառանգության մասին: Դրանք հասցեագրված են եվրոպական բոլոր երկրների բանվորական շարժման գործիչներին, բարեկամներին ու հարազատներին: Նամակներից երևում է, թե հեղափոխության այդ անխոնջ ղեկավարները որքա՜ն ջանք ու եռանդ են գործադրել՝ բանվոր դասակարգին առաջնորդելու կանխագծված ուղիով:

1844 թ. Մարքսն ու Էնգելսը ակտիվ աշխատակցում են Փարիզում լույս տեսնող „Vorwärts" («Առաջ») թերթին: Նրանց գաղափարների ազդեցությամբ թերթը կոմունիստական բնույթ է ստանում: Կարճ ժամանակամիջոցում Էնգելսը Փարիզում ծանոթացավ Ֆրանսիայում բանվորական շարժման վիճակին, հանդիպեց տեղի սոցիալիստներին: «Մարքսի հետ ունեցած հանդիպումները հոգեպես հարստացրին նրան, հաստատեցին նրա ընտրած ուղու ճշմարտացիությունը»: Գալով Գերմանիա, նա ակտիվ մասնակցում է Հռենոսյան մարզի դեմոկրատական ու սոցիալիստական շարժման կազմակերպմանը:

*Ֆրիդրիխ Էնգելսի գլխավոր աշխատությունները* գլխում պրոֆ. Բաշինջաղյանը վերլուծում է Էնգելսի նշանավոր երկերը, դրվատում այն մեծ աշխատասիրությունն ու ջանքերը, որ նա գործադրել է դրանց ստեղծման համար:

Ծանոթանալով Անգլիայի բանվոր դասակարգի կյանքին ու աշխատանքի պայմաններին, մանրակրկիտ ուսումնասիրելով պաշտոնական բոլոր փաստաթղթերը և մինչ այդ եղած գրականությունը, Էնգելսը գրեց *Բանվոր դասակարգի դրությունն Անգլիայում* հիմնարար աշխատությունը. այն լույս տեսավ 1845 թ., Լայպցիգում: Չնայած գիրքը գրելիս նա հետազոտել էր միայն կապիտալիստական ամենազարգացած երկրի՝ Անգլիայի վիճակը, սակայն նրա հետևությունները վերաբերվում էին կապիտալիստական բոլոր երկրներին: Գրքում նկարագրված են բանվորների տաժանելի կյանքը, կանանց ու երեխաների անլուր կեղեքումը, նրանց աղքատիկ ու կեղտոտ թաղամասերը, մեծ քաղաքների հետնախորշերը: Էնգելսի գիրքը վիթխարի նշանակություն ունեցող մի փաստաթուղթ է, որը սիստեմավորում, ընդհանրացնում է այն բոլոր փաստերը, տվյալները, թվերը, ամեն տեսակի տեղեկությունները, որ ցրված վիճակում բովանդակում էին նրա ուսումնասիրած աղբյուրները,— գրում է Զ. Բաշինջաղյանը:

Էնգելսը քաջ գիտեր, որ գործարանային սիստեմն իր բոլոր ահռելի կողմերով հետևանք է արդյունաբերական հեղաշրջման:

Մեծ Բրիտանիայի բանվոր դասակարգին է նվիրել Էնգելսն իր *Բանվոր դասակարգի դրությունը Անգլիայում* երկը, ուր նա առաջ է քաշել բանվոր դասակարգի հատուկ դերի, նրա համաշ-

[1] *Զ. Գ. Բաշինջաղյան.* Ֆրիդրիխ Էնգելս. Կյանքը և գործը, *«Հայաստան» հրատ., 1971, 328 էջ:*

խարհային-պատմական միսիայի վերաբերյալ թեզը:

Առաջինն էնգելսն էր,— գրել է Վ. Ի. Լենինը, — որ ասաց, թե պրոլետարիատը տառապող դասակարգ չէ միայն: Եվ իր տնտեսական խայտառակ վիճակը հենց առաջ է մղում նրան, հարկադրում մարտնչել իր վերջնական ազատագրության համար (տե՛ս Երկեր, հ. 2, էջ 10):

«Այդ գրքով,— եզրակացնում է հեղինակը,— սկիզբ դրվեց կապիտալիստական շահագործման վերացման ուղիների և միջոցների մասին ուսմունքին»:

Մարքսի և էնգելսի համատեղ ջանքերով ստեղծվեց *Գերմանական գաղափարախոսություն* գիրքը, որը «կարևոր մի էտապ էր կոմունիստական կուսակցության տեսական, փիլիսոփայական հիմքերի, դիալեկտիկական և պատմական մշակման ասպարեզում»:

Գրքի առաջին հատորում հեղինակները քննադատում են երիտհեգելականներին, բացահայտում մետաֆիզիկական և դիալեկտիկական հայացքների անհաշտելիությունը, իսկ երկրորդում՝ «ճշմարիտ սոցիալիստներին», այն բանի համար, որ նրանք չէին ընդունում հեղափոխական պայքարը, նրանց ուսմունքը ձեռնտու էր իշխողներին: «Ճշմարիտ սոցիալիստները» թշնամի էին կոմունիստական գաղափարախոսությանը:

Պրոֆ. Բաշինջաղյանն անդրադարձել է նաև *Գերմանական գաղափարախոսությունը* գրքի լույսընծայման դժվարություններին: Մարքսն ու էնգելսը չվհատվեցին: Անցնում էին տարիները, գիրքը չէր տպագրվում: Նրանք ստիպված համաձայնեցին հրատարակել առանձին գլուխներով: Նրանց կենդանության օրոք գիրքն ամբողջությամբ չտպագրվեց: Միայն 1932 թ. գերմաներեն, իսկ 1933 թ. ռուսերեն հրատարակվեց Մոսկվայում:

Բարձր գնահատելով *Գերմանական գաղափարախոսությունը* աշխատությունը, Բաշինջաղյանը գրում է, որ այն «չի կարելի համարել զուտ քաղաքատնտեսագիտական երկ, բայց նրանում բովանդակված են իսկական գիտական քաղաքատնտեսության ելակետային դրույթները, քաղաքատնտեսություն, որը հետագայում ստեղծվեց Մարքսի և էնգելսի աշխատություններով»:

էնգելսի կյանքի վերջին տարիներին լույս տեսավ *Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը* աշխատությունը: Մարքսն արդեն կենդանի չէր, բայց նա շատ հաճախ էր ասել, թե հարկավոր է «...մեր հաշիվները վերջացնել մեր առաջվա փիլիսոփայական խղճի հետ»: Այս աշխատությամբ ևս էնգելսը կատարեց իր մեծ համախոհի պատվիրանը: Հեղինակը հիացմունքով է գրում այդ երկի մտքերի խորության, շարադրանքի, ոճի ու լեզվի պարզության մասին: Գրքում էնգելսը քննադատում է Ֆոյերբախի սխալներն ու թերությունները քաղաքականության, փիլիսոփայության և իրավունքի բնագավառում:

Պրոֆ. Բաշինջաղյանը հանգամանորեն ընթերցողներին ծանոթացնում է գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության գործունեությանը, որն ստեղծվել էր օպորտունիզմի դեմ մղվող պայքարում: Օպորտունիստները ձգտում էին սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը վերածել ռեֆորմների կուսակցության: Այս իրադրության պայմաններում լույս տեսավ *Անտի-Դյուրինգ* դասական երկը: Այստեղ էնգելսն իր փայլուն գրչով բազմակողմանի քննադատում է Ե. Դյուրինգի իդեալիստական բնույթի խեղվածքները: Չըմբռնելով մատերիալիստական դիալեկտիկայի էությունը, անտեսելով բնության մեջ գոյություն ունեցող համընդհանուր կապը և երևույթների ու պրոցեսների փոխադարձ պայմանավորվածությունը, Դյուրինգը մեթոդոլոգիական սխալներ էր թույլ տվել: *Անտի-Դյուրինգը* մեծապես «նպաստեց մարքսիզմի տարածմանը, մի բան, որը ձախողակ Դյուրինգը, իհարկե, ոչ կամենում, ոչ էլ սպասում էր»:

Այնուհետև գրքի հեղինակը հիացմունքով է խոսում էնգելսի էնցիկլոպեդիկ, համակողմանի գիտելիքների մասին: Տակավին 50-ական թվականներին ուսումնասիրելով բնագիտությունը, նա գրում է *Բնության դիալեկտիկա* աշխատությունը: Չնայած էնգելսը երկար ժամանակ բնագիտական հարցերով չէր զբաղվել (Մարքսի մահից հետո նա աշխատում էր *Կապիտալի* երկրորդ և երրորդ հատորների վրա), «սակայն այն, ինչ նա հասցրեց անել, գիտական մեծ հետաքրքրություն է ներկայացնում»: *Բնության դիալեկտիկա* աշխատությունը մեծ սիրով են կարդում մարքսիզմն ուսումնասիրողները:

Գրախոսվող գրքում զգալի տեղ է հատկացված *Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը* նշանավոր աշխատությանը, որն առաջին անգամ լույս է տեսել 1884 թ., Ցյուրիխում:

Ուսումնասիրելով տոհմատիրական հասարակարգը, հիմնվելով Լ. Մորգանի *Անտիկ հասարակություն (1877 թ.)* աշխատության վրա, էնգելսը գրում է այս երկը, որը լույս է տեսնում Մարքսի մահվանից մեկ տարի հետո: Այստեղ նա ընդհանրացնում և նորովի հիմնավորում է մարդկային հասարակության զարգացման մորգանյան դասակարգումը: Վերլուծելով պատմական ստույգ փաստերը՝ էնգելսը բացահայտում է մասնավոր սեփականության ծագման, հասարակության հակամարտ դասակարգերի տրոհման և պետության առաջացման իրական պատկերը:



*Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը* երկում «առաջին անգամ տրված է նախնադարյան հասարակության, մեկ հասարակական տնտեսական ֆորմացիան մյուսով փոխարինելու, դասակարգերի, մասնավոր սեփականության և պետության առաջացման մասին գիտականորեն մշակված ուսմունքը»: Այս աշխատությունում բացահայտված է բուրժուական պետության հավերժականության վերաբերյալ հերյուրանքների ռեակցիոն էությունը, վերլուծված է պետության՝ ինչպես առաջացման, այնպես և ոչնչացման անխուսափելի ընթացքը:

էնգելսի հեղափոխական գործունեությանն է նվիրված *Միջազգային բանվորական շարժումը և Ֆրիդրիխ էնգելսը* գլուխը: Այստեղ հեղինակը նկարագրում է Եվրոպայի շիկացած հասարակական մթնոլորտը՝ բռնկված հեղափոխական փոթորկով:

40-ական թվականների վերջերին բանվոր դասակարգը դեռևս չէր սահմանազատվել բուրժուական դեմոկրատիայից: Այս իրադրության պայմաններում անհրաժեշտ էր ստեղծել ինքնուրույն բանվորական կուսակցություն: 1846 թ. Բրյուսելում, Մարքսի և էնգելսի նախաձեռնությամբ, հիմնվում է «Կոմունիստական թղթակցային կոմիտե»: Հետագայում այդպիսի կոմիտեներ ստեղծվեցին Փարիզում, Լոնդոնում, Գերմանիայում, որոնք մշտական կապեր էին պահպանում միմյանց հետ:

Գտնվելով ուտոպիական սոցիալիզմի ազդեցության տակ, բանվորները գաղափարապես և քաղաքականապես հասունացած չէին, որը դժվարացնում էր նրանց առաջադիմական շարժումը, կանխում հեղափոխական գործողությունները: Անհրաժեշտ էր հաղթահարել ազգային սահմանափակությունը. այդ էին պահանջում բանվորական շարժման շահերը: Եվ ահա, «Կոմունիստական թղթակցային կոմիտեները» մեծապես նպաստեցին հեղափոխական բանվորական շարժումներին:

Այնուհետև Ջ. Բաշինջաղյանը դրվատում է էնգելսի հեղափոխական ղեկավար գործունեությունը: Այս առումով ուշագրավ են առաջին և երկրորդ ինտերնացիոնալներին նվիրված հուզիչ էջերը:

Հրապարակի վրա եղած ուսումնասիրություններից հայտնի է այն վիթխարի դերը, որ խաղացին Մարքսն ու էնգելսը առաջին (1864—1872 թթ.) և երկրորդ (1889—1914 թթ.) ինտերնացիոնալների կազմակերպման ու ղեկավարման բնագավառում: Հեղափոխության անզուգական առաջնորդներն իրենց ծավալուն գործունեությամբ ցույց տվեցին, թե ինչպիսին պետք է լինեն միջազգային սոցիալիստական շարժման հետագա զարգացման հեղափոխական տակտիկան ու ստրատեգիան:

Անգնահատելի են Ֆ. էնգելսի ջանքերը միջազգային բանվորական շարժման մեջ այն ժամանակ երևան եկած օպորտունիզմի տեսական ու քաղաքական մերկացման գործում:

Գրքի էջերից հառնում է էնգելսի՝ որպես հեղափոխական շարժման մեծ ղեկավարի որքան հմայիչ, նույնքան հեղինակավոր կերպարը: Ինչպիսի՜ հուզիչ տողեր է նվիրել հեղինակն այս մեծ մարդու անսահման համեստությանը, երբանկատ բարեխղճությանն ու ազնիվ մտավախությանը, որ չլինի թե հանկարծ իրեն մեծարեն Մարքսի փոխարեն: Իսկ իր աշխատության մասին նա գրել է. «Իմ աշխատությունը կարող է միայն թույլ չափով փոխարինել այն գործին, որ այլևս վիճակված չէր կատարելու իմ հանգուցյալ ընկերոջը»:

Պատմության, տնտեսության, փիլիսոփայության, սոցիալական հարաբերությունների ուսումնասիրման հետ միաժամանակ, Մարքսն ու էնգելսը մշակել են նաև գրականության և արվեստի բազում բարդ պրոբլեմներ:

Հեղինակը *Ֆ. էնգելսը գրականության և արվեստի մասին* գլխում ընթերցողին ծանոթացնում է մեծ մտածողի ասույթներին համաշխարհային գրականության ռահվիրաների՝ Դանթեի, Շեքսպիրի, Օնորե դը Բալզակի մասին: Բարձր գնահատելով Բալզակի ստեղծագործությունները, էնգելսն առավել արժեքավոր գծերից մեկը համարում է նրա ռեալիզմը: Նա գրում է, որ Բալզակն ստիպված դիմակայել է սեփական դասակարգային համակրություններին, քաղաքական նախապաշարմունքներին, տեսել իր սիրած արիստոկրատների անկման անխուսափելիությունը և համարել նրանց այնպիսի մարդիկ, որոնք արժանի չեն լավ ճակատագրի:

Հետաքրքրությամբ է կարդացվում *Ֆ. էնգելսը անձնական կյանքում* գլուխը: Նվիրվելով բանվոր դասակարգի ազատագրության վեհ գործին, էնգելսը սկզբունքային էր թե՛ իր քաղաքական, հասարակական, գիտական գործունեության ասպարեզում, թե՛ անձնական հարաբերություններում:

Այս գլխում հիշատակված են Մարքսի և էնգելսի զինակիցների՝ ֆրանսիական բանվորական կուսակցության ղեկավար Պոլ Լաֆարգի, գերմանական և միջազգային շարժման ականավոր գործիչ Վիլհելմ Լիբկնեխտի, Ավգուստ Բեբելի, էլեոնորա Մարքս-էվելինգի և այլոց հիշողությունները: Նրանք նշում են մեծ մտածողի հեղինակության, անձնազոհության, ընկերասիրության, գիտելիքների խորիմացության և խաղացած վիթխարի դերի մասին. նա իր ողջ կյան-

քը նվիրաբերեց բանվոր դասակարգի ազատագրության գործին:

Գրքում բերված է նաև Ֆ. էնգելսի նամակը Հ. Աթարբեկյանցին՝ *Կոմունիստական կուսակցության մանիֆեստի, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը* գրքերի թարգմանության կապակցությամբ:

Աշխատության նախավերջին գլուխը նվիրված է էնգելսի կյանքի վերջին տարիներին *(Ֆ. էնգելսն առանց Մարքսի)*: Չկա Մարքսը: էնգելսը միայնակ է ղեկավարում միջազգային սոցիալիստական շարժումը: Նա բանվորական շարժման ձևական ղեկավարը չէր,— գրում է Զ. Բաչինջաղյանը,— այլ կանգնած էր պահակակետում, որպես անփոփոխ ժամապահ...

Այնուհետև մանրամասն շարադրված է այն անզուգ աշխատանքը, որ էնգելսը կատարեց իր մտերիմ բարեկամի՝ Կ. Մարքսի անընթեռնելի ձեռագիր ժառանգության և *Կապիտալի* երկու հատորները տպագրության պատրաստելու գործում: Այս առումով, ինչպես գրում է Զ. Գ. Բաչինջաղյանը, Մարքսի «բախտը բերեց» և նրա ձեռագրերն անցան Մարքսին համահանճար մարդու ձեռքը: Իսկ էնգելսինը՝ ռևիզիոնիստ դարձած էդ. Բեռնշտայնի ձեռքը. մարդ, որը 30 տարի փակի տակ պահեց էնգելսի ձեռագրերը:

Գրքի վերջին գլխում *(Ֆ. էնգելսը և արդիականությունը)* ցույց են տրված Մարքսի և էնգելսի ուսմունքի դերն ու նշանակությունը մեր երկրում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների սաեղծման ասպարեզում:

Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ղեկավարող ուժը,— գրում է հեղինակը,— Մարքսի, էնգելսի, Լենինի հեղափոխական թեորիան է, որի դրոշի ներքո աշխատում և պայքարում է բանվոր դասակարգը կոմունիստական և բանվորական կուսակցությունների գլխավորությամբ:

Պրոֆ. Զ. Բաչինջաղյանի գիրքը՝ նվիրված հանճարեղ էնգելսի գիտական ու հեղափոխական սխրանքներին, գրված է կոմունիստի երախտագիտական խանդաղատանքով, շարադրված նյութի խորիմացությամբ:

ՋԵՓՅՈՒՌ ԱՍԱՏՐՅԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ե. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции,— Ереван-33, Барекамутян 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

*ՎՖ 01688 Պատվեր 1721 Թղթի չափսը 70×108[1]/[16]: Տիրաժ 12.200 Գինը 25 կ*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 29/X 1971 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյան փող. № 28:*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին: Ազգերի ինքնորոշման իրավունքի մասին: Վելիկոռուսների ազգային հպարտության մասին: *Մ., «Политиздат», 1971, 120 էջ:*

ԼԵՆԻՆ Վ .Ի.— «Ձախ» երեխայության և մանր բուրժուականության մասին, *«Հայաստան» հրատ., 1971, 52 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին: *«Հայաստան» հրատ., 1971, 24 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Դասակարգերն ու կուսակցություններն իրենց վերաբերմունքով դեպի կրոնն ու եկեղեցին: *Եր., «Հայաստան» հրատ., 1971, 20 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ժամանակակից գաղափարական տարընթացության մի քանի աղբյուրների մասին: *Եր., «Հայաստան» հրատ., 1971, 24 էջ:*

Մերձբալթիկցիները Վ. Ի. Լենինի մասին: *Հիշողությունների և հոդվածների ժողովածու: Ռիգա, «Լիսեմա» հրատ., 1970, 374 էջ:*

Վ. Ի. Լենինի գեղագիտական ժառանգությունը և արվեստի խնդիրները *(ժողովածու): Մ., «Искусство» հրատ., 1971, 382 էջ:*

ՋԱՆԴԻԼԴԻՆ Ն.— Ազգային հոգեբանության բնույթը: *Ալմա-Աթա, «Ղազախստան» հրատ., 1971, 304 էջ:*

ՎԱԿՍԲԵՐԳ Ա. Ի.— Հարյուրամյակի մենամարտը: *Փաստագրական պատմվածք Գեորգի Դիմիտրովի մասին:*

ՎՈԼԿՈՎ Ա. Ա.— Ա. Մ. Գորկին և սովետական դարաշրջանի գրական շարժումը: *Մ., «Советский писатель» հրատ., 1971, 576 էջ:*

ՍԱԼԱԽՅԱՆ Հ. Ն.— Դասականներ և ժամանակակիցներ: *«Հայաստան» հրատ., 1971, 596 էջ:*

ԿԱԳԱՆ Մ. Ս.— Դասախոսություններ մարքս-լենինյան գեղագիտության մասին *(դասագիրք ԲՈՒՀ-երի ուսանողների համար), Լենինգրադի համալս. հրատ., 1971, 766 էջ:*

ԱԼԵՔՍԵԵՎ Ս. Ս.— Իրավունքի սոցիալական արժեքը սովետական հասարակության մեջ: *Մ., «Юридическая литература» հրատ., 1971, 224 էջ:*

Աշխատանքի գիտական կազմակերպման հիմունքները: *Դասագիրք տնտեսագիտական ԲՈՒՀ-երի և ֆակուլտետների համար: Մ., «Экономика» հրատ., 1971, 270 էջ:*

Հերոսական պաշտպանություն: *Հիշողությունների ժողովածու Բրեստի ամրոցի պաշտպանության մասին՝ 1941 թ. հունիս—հուլիս: Մինսկ, «Белорус» հրատ., 1971, 416 էջ:*

ՍԱՆԱԿՈԵՎ Շ. Պ. *և* ՑԻԲՈՒԼԵՎՍԿԻ Բ. Լ.— Թեհրան: Յալթա: Պոտսդամ: *Փաստաթղթերի ժողովածու: Մ., «Международные отн.» հրատ., 1971, 416 էջ:*

*Զետեղված են Թեհրանի կոնֆերանսի (28 նոյեմբերի—1 դեկտեմբերի 1943 թ.), Ղրիմի կոնֆերանսի (4—11 փետրվարի 1945 թ.) և Պոտսդամի կոնֆերանսի (17 հուլիսի—2 օգոստոսի 1945 թ.) արձանագրություններն ու այլ նյութեր:*

Ցեղեր և ժողովուրդներ: *Տարեգիրք: Արդի էթնիկական ու ցեղային պրոբլեմները 1, 1971, Մ., «Наука», հրատ., 1971, 364 էջ:*

ՌՅԱԲԿԻՆԱ Տ. Ա.— Սուրբ պարտականություն աշխարհում: *Մ.,* «Политиздат», *1971, 152 էջ:*

ԱՃԱՌՅԱՆ Հ. Հ.— Լիակատար քերականություն հայոց լեզվի: *Համեմատությամբ 62 լեզուների: Հատոր 6, Եր., ԳԱ հրատ., 1971, 846 էջ:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՈՒՍՈՒՑՉԻ ՍԵՂԱՆ

*Չեխոսլովակիայի «AOZ» ձեռնարկությունը թողարկում է դասարանային կոմպլեկտ-սարքավորում՝ ժամանակակից էլեկտրատեխնիկական միջոցներով երեխաներին ուսուցանելու համար։ Այդ կոմպլեկտներից հատկապես ուշագրավ է ուսուցչի սեղանը, որի աջ մասում տեղակայված է օպտիկական սարք։ Դա ուսուցչին հնարավորություն է ընձեռում առանց կավճի ու գրատախտակի վարելու դասը՝ միշտ դեմքով լինելով դեպի դասարանը։ Գրատախտակին գրելիս ուսուցիչը գրում է սեղանի աջ կողմում տեղադրված ապակուն՝ հատուկ մատիտով։*

*Գրվածն արտացոլվում է ուսուցչի թիկունքի կողմում գտնվող էկրանի վրա։ Աշակերտը մոտենում է ոչ թե գրատախտակին, այլ ուսուցչի սեղանին։ Դրանով խսկ դասարանը միշտ գտնվում է ուսուցչի տեսադաշտում, աշակերտի գիտելիքներն ստուգվում են հեշտ և արագ։*

*Ուսուցչի սեղանը կարող է ունենալ նաև կապի սիստեմ, որով նա կապ կըհաստատի աշակերտական ամեն մի նըստարանի հետ։ Կապի սիստեմը ներառնում է նաև պատասխանների ազդարարային սարքը։ Հաշվիչ սիստեմի միջոցով աշակերտի գիտելիքներն ավելի օբյեկտիվ են գնահատվում։ Այդ սիստեմն ունիվերսալ է և կարելի է օգտագործել բոլոր տիպի դպրոցներում և ցանկացած դասարանում։*

## ԿԱՄԱՐԱՎՈՐ ՏՐԱԿՏՈՐ

*Խաղողի այգիների մշակության համար Քիշինյովի տրակտորի գործարանի կոնստրուկտորներն ստեղծել են նոր տրակտոր, որն իր արտադրական հնարավորություններով զգալիորեն գերազանցում է ներկայումս գործող ագրեգատներին։ Տրակտորն ունի 55 ձիաուժ հզորության երկու շարժիչ, որոնք առանձին-առանձին տեղակայված են երկու թրթուրավոր քարշակի վրա, որոնք իրար կցված են ամուր կամարով։ Դրանցից մեկի վրա, որտեղ նստում է տրակտորիստը, կենտրոնացված են կառավարման բոլոր սարքերը։*

*Տրակտորի թրթուրները նեղ են և հնարավորություն են տալիս անվնաս անցնելու ցանկացած լայնության միջշարային տարածությունը, ավելացնելու ագրեգատի արագությունը և արտադրողականությունը։ Նոր տրակտորն ունի մանևրելու մեծ հնարավորություն. լեռնային դժվար պայմաններում շրջվելու համար անհրաժեշտ է ընդամենը 5—6 մետր տարածություն։ Հողի վրա թրթուրների փոքըր ճնշումը հնարավոր է դարձնում մշակումը նույնիսկ այն հողակտորների, որոնք մինչև օրս բոլորովին մեքենահարմար չեն եղել։*

## ԱՇԽԱՐՀԸ «ԾԵՐԱՆՈՒՄ Է»

*Լեհաստանի անվանի դեմոգրաֆ, պրոֆեսոր Էդվարդ Ռոսետը, ինչպես և այլ երկրների գիտնականներ «ծեր» են համարում տվյալ երկրի ազգաբնակչությունը, եթե նրա ավելի քան 12 տոկոսը 60 և ավելի տարիք ունի։*

*Դեռևս 1870 թվականին «ծերության» սահմանն առաջինն անցավ Ֆրանսիան։ Համեմատաբար վերջերս սկսված ազգաբնակչության ծերացման պրոցեսն այժմ արագացել է։ Ֆրանսիային դրա համար հարկ եղավ 100, Լեհաստանին՝ 50 տարի։ Ներկայումս Լեհաստանում ապրում է 60-ից ավելի տարիք ունեցող ավելի քան չորս մլն մարդ։*